ՇԱՐ ՀԱՅ ՊԱՏՄԱԳՐԱՑ



# ՂԵՒՈՆԴ

# ՊԱՏՄԱԳԻՐ




ՓԱՐԻԶ։

—

1857 — ՌՅԷ.



ABRAHAM ABRO

ԱԲՐԱՀԱՄ ԱՄԻՐԱՅ ԱԲՐՕՅԵԱՆ

*Paris. Imp. Brehier fr. rue S. André des arts, 37.*

Lewond, Erets

Arshawank arabats i Hays

# ԱՐՇԱՒԱՆՔ ԱՐԱԲԱՑ Ի ՀԱՅՍ

*ԱՐԱՐԵԱԼ*

**ՂԵՒՈՆԴ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՀԱՅՈՑ**

*ի լոյս ընծայեաց հանդերձ ծանօթութեամբք*

**Կարապետ Վարդապետ Շահնազարեան**, միաբան սրբոյ Էջմիածնի, եւ անդամ արեւելեան ընկերութեան գիտնականաց Փարիզու ։


ԳՐԱԴԱՐԱՆ
ԳՐԻԳՈՐ
649

Ի ԳՈՐԾԱՏԱՆ Կ. Վ. ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆՑ ։




# ԱԶԴ

*Զխոստումն՝ զոր արարի յելս 1856 ամին, գամ ի կատարել ձեռն մխելով արդ ի տպագրութիւն « շարի Հայ պատմագրաց » ։ Գոլով որդի Հայաստանի եւ վարդապետ առաքելական եկեղեցւոյ այնորիկ, փառս դրէի անձինս եթէ հարէի զկենդանագործութիւն կիսամեռ յիշատակարանաց իմոց նախնեաց, զորս տգիտութիւն եւ անփութութիւն թողին ցարդ ի խաւարի անտես ի ժողովրդենէ ։*

*Չէր նոր ինչ յիս խորհուրդս եւ ոչ ծնունդ եռանդեան. քանզի մինչդեռ յամի 1834 ի վարդապետարանին սրբոյ Էջմիածնի ի մարզս դեգերէի հռետորական եւ աստուածաբանական ուսմանց՝ ձեռնարկեալ էի յօրինակութիւն ընտիր պատմագրաց մերոց ի հռչակաւոր դպրանոցի տեղւոյն. յորս յաւելի ապա եւ զտեղագրութիւն պատմութեամբ եւ աշխարհագրութեամբ հանդերձ Սիւնեաց աշխարհին ի ժամանակին յորում կայի տեսուչ յիշեալ վիճակին ։ Ան*

զայս այժմեայն արդիւնս տաժանմեայ երկանց իմոց սրբապիղծ ձեռն մի անանուն յափշտակեաց ի միում վայրկենի, եւ եթող զիս ի խոր տխրութեան :

Զկնի ամաց ինչ միւսանգամ ձեռն արկի ի գործն իմ առաջին. եւ յայս նուագ զհռչակաւոր մատենադա-րանն Արբազան Կարապետ Արք եպիսկոպոսի Վրաս-տանի ունելով ինձ յաղբիւր՝ օրինակեցի եւ համե-մատեալ ուղղագրեցի զինչ ինչ հազուագիւտ պատ-միչս յորս յաւելի եւ ծանօթութիւնս ի բացատրու-թիւն մթին բանիցն : Ի Կոստանդնուպօլիս ուր պատ-ուելի Հասարակութիւնն Հայոց մեծաւ մարդասի-րութեամբ մխիթարեցին զմեր պանդխտութիւն զամս երիս, շարունակ ի նոյն գործ դեգերեցայ, եւ գան-ձեցի զորս պակասէին ինձ յայն վայր ազգային պատ-մագիրք, զորոց զպակասորդն լցոյց կայսերական դրատունն Փարիզի, յորում գտի զընտիր գրչեալ պատմիչս :

Հանդերձեալ արդ օգնութեամբն Աստուծոյ եւ ձեռնտուութեամբ ճշմարիտ մեկենասաց ազգային գրականութեան ի լոյս ընծայել զշար Հայ պատմա-գրաց. աւելորդ համարիմ կարգել աստէն ճառս ի զօրութիւն գործոյս, որոյ օգտակարութիւնն յայտնի է ինքնին : Չիք կրթութիւն առանց կանոնաց, եւ ոչ դաստիարակութիւն առանց սկզբանց, նպատակի եւ օրինակի : Յամենայն բերանս ազգայնոց մերոց յածին

ի մեր առաջս դաստիարակութիւն եւ կրթութիւն մտաւորական բարոյս. այլ (եթէ չիցէ յանդգնութիւն ասել զայս) ո՛չ ոք գիտաց ցարդ ի մերոցն զպայմանս ազգային դաստիարակութեան ։ Իսկ զի եթէ նպատակ ազգային դաստիարակութեան է եւ լինելոց է անշուշտ պատրաստել եւ կազմել զհօրանոյն զորդիս ի մատաղ սերնդոց յապագայ յարատեւութեան ազգի մերոյ. սակայն արդեան կարգաւորութիւն դպրոցաց մերոց ամենեւին զհակառակն յայտ առնէ ։ Ստո՛յգ է թէ յարդեան դպրոցաց մերոց ելանեն լեզուագէտ եւ համաշխարհական քաղաքացիք այլ ոչ անդամք Հայ հասարակութեան եւ քաղաքացիք Հայաստանի. Զի՞նչ օգուտ Հայոցն ի բերան առնուլ եւ սերտել զվիթխարի համարս Հնախօսութեան Հռոմայեցւոց Ռոմէնի. եւ ոչ գիտել թէ ո՛յց որդիք իցեն Հայկ, Արամայիս, Տիգրան, Տրդատ, Աշոտ, Լեւոն, սուրբն Սահակ, սուրբն Մեսրոպ եւ այլ նախնիք իւր, զի՞նչ արարք նոցա եւ զի՞նչ յիշատակք ։ Ամին իրի պա՛րտ է զի ի դպրոցս ազգիս ուսանիցին մանկունք մեր նախ՝ զկրօնագիտութիւն եկեղեցւոյ իւրեանց եւ զպատմութիւն, եւ ապա զայլ եւ այլ ուսմունս եւ զօտար լեզուս ։ Իսկզի ընդ անմահ անուանս ոմանց ի նախնեաց մերոց կցորդեալ է այնպիսի իմն բարոյական զօրութիւն, որ ընդ բերան առնուլն թնդացուցանէ զսիրտ իւրաքանչիւր Հայորդւոյ, ընդ

զայն սրբազան հրով հայրենասիրութեան. զարթու-
ցանէ զթմբրեալ զգացմունս ազգայնութեան, եւ
պատրաստէ նախատակս ազգային վերածնութեան ։

Արդ այժմ հերի՞ք էր մեզ եթէ նմանիցուք նախ-
նեաց մերոց, եւ եթէ յանձին բերցուք զքաղաքական
եւ զընկերական առաքինութիւնս նոցա ։ Այո՛ եթէ
առաջնորդք ազգիս հոգային կանխաւ տպաւորել ի
սիրտս եւ ի միտս մերոց մանկանց ի ձեռն պատմական
ուսմանց զյիշատակ առաքինութեանց նոցա. համար-
ձակիմ ասել թէ՝ ընկերական պայման մեր ոչ լինէր
արդ ամենայն ուրեք պանդխտութիւն եւ անարգ ստր-
կութիւն հանդերձ արհաւրօք դառն աղքատութեան
եւ թանձր տգիտութեան ։

Ի վերջոյ թոյլ լիցի հրապարակաւ յայտ առնել
առաջին զշնորհակալիս իմ զբարերարաց տպագրու-
թեանս, որք ազգասիրաբար ունկն մատուցեալ ձայնի
իմում՝ հաճեցան ձեռն կարկառել մեծի գործոյս
այսմիկ ։ Թէ եւ այլ ճոխ գլխաւորք ազգիս, մանաւանդ
որք յարդ ազգասէր պանծացեալքն էին՝ սիրեցին զու-
նայնութիւն առաւել քան զանմահ փառս ազգի իւր-
եանց. սակայն Նորին Գերազանցութիւն Տէր Կոմս
Խաչատուր Լազարեանց Իշխանապետն, Մանուկ-
Բէյը, վսեմափայլ Աբրահամ Ապրօյեան, Ցոլակի
Ջելեպի Իւսուփեան, եւ քեռայր իւր Մահտեսի Գրի-
գոր Կոստանդեան առհասարակ առաքինեացան, եւ

98377

եղեն զօրաւոր սատարք գործոյս ։ Նոցա սատարչութեամբ եղեւ զի բացի աստ հայկական տպարան եւ ձեռն արկի յայս գործ, որոյ նմանն ոչ է եղեալ ցարդ յազգի մերում։ Ակն ունիմ թէ եւ այլք ի բաց եղեալ յանձանց զատելութիւն եւ զազգակործան վէճս՝ մտցեն ի նոյն շաւիղ եւ զօրավիգն լինիցին առ կատարումն յառաջադիմութեանս ։

Առ ի կենդանի պահել զյիշատակ Աբրահամ Ամիրայի Ապրոյեան, որ հանգեաւ ի Քրիստոս նախքան զերեւումն Ղեւոնդեայ՝ եդի ի ճակատ նորին զկենդանագիր նորա․որում եւ նուիրեցի զմատեանս ։



ԳՐԱԴԱՐԱՆ
ԳՐԻԳՈՐ ԱՊԱՃԵԱՆԻ
Կարգաթիւ ______

# ՂԵՒՈՆԴ

Ազգային մատենագիրք կեցեալ զկնի ութերորդ դարուն Քրիստոսի՝ ճանաչեն եւ յիշեն զՂեւոնդ, որում եւ՝ ընծայեն զպատմութիւն ծագմանն Մահմետի, զարշաւանաց Արաբացւոց ի Հայս եւ զանգթութեանցն զորս գործեցին ի նմա յետ տիրանալոյն այնմիկ մերձ առ վախճան եօթներորդ դարուն ։

Ստեփաննոս Ասողիկ Տարօնեցի՝ հեղինակ հռչակաւոր տիեզերական պատմութեան ինչ, յիշէ զՂեւոնդ ասելով «Եւ պատմութիւն Ղեւոնդ երիցու, որ ինչ վասն Տաճկաց ելիցն եւ անցից Հայոց ի նոցուն բռնութենէ» յորմէ եւ քաղէ զբազում ինչ առ ի հիւսել զիւր պատմագրութիւն ։ Ասողիկ դնէ զՂեւոնդ ընդ մէջ Սեբէոս եպիսկոպոսի եւ Շապհոյ Բագրատունւոյ ։

Մխիթար Այրիվանեցի՝ ժամանակագիր, որ եկաց եւ գրեաց յերկոտասաներորդ դարուն՝ նոյնպէս յիշէ զՂեւոնդ ընդ պատմիչս Հայոց. զոր եւ կարգէ ընդ

մէջ Զաքարիա Կաղանկատուացւոյ՝ պատմագրի Աղ-վանից, եւ Ուխտանէս եպիսկոպոսի որ գրեաց զհերձ-ուածոյն Վրաց ։

Ինքնին Ղեւոնդն մեր կոչէր յիւրում ճակատու-խորագիր այսպիսի «պատմութիւն Ղեւոնդեայ՝ մեծի վարդապետի Հայոց, որ յաղագս երեւելոյ Մահմետի, եւ զկնի նորին թէ ո՛րպէս եւ կամ որո՛վ օրինակաւ տիրեցին Տիեզերաց. եւս առաւել ազգիս Հայոց» Խորագիրս այս թուի յայլմէ հիւսեալ գոլով ամենեւին անհամաձայն ճառեցելոյն ի նմանէ. իբր զի փոխանակ գտանելոյ ի նմա զպատմութիւն ծննդեան, վարուց եւ վարդապետութեան Մահմետի, ի բանալն զայն ո՛չ այլ ինչ տեսանեմք ի սկզբան անդ բայց եթէ զմահ նորա եւ զերից յաջորդաց իւրոց ։

Չեւ էր Մուհամմետի փչեալ զոգին զի տեղապահք նորա կամ Խալիֆայք (ի մերոցն Ամիրապետ կոչե-ցեալ) հրատարակեցին զպատերազմն սուրբ ընդ-դէմ որոց ոչ էին Իսլամ. եւ Հայաստան դեռ յամէ 632 սկսաւ զփորձ առնուլ արշաւանաց սեւամորթ որդւոցն անապատին Արաբիոյ ։ Ի ժամանակէ աստի մինչ ցամն 662 փոփոխ բախտիւ զդէմ կալաւ Հա-յաստան հինին նորայ, զոր իբրեւ ել Մուաւիա յաթոռ Ամիրապետութեան՝ արկ վերջապէս ընդ լծով պետութեան Արաբացւոց ի ձեռն շահաւոր ինչ դաշին կռեցելոյ ընդ ազգի մերում ։

Ղեւոնդ, որ սղխւք անցանէ բանիւք ցայս վայր զքաղաքական իրօք մերոյ աշխարհի, սկսանի յայսմ-հետէ ճոխագոյնս պատմել զԹշուառուԹեանց նորին զորոյ զԹելն երկայնեալ հասուցանէ մինչեւ ցամն 788. յորում միջոցի Ստեփաննոս առաջին ել յաԹոռ կաԹողիկոսուԹեան: Աստանօր կնքէ Ղեւոնդ զպատ-մուԹիւն իւր. եւ վախճան առնուն ցաւագին նկարա-գիրք աղետից նախնեաց մերոց տեւեալ ամս 156 :

Ղեւոնդ իբրեւ վարդապետ Հայաստանեայց եկե-ղեցւոյ՝ երեւի հմուտ գոլ Աստուածաշունչ գրոց, յորոց ածէ ի մէջ բազում անգամ վկայուԹիւնս յոլովս. եւ ոճ իւր բնական չէ ինչ յոյժ տարբեր ի սուրբ գրոց: Յանգս ամենայն ի յաջողս եւ ի ձախողս իւրոյ աշ-խարհի եւ զիւրեւ կատարեալս ոչ այլ ինչ տեսանէ նա բայց եԹէ զմատն ՆախախնամուԹեան տնօրէն իրաց մահկացուաց: Սմին իրի զյաղԹուԹիւնս Հայոց ընծայէ աստուածային պաշտպանուԹեան, և զկոտորած նոցա համարի պատիժ երկնից Թէ եւ երկոքին եւս դէպք, բազում անգամ ի միում աւուր եւ երբեմն ի մի եւ ի նոյն ճակատու գոլով պատահեալ: Գոլով անհմուտ զինուորական արուեստի չափէ ամենեւին եւ ոչ զբան մի ոչ զհանճարոյ, ոչ զտաղանդոյ, ոչ զճարտա-րուԹենէ զօրավարաց Հայոց կամ Արաբացւոց, եւս եւ ոչ զկրԹուԹենէ կամ զանկրԹուԹենէ զօրաց մեր կամ նոցա :

Ապաքէն կացեալ Ղեւոնդեայ յայս կէտ դիտողութեան․ բազում անգամ այնէ զի սխալի ի կարծիս իւր քան թէ ուղղութեամբ տրամաբանէ ։ Ոչ Ղեւոնդ եւ ոչ այլ ոք ի մերոցն յանձն առ գրել ցարդ իմաստասիրաբար զպատմութիւն ազգիս, այս ինքն թէ ոչ ոք յանձին կալաւ քննել, քրքրել, խուզարկել եւ յերեւան ածել զբարոյական, զքաղաքական առաւելութիւնս կամ թերութիւնս, զկատարելութիւնս կամ զանկատարութիւնս նախնեաց մերոց, ոչ զհանգամանս ընկերական յարաբերութեանցն դասուոի առ դասու կամ հասարակութեան առ հասարակութիւն, ոչ զախտս քաղաքական տեսչութեանն, որ հաշեալ մաշեցին եւ բազում անգամ մահացուցին զինքնակալութիւն ազգին, ոչ զանբաւականութիւնս աշխարհային օրինաց մերոց որք անկարող եղեն ձուլել զայլ եւ այլ մասունս ազգին ի մի զանգուած, եւ կազմել անտի զմի քաղաքական մարմին՝ կարող առ ի տոկալ ժամանակս երկայնս, եւ զդէմ ունիլ արտաքին յարձակմանց ։ Ստոյգ է թէ՝ ժողովուրդ մեր միշտ անկեղծ սիրով սիրեաց զհայրենիս իւր եւ զազատութիւն․ սակայն անմիտ նախարարք մեր զշահ անձանցն բազում անգամ քան զհասարակութեանն վերադաս համարեալ, եւ առաւել եւս՝ միմեանց զինեալ ներհակ նախանձու եւ քսութեամբ, զամենայն իրս ազգին ի սկզբանէ եւ այսր վեր ի վայր արարին եւ տապալեալ

կործանեցին զբարօրութիւն իւրեանց եւ ժողովր֊դեանն ։

Յաւուրս Ղեւոնդեայ ամենայն յօդք ազգային միաբանութեան յոյժ խախտեալ երեւին, թուլամոր֊թիւնն ճարակ գտեալ հաւատարապէս առ եկեղեցա֊կանս եւ առ աշխարհականս, եւ ազգն ինքնին սաստիկս յուզեալ ի կրօնական շփոթութեանց ։ Որ եւ բնակեալ ի միջոցի յունական եւ սասանեան կայսերութեանց, ատէր զերկոսեանն եւս, եւ ատելի էր նոցա ։ Թէ եւ ի գաւառս գաւառս, եւ ի նախարարութիւնս նախա֊րարութիւնս չնչէր տակաւին ոգի ազատութեան եւ յաճիւնոյ դիւցազանց մերոց ի վեր սլանային այսր անդր հերոսք ոմանք. այլ ընդհանուր ազգն ձանձրա֊ցեալ էր ի պատերազմաց, եւ թափեալ յուժոյ՝ խնդրէր զխաղաղութիւն առ ի նորոգել զզօրութիւնս իւր ։ Յայսմ միջոցի երեւեցաւ Մահմէտ որ նոր օրինօք իւրովք եւ միակրօնութեամբ հաւաքեալ զցեղս Արա֊բիոյ իմի՝ ձեւացոյց զժողովուրդ իւր ահաւոր երեւեալ Տիեզերաց ամս աւելի քան զհազար ։ Հայք զզուեալ ի հարստահարութեանց Պարսից եւ ի դարանա֊կալութեանց Յունաց՝ առանց մեծի ինչ դիմադրու֊թեան մտին զառաջինն ընդ իշխանութեամբ Արաբացւոց, զորոց իբրեւ զփորձ առին զանագորոյն եւ զխժական բարուցն. վերստին ծնաւ ի նոսա իղձ ազգային անկախութեան, զոր եւ չահեցան արդեամբ

յիններորդ դարուն տուեալ ճակատս բազումս] եւ Թափեալ արիւն յոլով ։

Թէպէտ ոչ ոք ի մատենագրացն առաջնոց հոգացաւ յայտնել մեզ զժամանակ ծննդեան եւ մահու, եւս եւ զկարեւոր հանգամանս կենաց Ղեւոնդեայ. սակայն ուշ եղեալ ինչ ինչ բանից նորա՝ համարիմք զնա կեցեալ անշուշտ յութերորդ դարուն. եւ հետեւաբար ականատես գրիչ անցիցն ։ Ի պատմելն զճակատուց զորս ետուն Հայք յամին 770-771 առ Արճէշիւ վասն Թօթափելոյ յանձանց զանարգ եւ զատելի լուծ ծառայութեան Արաբացւոց, այսօրինակ խօսի Ղեւոնդ « որպէս ուսաք ի նոյն ինքն ի Թշնամեացն » Այսպիսի ոճ բանից ցուցանէ զինքն ժամանակակից անցմանց եւ սպանութեանց դարուն այնմիկ. որոց հանդիսարան գտաւ Հայաստան ։

Մնայ մեզ ի վերջոյ երկրորդել զոր ինչ գրեալ էաք զրուն ոճոյ շարադրութեան մերոյ հեղինակիս ։ Ի յառաջաբանի գաղղիական Թարգմանութեան Ղեւոնդեայ զոր ընծայեցաք ի լոյս յանցեալ ամին՝ համեմատեալ զնա ընդ ընտիր պատմագիրս մեր ասացեալ էաք Թէ՝ Ղեւոնդ ոչ է հակիրճ որպէս Մովսէս Խորենացի, ոչ պարզ որպէս Ղազար Փարպեցի, ոչ ազդոյ որպէս Եղիշէ եւ ոչ ծաղկանկար որպէս Յովհաննէս կաթողիկոս, այլ հասարակ հայախօս. եւ յայտնեալ էաք զզարմանս մեր Թէ՝ զիա՛րդ Մխի֊

թարեան Հարք ի Նախադրութեան նոր բառգրոց հայկազեան լեզուին կոչեցեալ էին զայն «յստակ եւ ընտիր հայկաբանութեամբ» գրեալ։ Իմաստակ ոմն որ հազիւ ուսեալ զսկզբունս հայ լեզուի, եւ մղեալ ա՛նշուշտ ի փութոյ հակաճառութեան, առնէ մեզ պատասխանի ի Մասեաց աղաւնիի ասելով Զն՞ար է արդեօք զի գրուած ինչ վկայեալ յԱւգերեանէ իցէ այնպէս որպէս եսս պնդեմ։ Թերեւս գրիչ յօդուածոյն ոչ էր անտեղեակ զի զհաւաստարն Ղեւոնդեայ եղեալ էաք երիւք ամօք յառաջագոյն ի կայսերական դպրատունն Փարիզոյ. եւ եթէ ի խնդիր ինչ էր ճշմարտութեան, կարէր որոնել զայն եւ զփորձ առնուլ անձամբ ասացուածոյս մերոյ. այլ նա ոչ արար այնպէս. եւ լաւ համարեցաւ զի կարկաչ իւր լսելի լինիցի մինչեւ յեզերս Գանգէսի ։ Գիտեմ այո, եւ թերեւս առաւել քան զգրիչ յօդուածոյն զյարգ գրաւոր երկանց Հայր Աւգերեանի. այլ ոչ ճանաչեմ զնա անսխալ եւ ո՛չ բնաւ ընդունիլ կարեմ զմարդկան անսխալութիւն ի գրականութեան մասին ։ Սմին իրի զոր ինչ ասացեալ էի կանխաւ ի յառաջաբանի գաղղիական թարգմանութեան մերոյ, վերստին կրկնեմ եւ ի ճակատու հայերէն տպագրութեան նորին հրաւիրելով զպատուելին զայն կշռել իւրովի արդ զկշռադատութիւն մեր ։

Տպագրութիւն մատենիս արարաւ ըստ միոյ եւ եթ·

օրինակի առ ի չգոյէ երկրորդին. վասն որոյ եւ ոչ ի սպառ համարեալ զերծ յակամայ վրիպակաց, զորս գրիչք ներմուծանել կարող էին ի նա յընթացս գրեալ թէ հազարաւոր ամաց: Սակայն գուն գործեցաք ըստ մերովսանն բացատրել ծանօթութեամբք զմթին եւ զանիմանալի բանս եւ բառս զորս արժանի դատեցաք մեկնութեան՝ ջանալով յամենայնի կատարեալ առնել զայն եւ օգտակար ընթերցողաց. որոց նուիրեմ սիրով զաշխատութիւնս իմ հայցելով փոխարէն զաղօթից մասն առ ի կարել յաւարտ հանել զձեռնարկ իմ:

Զթուղթ Լեւոնի կայսեր գրեալ առ Օմար երկրորդ՝ Խալիֆայն ի պատասխանի հարցմանց սորա Պարոն Մօլ Գաղղիացին համարի անվաւեր. եւ հեղինակ վերոյիշեալ յօդուածոյն կակազէ նմա բանս ինչ կնամարդօրէն իբրեւ ի պատասխանի: Հակառակ Պարոն Մօլի պնդեմք թէ թուղթն այն է յոյժ վաւերական, եւ ըստ ամենայնի արժանի ընդունելութեան. եւ ի հաստատութիւն բանիս ի մէջ ածեմք զերկրորդի ուրումն զվկայութիւն, այսինքն Թովմայի Արծրունւոյ, որ երես 116 այսպէս խօսի զայսմ թղթոյ յիւրում պատմութեանն «Սա (իմա՛ Օմար երկրորդ) ազնուագոյն եղեալ քան զամենեսին՝ գրէ թուղթ հաւատոյ առ Ղեւոն՝ կայսր Յունաց. և

ընկալեալ ի նմանէ պատասխանի՝ բազում ինչ ի Կու-րանէ անտի իւրեանց արտաքս ընկէց »։

Այս ինչ անտարակուսելի է միայն թէ՝ ոճ թղթոյն այնորիկ ամենեւին տարբեր է եւ յոյժ ստորին քան զոր ունի ծայրէ ի ծայր պատմութիւն Ղեւոնդեայ, զոր համարիմ թերեւս թարգմանեալ յայլմէ եւ եդեալ ի կարգի պատմութեան վարուց Օմարայ երկրորդի ։

Կարապետ Վարդապետ Շահնազարեանց,
միաբան սրբոյ Էջմիածնի ։








# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՂԵՒՈՆԴԵԱՅ



## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ (1)։

### ՍԿԻԶԲՆ ՊԱՏԵՐԱԶՄԱՑ ԵՒ ԱՇԽԱՐՀԱԿԱԼՈՒԹԵԱՆՑ ԱՐԱԲԱՑԻՈՑ Ի ՍԱՀՄԱՆՍ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԿԱՅՍԵՐՈՒԹԵԱՆ ՅՈՒՆԱՑ։

*Նախ եւ առաջին որք եւ Ամիր-ալ-Մումնիք (2) անուանեցան. զի քսան ամ կալեալ զիշխանութիւնն Մահմետ՝ (3) մեռանի ։ Յետ այնորիկ փոխանորդէ զիշխանութիւն Մահմետի Աբու-Բաքր եւ Ամր եւ Օթման, ամս երեսուն եւ ութ ի մետասաներորդ ամի Հերակլեայ աստուածապսակեալ եւ բարեպաշտ թագաւորին Հոռոմոց ։ Որ մինչդեռ էր կենդանի,*

աստուածապսակեալն. Հերակլէս. ոչ կարացին սփ֊
ռել զասպատակս իւրեանց ի վերայ Հրէաստանի. զի
համբաւ քաջութեան նորա սփռեալ էր եւ զարհուրե֊
ցուցանէր զնոսա ։ Եւ նորա տիրեալ ունէր զիշխանու֊
թիւնն Հրէաստանի եւ Ասորեստանի (4) մինչեւ ի
վախճան կենաց իւրոց ։

Եւ իբրեւ թագաւորեաց որդի նորա փոխանակ
Հերակլեայ հօր իւրոյ (5), յայնմհետէ զարթոյց Տէր
զհոգի արանց չարաց զի առցէ նոքօք զվրէժ֊
խնդրութիւն յազգէն Քրիստոնէից, որք (6) մեղաքն
առաջի Տեառն Աստուծոյ մերոյ ։ Եւ սկսան
գունդ կազմել եւ զօրս գումարել ի վերայ իշխանու֊
թեանն Կոստանդնի, ի վերայ Հրէաստանի եւ Ասո֊
րեստանի զի զպատուէր Օրինադրին իւրեանց ունէին
օժանդակ, զոր պատուիրեաց որոմանցն սերմանողի
թէ՝ ելէ՛ք ի վերայ աշխարհաց, նուաճեցէ՛ք զնոսա ընդ
ձեռամբ ձերով. զի մեզ ասէ տուեալ է զպարարտու֊
թիւն երկրի. կերա՛յք զմիս ընտրելոց երկրի և արբէ՛ք
զարիւն զօրաւորաց ։ Որք եւ սադրիչ ձեզ եւ առաջ֊
նորդք Հրէայք են, որք երթեալ ի բանակս Մաղխամու
տէին ցնոսա «Աբրահամու ասեն խոստացաւ Աստ֊
ուած տալ զբնակիչս երկրի ի ծառայութիւն. եւ մեք
եմք ժառանգք եւ որդիք նահապետին ։ Արդ՝ ի մէնջ
տաղտկացաւ Աստուած վասն չարութեան զնացիցն
մերոց, եւ եբարձ ի մէնջ զթագաւորութեանն զաւա֊

զան , և մտանեայ զմեզ ի ստրկութիւն ծառայութեան. այլեւ դուք էք զաւակք Աբրահամու, եւ որդիք Նահապետին ։ Եկէ՛ք ընդ մեզ և փրկեցէ՛ք զմեզ ի ծառայութենէ արքային Յունաց, եւ ի միասին կալցո՛ւք զիշխանութիւնս մեր » (7) ։

Իբրեւ զայս եւս լուան՝ քաջալերեալ դիմեցին ի վերայ Հրէաստանի ։ Իսկ ապա այդ եղեալ Թագաւորին Յունաց, գրէ առ զօրավարն որ ի Հրէաստանի « լուայ՝ ասէ թէ Սառակինոսք եկին յարձակիլ ի վերայ Հրէաստանի և Ասորեստանի ։ Արդ՝ գումարեա՛ զզօրս քո եւ մարտի՛ր ընդ նոսա եւ արգե՛լ զնոսա. զի մի՛ ապստամբեսցեն ի վերայ երկրիդ մերոյ, և ածիցեն սուր և սատակումն ի վերայ դորա (8) ։ Այլ արդ՝ սպառազինեալ կազմեա՛ զզօրս քո » ։ Իսկ նորա ընկալեալ զհրամանն օգոստական՝ գրէր առ զօրագլուխս որ ընդ իւրով իշխանութեամբ զի ուր եւ իցեն, առ նա հասցեն ։ Եւ վաղվաղակի հասեալք ի միասին՝ լինէին բանակ մեծ. և խաղացեալ յառաջ գնացին ընդդէմ հինին նորա (9), որ զօրացեալ գայր ի վերայ նոցա ։ Երթեալ յանդիման լինէին միմեանց ի սահմանս Ապառաժն Արաբիոյ. տեսանէին զբանակս Մադիամու (10) անթիւ բազմութեամբ եւ իբրեւ զգունդս մարախոյ զանչափութիւն ուղտուցն եւ ձիոց ։ Ապա անգիտացեալ զօրուն Յունաց յանգիտութիւն մեծ, զատուցանէին զաղխս բանակին իւրեանց բա֊

ցաղոյն ի Նոյանէ բաղում վտաւանօք, լքանէին ի բանակին եւ զերիվարսն իւրեանց. եւ ինքեանք ի հետիոտս ապաստանեալ՝ ընդդէմ Նոցա գնային պատերազմել։ Եւ ի ջերմութենէ արեգականցին տապոյն եւ ծարաւոյ ապառաժին եւ յաւազոյն աշխատեալք, եւ պարտասեալք ի ծանրութենէ զինուցն՝ անկան ի մէջ թշնամեացն։

Իսկ Նոքա քանզի ի հանգստեան էին՝ յանկարծակի հեծեալ յերիվարս իւրեանց, եւ յարձակեալ ի վերայ Նոցա, հարին բաղում հարուածս հզօրն (11) Յունաց, եւ ի փախուստ դարձուցեալ զմնացեալսն՝ հետամուտ եղեալ մինչեւ ի բանակն Յունաց, զբաղումս առհասարակ կոտորէին. եւ մնացեալքն հեծեալ յերիվարս փախստականս անկան յաշխարհն Յունաց (12)։

Եւ Իսմայելացւոցն լցեալ յաւարէն Յունաց գանձիւք, եւ առեալ զկապուտ անկելոցն ի սրոյ՝ դարձան խնդութեամբ յաշխարհն իւրեանց։ Եւ յայնմհետէ տիրեցին Հրէաստանի եւ Ասորեստանի վերայ. եւ արկին ընդ հարկօք զաշխարհն եւ զեկեղեցիս սրբոյ քաղաքին։ Եւ յայնմհետէ դադարեցին ի հարկատուութենէ արքայքն Յունաց Հրէաստան եւ Ասորիք. զի ոչ կարացին զդէմ ունել Իսմայելի զօրքն Յունաց։ Եւ Իսմայէլ տիրեաց ի վերայ Հրէաստանի։

# ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ



## ՑԱՂԱԳՍ ԱՍՊԱՏԱԿԵԼՈՑ ԻՍՄԱՅԵԼԻ ՅԱՇԽԱՐՀՆ ՀԱՅՈՑ ԵՒ ՀԱՐԿԱՆԵԼՈՑ ԶԶՕՐՍՆ ՀԱՅՈՑ:

Իսկ ի գալ միւսոյ ամին խորհրդակցեալ միաբան ընդդէմ արքային Պարսից. եւ գումարէին բազմութիւն զօրաց. եւ եկեալ հասանէին ի վերայ արքային Պարսից, որում անուն էր Յազկերտ, որ էր Թոռն Խոսրովու: Ճակատեցաւ եւ Յազկերտի զզօրս իւր՝ պատերազմէր ընդդէմ նոցա, որոց (2) ոչ կարէր զդէմ ունիլ (3): Հարկանէին զզօրս նորա կոտորածով սրոյ. և զԹագաւորն հալածեալ սատակէին: Եւ յայնմհետէ բարձեալ կործանէր Թագաւորութիւնն Պարսից, որոց եղեն Թիւք իշխանութեան նոցա ամք չորս հարիւր ութսուն եւ մի (4): Եւ Իսմայելացւոցն աւար առեալ

զերկիրն եւ զգանձսն արքունի՝ հասուցանէին յաշխարհն իւրեանց ։ Եւ մեծ մասն զօրուն հատեալ ասպատակէին յաշխարհս Հայոց ընդ կողմն Պարսից. եւ առնուին ի գերութիւն զաւանս Մարաց եւ զգաւառն Գողթն եւ զգաւառակերտն Նախիջեւանու. եւ զբազումս յարանց ընդ սուր անցուցանէին, եւ զայլս գերի վարեալ կանամբք եւ մանկտեաւ՝ անցուցանէին ընդ գետն Երասխ ընդ հունն Ջուղայոյ ։ Եւ ընդ երկուս բաժանեալ զօրքն, ոմանք զգերեալսն դարձուցանէին յաշխարհն իւրեանց. եւ գունդ մի հատեալ ասպատակէին ընդ գաւառն Արտազի ի վերայ զօրավարին Յունաց, որում անունն էր Պռոկոպ, որ էր բանակեալ ի գաւառին Գոգովիտ ի սահմանս Բագուձորոյ եւ Մարդուցայից. որում իրազեկ եղեալ իշխանն Թէոդորոս որ էր յազգէն Ռշտունեաց, ազդէր զօրավարին Պռոկոպայ եթէ զօր հինին Իսմայելի զարթուցեալ գայ ի վերայ մեր ։

Իսկ նա ի բազմութիւն զօրացն ապաստանեալ եւ ոչ յԱստուած, որ յաջողէ զպատերազմ, ոչ ինչ գրէր զբանս իշխանին Հայոց ։ Եւ նա մոռմոքեալ ընդ կորուստ աշխարհիս Հայոց եւ ընդ ծուլութիւն զօրավարին՝ ոչ ունէր ժոյժ, այլ մտեալ երկրորդէր եւ երրորդէր զբանն ։ Եւ բարկացեալ զօրավարին ի վերայ իշխանին ձգէր զվարզն, որ ի ձեռին՝ զհետ նորա ։ Եւ սրտմտեալ Թէոդորոս՝ ելանէր յերեսաց նորա, եւ

Նոյն ժամայն հրամայէր զօրացն, որ ընդ իւրով իշխանութեամբ էին «վառեցարո՛ւք ասէ՝ եւ ելէ՛ք ընդդէմ Իսմայելի» ։ Եւ նոքա հեծեալ յերիվարս իւրեանց՝ դարանամուտ եղեն ի Սարակն որում եղբարսն կոչէին. եւ կալեալ զառաջս կրճիցն՝ զբազումս ի նոցանէ սատակէին. եւ առեալ զկապուտ անկելոցն՝ հաստուածեալ ի զօրավարէն գնացին ի գաւառն Գառնի ։ Հրաման ետ ապա եւ Պատրկոսն իւրում զօրուն ելանել ի վերայ թշնամեացն. յորոց վերայ հեղեալ զօրն Իսմայելի, հարկանէին զմեծ մասն Յունաց, եւ զայլսն փախստական արարեալ անցուցանէին ընդ բանակն իւրեանց. եւ ինքեանք դարձեալ ի բանակն նոցա՝ հանգչէին ։ Եւ ասեն լինել զթիւ զօրացն Յունաց աւելի քան զվեց բիւր արանց, եւ զԻսմայելացիսն նուազ քան զբիւր մի արանց ։ Եւ ի վաղիւն ժողովեալ զկապուտ բանակին եւ դարձեալ ընդ կրունկն գնացին յաշխարհն իւրեանց ։

Եւ եղեւ այս ի քսան եւ երկրորդ ամի Աբու-Բաքրի եւ Օթմանայ եւ Ամրի՝ իշխանացն Իսմայելի ։ Եւ դադարեցին յելանելոյ ի վերայ աշխարհիս Հայոց ամս երիս ։ Ապա ի քսան եւ վեցերորդ ամի նոցին իշխանութեանն դարձեալ յարձակէին ելանել ի վերայ աշխարհիս Հայոց զօրու ծանու ։

# ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ



## ԵՐԿՐՈՐԴ ԵՒ ԵՐՐՈՐԴ ԱՍՊԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ ԱՐԱԲԱՑԻՈՑ Ի ՀԱՅՍ :

*Յերկրորդ ամի Կոստանդեայ (1) կայսեր Հռոմոց· որ էր թոռն Հերակլեայ, ապա եղեւ առ իշխանն Թէոդորոս, եթէ հէն զարթուցեալ գայ ի վերայ աշխարհիս : Իսկ նորա առեալ զզօրս իւր՝ կամէր ունել զկիրճս ճանապարհին Ջորայոյ (2), այլ ոչ կարաց ժամանել յառաջ քան զնոսա· քանզի ըստ օդաթեւն արագութեան յարձակեալք իբրեւ օձք թեւաւորք յառաջեցին թշնամիքն, եւ զկնի իւրեանց թողին զզօրս Հայոց՝ դէմ եղեալ ընթացան ի մայրաքաղաքն Դուին : Եւ վասն զի թափուր գտին զքաղաքն յարանց պատերազմողաց, զի ամենեքին զհետ*

Թէոդորոսի իշխանին գնացեալ էին, բայց միայն զկանայս եւ զմանկտիս եւ զայլ խառնիճաղանճս, որք ոչ էին արք պատերազմի։ Հասին ի վերայ քաղաքին, եւ վաղվաղակի առին զամրոցն, եւ զգտեալ արսն ինմա կոտորեցին. եւ զկանայս եւ զմանկտիս վարեցին ի գերութիւն՝ ոգիս երեսուն եւ հինգ հազար։

Արդ՝ ո՞վ արդեօք արժանաւորապէս ողբասցէ զԹշուառութիւն աղետիցն։ Քանզի ամենայն ուստեք անհնարին էր վտանգն. զի սուրբ եկեղեցիք, յորս ոչ էր արժան Հեթանոսաց մտանել, քանդեալ եւ քայքայեալ կոխան ոտիցն անօրինաց լինէին. եւ քահանայք հանդերձ սարկաւագօքն եւ պաշտօնէիւք խողխողեալ սրով ժպիրհ եւ անողորմ Թշնամեացն. եւ բազում տիկնայք փափկասունք, որոց ոչ էր առեալ զփորձ նեղութեան, զանալից Թքօք Թշնամանեալք եւ քարշեալք ի հրապարակս՝ զկականումն ողբոյն բարձրացուցանէին վասն յեղակարծումն օրհասին. Այլ եւ աշխարհախումբ բազմութեանն ըմբռնեալք ուստերօք եւ դստերօք ի նոյն վտանգս՝ յանձախէին զհառաչանս եւ զհեծութիւնս. զի ոչ գիտէին զո՛ր առաւել ողբասցեն՝ զխողխողեալսն յանօրէն սրոյն եթէ զկենդանւոյն անջատեալսն զուստերս եւ զդստերս օտարացուցանել ի հաւատոյն որ ի Քրիստոս, եւ ի հոգեւոր աստուածային փառաւորութեանցն, եւ զոմանս ողորմելի տեսլեամբ

անկեալ դիակունս ի վերայ դիականց ընդ արիւն թաթաւեալք թէպէտեւ ողորմք աշխարհին. այլ ոչ էին ձեռնհաս ամփոփել զմարմինսն եւ տալ գերեզմանի ։ Եւ ի դէպ էր զՄարգարէին առնուլ ողբս, որ ասէ » Աստուած՝ մտին հեթանոսք ի ժառանգութիւն քո, պղծեցին զտաճար սուրբ քո, եւ արկին զդիակունս ծառայից քոց՝ գէշ թռչնոց երկնից, եւ զմարմինս սրբոց քոց՝ գազանաց երկրի. եւ ոչ ոք էր որ թաղէր զնոսա (3)» Զայս ամենայն անցս պատուհասից յայնժամ Հրէաստանի աղէտն, եւ այժմ առ մերս հասեալ տարակուսանս դէ՛պ եղեւ առնուլ ։

Իսկ զօրքն Հայոց հանդերձ Նախարարօքն եւ իշխանաւն իբրեւ տեսին զհէնս սաստիկս հասեալ ի վերայ նոցա, լքան ձեռքն արանց պատերազմողաց, եւ ոչ կարացին յարձակել ի վերայ հինին. զի թէպէտ եւ տեսանէին զկանայս եւ զմանկունս իւրեանց վարեալ ի գերութիւն. այլ քանզի նուազունք էին թուով, ոչ կարացին ի դիմի հարկանել նոցա. այլ նստեալ միայն ողորմք եւ աշխարանօք աւաղէին զկանայս եւ զմանկունս իւրեանց ։ Իսկ Հագարացիքն առեալ տանէին զնոսա յերկիրն Ասորւոց. եւ դադարեցին յելանելոյ ի վերայ աշխարհիս Հայոց ամս տասն ։ Ապա յետ այնորիկ յերեսուն եւ վեցերորդ ամի իշխանութեան նոցա զօր ժողովեալ՝ դարձեալ յարձակեցան

քմերայ աշխարհիս Հայոց. որոց էին գլխաւորք Օթման եւ Օգբայ: Եւ իբրեւ հասին ի սահմանս Հայոց՝ յերիս բաժանեալ առաջս, սփռեցան յասպատակս իւրեանց: Առաջ մի հասեալ ընդ կողմն Վասպուրական աշխարհին, առին զաւանս եւ զամրոցս որ մինչեւ ի Նախիջեւան քաղաք. եւ առաջ մի ընդ կողմն Տարօնոյ. եւ միւս առաջն հասեալ ի Գոգովիտ՝ պաշարէին զամրոցն Արծափայ: Եւ գտեալ զմուտ բերդին, ի գիշերի գաղտագողի ելին ի նա զի ի քուն գտին զպահապանսն, եւ առին զամրոցն. եւ զգտեալ արսն որ ի նմա՝ արկին ընդ կապանօք: Եւ ի բազում անհոգութեան եղեալ այնուհետեւ՝ խառնակէին զազրալից պղծութեամբք ընդ կանայսն. յորս գթացեալ Ամենատեսն Աստուած՝ աստանօր ոչ անտես առնէր զհաւատացեալս անուան իւրոյ, այլ առաքէր ի վրէժխնդրութիւն չարեացն, զոր գործեցին՝ զիշխանն Թէոդորոս, որոյ արագաթեւ յարձակմամբ իբրեւ զխոյանալ արծւոյ հասեալ քմերայ հինին եկելոյ, եւ ընդ նմա արք վեց հարիւր վառեալք զինու վաղվազակի հասեալք՝ սատակէին զթշնամիսն իբրեւ արս երիս հազարս. եւ զկապեալսն արձակէին. եւ զսակաւ Մնացորդսն թշնամեաց փախստական արարեալ դարձուցանէին զգերեալսն. եւ զաւար եւ զկապուտ թշնամեացն ժողովեալ՝ դարձան խնդութեամբ փառաւորելով զԱստուած, որ խնդրեաց զվրէժ ի թշնա-

մեաց Նոցա (4) ։ Իսկ այն զօրք, զոր յառաջագոյն պատմեցի, առեալ զաւար եւ զգերեալսն՝ գնացին յաշխարհն Ասորւոց. եւ դադարեցին յետ այնորիկ ամս երկու ։

Եւ զայս չարիս կատարեալ իշխանոյն Իսմայելի Աբու-Բաքիրայ (5), Օթմանայ եւ Ամրի յաւուրս իւրեանց՝ վախճանեցան ։



# ԳԼՈՒԽ ՉՈՐՈՐԴ



## ԽԱԼԻՖԱՅՈՒԹԻՒՆ ՄՈՒԱՒԵԱՑ ՏԵՒԵԱԼ ԱՄՍ ՏԱՄՆ ԵՒ ԻՆՆ ԵՒ ԱՄԻՍՍ ՉՈՐՍ. ԳՐԻԳՈՐ ՄԱՄԻ- ԿՈՆԵԱՆ ԿԱՐԳԻ Ի ՆՄԱՆԷ ԻՇԽԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԵԼՈՑ ԸՆԴ ԼԾՈՎ ԾԱՌԱՅՈՒԹԵԱՆ ԱՐԱԲԱ- ՑԻՈՑ. ԱՆՑՔ ՈՐ ԱՆՑԻՆ ՉԱՅՍՈՒ ԺԱՄԱՆԱԿԱՒ ԸՆԴ ՀԱՅՍ :

*Յետնոցա տէրիզիշխանութիւնն ոմն Մուաւիա (1) ամս տասն եւ ինն եւ ամիսս չորս. եւ վախճանի ։ Եւ եթէ զիա՛րդ յաւուրս նորա էր իշխանն Գրիգոր. եւ որ ինչ անցք անցին ընդ աշխարհս Հայոց. եւ մահուան իշխանացն ։ Ի սորա յառաջնում ամի իշխանութեա- նըն եւ ի քսան եւ հինգ ամի Կոստանդնի կայսեր, որ էր Թոռն Հերակլի, սկսաւ զօրս գումարել իվերայ*

աշխարհիս Հայոց իշխանն Տաճկաց (2) ։ Ազդ եղեւ առ Թագաւորն Կոստանդին բանն. եւ հրամայէր զօրավարին, որ ի կողմանս Կիլիկեցւոց՝ ելանել ընդդէմ նորա ։ Ընկենոյր եւ զիշխանն Թէոդորոս յիշխանութենէն վասն նենգութեանն, զոր արար առ զօրավարին Պռոկոպայ, եւ փոխանակ նորա կացուցանէր զՍմբատ ոմն ի տոհմէ Բագրատունեաց, եւ առաքէր ընդ զօրավարին իւրում։ Գրէր եւ առ Թէոդորոս Ռշտունի, որ յառաջն իշխանն էր, ասէ « Ե՛լ ընդ մեզ ի պատերազմ զօրօք որ ընդ ձեռամբ քո է » ։ Եւ ոչ կամեցաւ նա ելանել։ Գրէ դարձեալ երկրորդ անգամ « Եթէ ոչ ելցես ընդ մեզ ի վերայ հինիս, ի դառնալն մերումայսրէն՝ ջնջեսցուք զտունդ քո յաղագս տոհմէ մերմէ » ։ Որոյ երկուցեալ ի սպառնալեացն՝ հանդերձէր զորդի իւր զՎարդ երթալ ընդ իշխանին Սմբատայ. եւ տայր հրաման նենգութիւն առնել սիրելեացն եւ միաբանիլ ընդ թշնամեացն ։ Որոյ երթեալ առ զօրավարն Յունաց, չուեցին ի կողմանս Ասորւոց եւ անցին ընդ գետն (3) Եփրատայ ։ Եւ մատուցեալ որդւոյն Թէոդորոսի առ զօրավարն՝ խնդրէր զինքն կարգել պահապան նաւակամրջացն. եւ նորա հրամայեալ նմա պահել զխելս զոմոյն ։

Եւ իբրեւ բախեցին ընդ միմեանս պատերազմաւ. եւ անկան յերկոցունց կողմանցն հարուածք. դարձեալ զօրացան զօրքն Տաճկաց, եւ փախստական արարին

զգունողն Յունաց յաւուր մեծի շաբաթուն Զատկի ։ Իբրեւ ետես որդին Թէոդորոսի զյաղթութիւնն Իսմայելի՝ զօրացեալ անցանէր յայնկոյս գետոյն, եւ հատեալ կտրեաց զլարս կամրջին, զի մի ապրեսցին փախստեայքն ։ Եւ նոքա ի մէջ արարեալ զզօրսն Յունաց՝ զոմանս գետավէժ առնէին, եւ ոմանք զերծան փախստեայ (4) յաշխարհն Յունաց ։ Եւ յայնմհետէ լքաւ սիրտ արքային Յունաց. զի գիտաց թէ՝ ի Տեառնէ է խոտորումն իշխանութեան նորա. եւ ոչ եւս յաւել ելանել ի վերայ Իսմայելի ։

Իսկ իշխանն Իսմայելի գրէ հրովարտակ յաշխարհն Հայոց՝ եթէ ոչ հարկեսջիք ինձ, եւ ոչ անկջիք ընդ լծով ծառայութեան իմոյ, ի սուր սուսերի մաշեցից զամենեսեան ։ Յայնժամ ժողովեալք ի միասին Քահանայապետն Հայոց Ներսէս՝ շինող սրբոյն Գրիգորի, եւ իշխանք եւ նախարարք աշխարհիս, յանձին կալան հարկել բռնութեան Իսմայելացւոցն ։ Յորոց խնդրեալ պատանդս, տային երկուս ի նախարարացն Հայոց զԳրիգոր ի Մամիկոնեան տանէ, եւ զՍմբատ ի Բագրատունի տանէ ։ Եւ տարեալ զնոսա առ իշխանն Տաճկաց Մուաւիա, հատին ի վերայ աշխարհիս Հայոց հարկս 500 դահեկան ի միում ամի հատուցանել նոցա, եւ աներկիւղ մնալ ի բնակութիւնս իւրեանց ։

Իսկ յերկրորդում ամի իշխանութեանն Մուաւիա կոչէ զԳրիգոր եւ զՍմբատ, որ էին պատանդք ի

դրանն արքունի. եւ տայր Գրիգորի զպատիւ իշխանութեանս Հայոց. եւ առաքէ զնոսա բազում մեծարանօք յաշխարհն Հայոց ։ Եւ եղեւ բազում խաղաղութիւն յաւուրս նորա իշխանութեանն ։

Եւ յետ նորա Եզիտ՝ որդի Մուաւեայ. եւ սպրի ամս երկուս եւ ամիսս հինգ, եւ վախճանի ։ Եւ նա վարեաց զաշխարհն Հայոց ի նոյն սակ հարկի ։ Եւ յետ նորա Աբդլ-Մէլիք՝ (5) որդի Մրվանայ (6) ։ Եւ եկաց ամս քսան եւ մի, եւ վախճանեցաւ ։ Եւ այս է վարք նորա ։ Նա էր այր ժանտ եւ գոռ պատերազմող (7) ։ Ի յերկրորդում ամի իշխանութեան նորա եղեւ խառնակումն սաստիկ ի մէջ Տաճկաց եւ պատերազմ, եւ բազում հեղումն արեանց ինքեանք յինքեանց հանէին ։ Եւ սատակեցաւ պատերազմ ի մէջ նոցա զերիս ամս. եւ անթիւ եղեն սպանեալքն ի նոցունց մինչեւ կատարիլ (8) մարգարէութեանն Դաւթի՝ որ ասէ «սուրք նոցա մտցեն ի սիրտս իւրեանց, եւ աղեղունք նոցա փշրեսցին» (9) Զի փոխանակ անպարտ արեանն եւ անողորմ սատակմանցն, զորս յաճախեցին իմերայ ազգիս Քրիստոնէից, արիւն վրիժապարտ հեղաւ իրաւացի. եւ պահանջեաց Աստուած զվրէժ արհամարհանաց ծառայից իւրոց նոցին իսկ ձեռօք ։

Իսկ Գրիգոր իշխանն Հայոց յաւուրս իւրոյ իշխանութեանն խաղաղացոյց զաշխարհն Հայոց յամենայն հինից եւ յարձակմանց. զի էր այր երկիւղած

յԱստուծոյ, եղբայրասէր եւ օտարասէր եւ դարմանիչ աղքատաց, եւ կատարեալ ի հաւատս աստուածպաշտութեան ։ Եւ շինեաց նա տուն աղօթից ի գաւառն Արագածոյ ուրն ի յաւանն Արուճ տաճար փառաւոր անուան Տեառն՝ գեղեցիկ վայելչութեամբ զարդարեալ ի յիշատակ անուան իւրոյ ։

Եւ ի ժամանակի պատերազմին որ ի մէջ Տաճկաց, դադարեցին ի հարկատուութենէ նոցա Հայք, Վիրք, Աղվանք (10) ծառայեալ նոցա ամս երեսուն ։ Եւ եղեն աւուրք ապստամբութեան նոցա ամք երեք ։ Եւ ի չորրորդում ամին տիրեցին ի վերայ աշխարհիս Հայոց Հիւսիսային ազգն որ ասին Խազիրք, եւ սպանին ի պատերազմին զիշխանն Գրիգոր եւ զբազումս ի նախարարացն եւ զիշխանսն Վրաց եւ Աղվանից ։ Եւ ինքեանք ասպատակ սփռեալ ի վերայ աշխարհիս Հայոց, առին զբազում գաւառս եւ զաւանս. եւ առեալ զգերութիւն՝ գնացին յաշխարհն իւրեանց ։



# ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ



**ԱՇՈՏ՝ ՈՍՏԻԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ. ՄԱՀ ՆՈՐԱ. ԱՅՐԵՑԱԾՆ ՀՈՌՈՄՈՑԻ. ՃԱԿԱՏ ՄՕՐԻՆ. ՎՏԱՐԱՆՋՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ. ՃԱԿԱՏ ՎԱՐԴԱՆԱԿԵՐՏԻ ՀԱՆԴԵՐՁ ՅԱՂԹՈՒԹԵԱՄԲ ՀԱՅՈՑ. ՎԵՐՋ ՎՏԱՐԱՆՋՈՒԹԵԱՆՆ։**

*Վասն Աշոտի իշխանութեանն, եւ այրեցածին Հոռոմոցի, եւ մահուանն Աշոտոյ։ Իսկ ապա յետ մահուանն Գրիգորի յաջորդէ զիշխանութիւնն Աշոտ պատրիկ՝ այր երեւելի եւ նախամեծար ի մէջ նախարարացն Հայոց, ի տոհմէ Բագրատունեաց, ճոխ եւ պերճ յիշխանութեանն, եւ յամենայն վարս երկրայինս զգաստ եւ առաքինասէր եւ ազնուական քան զամենեսեան եւ ծանօթ երկիւղին Աստուծոյ, եւ հոգաբար֊*

ձու ամենայն բարեգործութեան, փոյթ յուսումնա-
սիրութեան. եւ զարդարէր զեկեղեցիս Աստուծոյ
վարդապետական արուեստիւք եւ պաշտօնէից
խմբաւորութեամբ: Պատուէր եւ երեւելի սպասուք
յիւրոց գանձուց, եւ շինէր զեկեղեցին Դարինից
յիւրում Ոստանին. եւ զկենդանագրեալ զպատկեր
մարդեղութեանն Քրիստոսի ածեալ խմոռիյն արեւու
մեծապաքանչ զօրութեամբ հանգուցանէր ի նմա. եւ
նորա անուամբ զեկեղեցին անուանեաց:

Եւ յառաջնում ամի իշխանութեան նորա երեւե-
ցաւ աստղն զարմանալի տեսլեամբ վարսաւոր, զի
ճաճանչ նշողիցն սիւնաձեւ յիւրմէն փողփողէր զլոյսն
յետոյ ինքեան, զոր անուանեալ կոչէին աստղ գի-
սաւոր: Որ եղեւ նշանակ սովոյ եւ սրոյ եւ մեծի
սաստանութեան:

Եւ յերկրորդումն ամի թագաւորութեան Յուստի-
անոսի կայսեր, եւ յիշխանութեանն Աշոտոյ պա-
տրկի առաքէ զօրս բազումս ի վերայ աշխարհիս
Հայոց. որք եկեալ աւերեցին զաշխարհս աւարառու-
թեամբ, եւ զբազում գեղեցկայարմար շինուածս
հրճիզ արարին յաւեր դարձուցանելով. եւ ինքեանք
դառնային յաշխարհն իւրեանց: Եւ զայն Յուստինիա-
նոս (1) թշնամանեալ մեծամեծացն Յունաց, եւ
կտրեալ զքիթն՝ աքսորեցին. եւ փոխանակ նորա
թագաւորեցուցին զԼեւոն եւ զԱփսիմերոս եւ զՏի-

բեր եւ զԹէոդոս ։ Իսկ Յուստինիանոս գնացեալ յաշ֊
խարհն Խազրաց, առնոյր իւր կնութեան զդուստրն
Խաքանայ արքային Խազրաց. եւ խնդրեալ ի նմանէ
զօրս յօգնականութիւն ։ Եւ նա առաքէր զօր բազում
եւ զՏրուէղ ոմն աներ Յուստինիանոսի ընդ զօրուն,
այր հզօր զօրութեամբ ։ Եւ հասեալ ի Կոստանդնու֊
պօլիս՝ մարտ եդեալ յաղթէր հակառակորդացն,
եւ վերստին հաստատէր զթագաւորութիւնն ։ Եւ
Տրուէղն մեռանէր ի պատերազմին. Իսկ զայլ զօրսն
Խազրաց առաքէր բազում պարգեւօք եւ պատուա֊
կան ստացուածովք յաշխարհն իւրեանց ։

Իսկ Աշոտոյ կալեալ զիշխանութիւնն ամս չորս,
եւ ի չորրորդ ամի իշխանութեան նորա գունդ մի աս֊
պատակութեամբ յորդւոյն Իսմայելի յարձակեալ
ի վերայ աշխարհին Հայոց, որ էին որդիք յանցանաց
եւ զաւակք անօրէնութեան, գործէին զանօրէնու֊
թիւն յաւանս Մարաց ի Խրամ, ի Ջուղայ եւ ի Խո֊
շակունիս. զի զտորան հարկապահանջութեամբ խոշ֊
տանգէին, եւ զկանայսն զազրալից պղծութեամբ
խորհէին խայտառակել ըստ անօրէնութեան իւր֊
եանց ։ Այգ եղեւ առ իշխանն Աշոտ համբաւ չա֊
րեաց նոցա, եւ վաղվաղակի հրաման տայր զօրուն
ելանել ի վերայ նոցա ։ Հարին զամենեսեան սատակ֊
մամբ սրոյ, եւ զմնացորդսն փախստական առնէին ։
Իբրեւ ետես խորամանկն որդին սատանայի զհէնն

իվերայ սատակացեալ, հրաման ետ զօրաց իւրոց զգանձն ժողովեալ ցրուել ի դաշտին առաջի զօրացն Հայոց. եւ Նոցա անխորհրդաբար դարձեալ յաւարն՝ Թուլացան ի հետոց Նոցա ։ Բայց միայն իշխանն Աշոտ սակաւ արամբք պնդեալ երթայր զկնի Նոցա. եւ զօրացեալ Թշնամեացն՝ դարձան ի վերայ Նոցա, եւ հարեալ վիրաւորեցին զիշխանն Հայոց ։ Ապա ճիչ բարձեալ զօրացն՝ եւ Նոքա վաղվաղակի հասեալ հարեալ սատակէին զԹշնամիսն. եւ ինքեանք առեալ ածէին զիշխանն ի Գողովիտ կարեվէր խոցմամբն, որ ի Նոյն մահիճս վախճանեցաւ փառաւորապէս, եւ Թաղեցաւ ի կայս հանգստեան իւրոյ ի գիւղն Դարիւնս ։

Վասն մօրին կռուին ։ Յետ այնորիկ զոր պատմեցաք՝ դարձեալ զօր առաքէր արքայն Յունաց որում Ափխմերոսն կոչէին, որ էր փոխանակ Յուստիանոսի կայսեր. եւ հրամայէր ունել զՍմբատ՝ որդի Վարազտիրոցի, որպէս Թէ քինախնդիր եղեալ զոր կրճատեաց Նա ի զօրացն Յունաց վասն մահուան հօր իւրոյ Վարազտիրոցի, զոր սպանին Հոռոմք ։ Եւ եկեալ պատերազմեցան ընդ Նմա ի մօրամէջ դաշտին Պայիկայ. եւ բազում եղեն հարուածք զօրացն Հայոց զի Նուազունք էին ։ Անկան եւ ի զօրուէն Յունաց յոլովք ։ Իբրեւ ետես Սմբատ եԹէ՝ ոչ կարէին զդէմ ունել զօրացն Յունաց, փախստական եղեալ

գնաց մազապուրծ սակաւ արամբք. եւ զօրքն Յունաց դարձան յաշխարհն իւրեանց ։

Ճառեցից դարձեալ վասն անհնարին աղէտիցն որ եհաս ի տոհմէն Իսմայելի ի վերայ մեր ։ Զի յետ վեշտասան ամի իշխանութեանն Աբդլ-Մելիքի՝ դարձեալ գրգռեալ սիրտն նորա ի չարասէրն սատանայէ. եւ հրամայեաց զօրաց իւրոց ելանել ի վերայ աշխարհիս, որոց զօրագլուխ էր արեանարբուն եւ այսակիրն Մահմետ, որոյ դաշինս անօրէնութեան ուխտեալ առ իշխանսն իւրեանց երդմամբ չդարձուցանել զսուր ի պատեանս մինչեւ իմէջ աշխարհիս ։ Եւ գնացեալ խրոխտալով՝ մինչեւ ի գաւառն Ջերմաձոր ելանէր, եւ զորս միանգամ գտանէր՝ սուր ի գործ արարեալ կոտորէր անխնայ ըստ խոստմանց իւրեանց ։ Բայց զի բազմաց ազդ եղեալ էր յառաջագոյն՝ զգուշացան յամրոցս բերդից ապաստանեալ ։ Առնոյր և բազում ամրոցս խարէութեամբ. քանզի պատիր բանիւք կոչէր ի խաղաղութիւն ։ Եւ իբրեւ վստահացեալք իջանէին յամրոցացն, սուր իգործ արարեալ՝ կոտորէր զարս. և զկանայս և զմանկունսն վարէր ի գերութիւն. եւ բազում նեղութիւն եւ տագնապ հասուցանէր աշխարհիս՝ մինչեւ երանել զմեռեալսն, որք խաղաղական հանգստեամբ յաշխարհէս փոխեցան, քան այնպիսի նեղութեամբք զկենդանութիւն կրել ։

Եւ զկնի երկուց ամաց խզլուխ ամբարշտութեանն հասեալ՝ փոխէր զմահաբեր թոյնն. նիւթէր ի վերայ ուխտին սրբոյն Գրիգորի զմահ ։ Քանզի տեսին զվայելչութիւն երեւելի եւ պատուական սպասուցն որ ի նմա ամբարեալ թագաւորացն, իշխանացն եւ նախարարաց աշխարհիս ։ Տեսին եւ զկարգաւորութիւն հրեշտակակերպ դասուց քահանայական երաստուց, ընդ նմին եւ զվարդապետացն եւ զպաշտօնէից բարեկարգութիւնս եւ զհրեշտակական երգս ի վերայ երկրի ։ Եւ խանդացեալ խոցեցան յոգիս իւրեանց. եւ դաւաճանեալ նիւթեցին ի վերայ նոցա զմահաբեր կորուստ ։ Զի երթեալ գունդ մի անօրինաց օթեւանել ի յարկսն նորա. եւ յարուցեալ ի գիշերի՝ զծառայ մի զիւրեանց խեղդամահ արարին եւ ընկեցին ի խորափիտ մի. եւ ընդ լուսանալ առաւօտին յարեան ի գնալ ։ Եւ խնդրեալ զծառայն զոր ինքեանք խողխողեալն էին եւ ոչ գտին. եւ բազում նեղութիւն եւ վտանգ հասուցին ի վերայ ուխտի եկեղեցւոյն ։ Եւ յոյզ արկեալ գտին ի խորափիտին՝ յոր ընկեցեալն էին. եւ նոյն ժամայն բաղայս ստութեան կարկատեալ ի վերայ՝ կալան զամենեսեան ի փոքուէ մինչեւ ի մեծամեծս եւ եդին ի բանտի. եւ դրեցին հրովարտակ առ արիւնարբուն Մահմետ եթէ՝ զայս եւ զայն գործեցին ընդ մեզ. արդ՝ ո՛րպիսի մահուամբ կորուսցուք ։ Որոյ լուեալ զայս՝ « ըստ կամաց իւրեանց

դատել ասէ զնոսա, եւ զինչս եկեղեցւոյն վտարել
յաւարի » ։ Եւ ընկալեալ դաՀճացն զՀրամանն անի֊
րաւ, զմխմեամբք ելանէին կատարել զՀրաման Հօրն
իւրեանց սատանայի, որ ի սկզբանէ մարդասպան էր
եւ ի ճշմարտութեան ոչ եկաց (2) որպէս ի Տեառնէ
ուսաք ։ Եւ ածեալ զամենեսեան արտաքս ի բանտէն
տռամբք կապանաց նախ՝ ծայրակոտոր առնէին
զոտսն եւ զձեռս, եւ ապա զփայտէ կախեալ բառ֊
նային զկենդանութիւն նոցա ։

Արդ՝ ո՞վ ոք առանց արտասուաց բերիցէ զանճա֊
րին աղէտսն որ ժամանեաց նոցա. զի սուրբ եկեղեցին
խորթնացեալ ի բարեզարդութենէ բեմին եւ լռեալ
ձայն աստուածային փառաբանութեանն. ընդ նմին
լռեալ Հոգեւոր եւ բանաւոր պատարագացն կարգք,
զոր սուրբքն մատուցանէին սրտի մտօք միայնոյ
մաքրագունին ։ Շիջեալ եւ պայծառութիւն լապ֊
տերացն, որովք զգիշերն որպէս զտիւ լուսաւոր
առնէին ։ Դադարեալ եւ բուրումն անուշաՀոտ խն֊
կոյն, եւ մաղթանք քաՀանայից, որովք զփառաւո֊
րութիւն ժողովրդոյն նուիրէին Արարչին, եւ զՀաչ֊
տութիւն ի մարդասիրէն Աստուծոյ Հայցէին ։ Եւ
միանգամայն ասել՝ ամենայն բարեվայելչութիւն
խորանին Տեառն դադարկացեալ ։ Ով Քրիստոսի
երկայնմտութեանն. զիա՞րդ արդեօք ներեաց անօ֊
րինացն զրպարտութեան ածել ի վերայ փառաւոր֊

չայն իւրոյ զչարութիւն մահուն այնորիկ. այլ առ ժամայն մահուամբն կամեցաւ զի զյաւիտենական կեանսն պարգեւեսցէ. զի որք չարչարանացն կցորդք եղեն, եւ փառացն հաղորդ լինելոց են ։ Եւ զի խաչակից եղեն Քրիստոսի, եւ ընդ նմա թագաւորեսցեն. եւ որք մեռան ընդ նմա ընդ նմին եւ կենագործեսցին, եւ յաւիտեանս յաւիտենից ժառանգեսցեն զխոստացեալն հանգիստ ։ Եւ գործունեայքն սատանայի ընդ նմին ժառանգեսցեն զպատրաստեալ նոցա զդատութիւն բազմատեսակ տանջանաց ըզհուրն եւ զխաւարն, զորդն անվախճան, զլալն աչաց եւ զկրճտելն ատամանց. զորոց տեսակս գիտէ ինքն որ պատրաստեաց զնոսա ։ Այս ամենայն գալոց է ի վերայ ամենեցուն, որ գործեն զանօրէնութիւն ։

Իսկ Մահմետն, զորմէ պատմեցաքն՝ կատարեալ զայս ամենայն չարիս, գնաց անդէն բազում աւարաւ յԱսորեստան (3) ։ Իսկ բնակիչք աշխարհիս մնացին իբրեւ զխանձող ծխեալ ի հրոյ եւ իբրեւ զօրան (4) փխրեալ զոր առ ոտն կոխեալ խոզից ։ Եւ իբրեւ գնաց Մահմետ զօրավարն յԱսորիս՝ եթող յաշխարհիս Հայոց իշխան փոխանակ իւր յԻսմայելացւոցն ։ Որոյ խորհուրդ վատ իմէջ առեալ բառնալ զազատախումբ տոհմն յաշխարհէս Հայոց հանդերձ նոցին հեծելովք ։ Եւ անդէն վաղվաղակի յայտնեցաւ նենգութիւն նորա Սմբատայ, որ էր ի տոհմէ Բագրատու-

նեաց, եւ այլոց նախարարաց եւ նոցին հեծելոց ։ Իսկ իբրեւ զգայր զդաւաճանութիւնն՝ կոչէր առ ինքն զհամազունս իւր զազատախումբ բանակին, զԱմբատ՝ զորդի Աշոտոյ իշխանի, եւ զՎարդ՝ որդի Թէոդորոսի իշխանին, եւ զեղբայր իւր զԱշոտ, եւ զայլ նախարարսն. եւ խորհէր հնարս գտանել որով մարթասցեն զանձինս ապրեցուցանել ։ Եւ եղեւ խորհրդին տեղի տալ եւ գնալ յաշխարհէս առ Թագաւորն Յունաց ։ Եւ անդէն անջատեալ մեկնեցան ոմանք ի նախարարաց Վասպուրականու աշխարհին։ Իսկ նոցա դէմ եդեալ գնային ի կողմանցն Վասպուրականի ի դաշտավայրն Մարդէն, որում Առեստակողմն կոչեն. քանզի անդ բնակեալ էր միայնակեաց ոմն, առ որ չոգան հարցանել զորպիսութիւն գործոյն, քանզի էր այր սուրբ, ընտրեալ եւ լի հոգեւոր իմաստութեամբ ։ Իսկ նորա աշխարեալ եւ աւաղեալ զկորուստ աշխարհիս եւ զկործանումն եկեղեցեաց եւ զթափուր լինելն ի նախարարական տոհմէն, ոչ ինչ կարէր հրամայել. այլ միայն անձնապահ լինել եւ զգուշանալ ի նենգութենէն ։ Եւ աղօթս արարեալ ի վերայ նոցա՝ յանձնեաց զնոսա շնորհացն Տեառն եւ առաքեաց յիւրմէ ։

Եւ նոքա գնացեալ ընդ եզր գետոյն Երասխայ՝ անցանէին ընդ սահմանն Ուզայէոյ եւ հասանէին ի մեծ աւանն Ակոռի ։ Իսկ զօրքն Իսմայելի որ էին

ի Նախիջեւան (5) քաղաքի, յարձակեցան զկնի նոցա եւ ոչ մեկնեցան ի հետոյ նոցա. քանզի էին աւելի քան զութն հազար (6), եւ կամէին կենդանւոյն կլանել զնոսա ։ Եւ իբրեւ ազդ եղեւ զօրուն Հայոց վասն հինին, որ զարթուցեալ գայր ի վերայ նոցա. յարուցեալ անցին ընդ գետն Երասխ, եւ բանակեցան ի Վարդանակերտն աւանի. (7) եւ զօրն Տաճկաց պընդեալ գայր զկնի նոցա ։ Իսկ զօրուն Հայոց պատգամ յղեալ առ զօրսն Տաճկաց « ընդէ՞ր ասէ՝ պնդեալ գայք զկնի մեր. զի՞նչ ինչ մեղաք ձեզ. ահաւասիկ երկիրդ մեր առաջի ձեր է. ձեզ տուեալ եմք զբնակութիւնս մեր, զայգիս մեր, եւ զանտառս եւ զանդաստանս մեր. արդ՝ ընդէ՞ր եւ ՝զանձինս մեր խնդրէք ։ Թո՛յլ տուք մեզ գնալ ի սահմանաց մերոց » ։ Եւ ոչ կամեցան լսել զօրքն Իսմայելի, զի ի Տեառնէ կարծրանային սիրտք նոցա զի մատնեսցին ի ձեռն սրոյ ։ Իսկ զօրուն Հայոց ամրացուցեալ զփողոցս աւանին՝ կարգեցին ի վերայ պահապանս մինչեւ ի լուսանալ առաւօտին ։ Եւ ինքեանք զգիշերն ողջոյն ի հսկումն աղօթից կանխեալ՝ հայցէին ի բոլորեցունց Տեառնէն զմեծազօր աջոյն օգնականութիւն եւ ուղղութեամբ (8) դատել ի մէջ նոցա եւ թշնամեացն ։ Եւ իսկոյն ընդ ծագել առաւօտին իբրեւ յանգէր պաշտօնն առաւօտին. մատուցանէին եւ հոգեւոր պատարագն, եւ արժանաւորքն հաղորդէին մարմնոյ եւ արեան Տեառն

իբրեւ յետին թշուառ զայն համարեալ անձանց ։ Եւ առնուին սուղ ինչ կերակուր յաղագս զօրութեան մարմնոյ ։ Եւ նոյնժամայն յարուցեալ յարդարեցին գունդ առ գունդ եւ ճակատ առ ճակատ, եւ խմբեցաւ պատերազմն ։ Անդ հասեալ յօգնականութիւն մեծազօրն Աստուծոյ գնդին Հայոց՝ թէպէտեւ նուազունք էին քան զթիւ երկուց հազարաց. սակայն զբազումս հարեալ սատակէին ի սուր սուսերի ։ Քանզի էին առաւելք ցրտաշունչ սառնամանեաց. եւ եւս առաւել սաստկացեալ դառնաշունչ օդոյն, կասեցուցանէր զզօրսն Իսմայելի յարխական զօրութենէ իւրեանց. զի զգիշերն ամենայն ի վերայ ձեան օթագայեալ էին եւ ընդ ծագել լուսոյն անկանէին ի ձեռս սրոյ. եւ որք ի սրոյն փախեան՝ անկան ի գետն Եփրատ. քանզի պաշարեալ էր ի խստութենէ օդոյն ։ Եւ իբրեւ եկանէին ի վերայ պաղին բազմութիւն զօրացն, անդէն փաղփաղակի խորոց մտանէին խորտակեալ պաղին, որք ի սրոյն զերծեալ էին. եւ այնպէս հեղձամահ վճարէին ի կենաց (9) ։ Յորոց նուազունք ի փախուստ դարձեալ իբրեւ արք երեք հարիւր՝ ապաւինէին առ տիկինն Շուշան ։ Զորոց զկնի հետամուտ եղեալ Սմբատ՝ որդի Աշոտոյ (10) զօրօքն իւրովք՝ կամէր արկանել զփախստեայսն ի սուր սուսերի։ Որում ընդ առաջ ելեալ տիկինն Շուշան՝ բազում աղերսանօք եւ դաշամբք թափէր զնոսա մերկս եւ բոկս եւ հետեւակս եւ

վիրաւորս, զորոց առեալ պատէր զվէրս եւ ողջացուցանէր եւ զգեցուցանէր հանդերձիւք ։ Տայր եւ դրաստս յիւրոց երամակաց, եւ առաքէր առ Իշխանն Իմաստելի Աբդլ-Մելիք, վասն որոյ եւ ի նմանէ բազում շնորհակալութիւն ընկալեալ, եւ մեծամեծ պատիւս առաքէր նմա ։

Իսկ զօրն Հայոց յղփացեալ յաւարէ թշնամեացն՝ առաքէին առ թագաւորն Յունաց աւետիս զյաղթութեան իւրեանց ։ Տային տանել նմա ընծայս յաւարէ թշնամեացն զընտիրս երիվարացն տաճիկ ձիոց. եւ զունչս զիականցն անկելոց հատեալ առաքէին ընդ նմին ։ Եւ կայսրն ընկալեալ զայն նուէր՝ մեծապէս գոհութիւնս մատուցանէր Արարչին, եւ շնորհակալութիւն Սմբատայ եւ նախարարացն որ ընդ նմա եւ նոյին զօրացն ։ Եւ տայր բերել նմա պատիւ Կիւրապաղատութեան ըստ օրինի թագաւորաց ։ Եւ նորա ընկալեալ զպատիւ ի կայսերէն, առնոյր զզօրս իւր եւ երթայր յաշխարհն Տայոց, մտանէր յամրոցն որում Թուխարան կոչեն, եւ զգուշանայր յորդւոյն Իսմայելի ։

Զայնու ժամանակաւ դարձեալ այլ հէն գայր ի վերայ զօրուն որ ի կողմանս Վասպուրական աշխարհին. եւ եկեալ յանդիման լինէին ի գաւառն Ռշտունեաց ի գիւղն որում Գուկանսն կոչեն ։ Անդ յանդիմանս լինէին միմեանց ։ Իբրեւ տեսին զի նուա-

զունք էին, դիմեցին սաստկապէս ի վերայ նոցա.
եւ նոյնժամայն գթացեալ ողորմութեանն Աստու-
ծոյ, եւ յայնմ նուագի եւս հասանէր ի թիկունս
օգնականութեան ։ Եւ զամենեսեան ի սուր սուսերի
մաշեցին, բայց միայն արք երկու հարիւր ութսուն ի
փախուստ դարձեալ՝ անկան յեկեղեցին ։ Եւ իբրեւ
ոչ կարացին առնանել, խորհեցան հրկէզ առնել
զորբարանն. այլ ոչ թողացոյց նոցա Ամրատ՝ իշ-
խան կողմանն Վասպուրականի, որ էր որդի Աշոտոյ
իշխանի, եւ ոչ ետ գործել զապիրատութիւնն զայն.
զի ասէր «քաւ լիցի մեզ ձեռնամուխ լինել ի բնակա-
րան փառացն Տեառն, որ զայնպիսի յաղթութիւն
մեզ պարգեւեաց» ։ Եւ կարգեցին պահապանս
պահել զնոսա մինչեւ նոյն ինքն որբարանն հանցէ
զնոսա արտաքս յինքենէ ։ Եւ յետ սակաւու (11) միոյ
մի ոմն ի զօրացն Իսմայելի, որ էր գլխաւորագոյն
նոցա, խնդրէր հաշտութիւն անձին իւրում չմեռանել
ի նոցունց ։ Եւ ել առ զօրսն Հայոց եւ ասէ «մեր
լուեալ է եթէ՝ ազգ Քրիստոնէից ողորմած է. իբրեւ
տեսանէ զոք խղճուս, գթայ եւ ողորմի. արդ՝ ողորմե-
ցարո՛ւք մեզ եւ տո՛ւք մեզ զանձինս մեր պարգեւ,
եւ զինչս մեր առէ՛ք յաւարի» ։ Պատասխանի ետ
զօրավարն Ամրատ «մեք՝ ասէ՝ ուսաք ի Տեառնէ
եթէ ողորմութիւն ողորմածաց արժա՛ն է առնել (12)
իսկ դուք ազգ անողորմ էք, եւ ո՛չ արժանի ողորմու-

թեան, եւ ո՛չ արասցուք ։ Իբրեւ լուաւ զայս Իսմայելացին» արդ՝ գոնեա անձին խմում ներեցէք չսպանանել. եւ զայլսն տաց ի ձեռս ձեր ։ Եւ յանձին կալան ոչ սպանցուք ։ Իսկ նորա մտեալ ի ներքս ասէ « ո՛չ ինչ օգուտ է մեալ մեզ աստէն, զի անողորմ տեսի զնոսա ի վերայ մեր ։ Այլ արդ՝ ելցո՛ւք առ նոսա. եթէ սպանանեն զմեզ՝ մեռցո՛ւք. քանզի զդրախտն խոստացաւ մեզ օրէնսդիրն Մահմետ. եւ եթէ կեցուցանեն զմեզ՝ կեցցո՛ւք » ։

Եւ քաջալերեալք այսու բանիւք՝ ելին առ հասարակ արտաքս, եւ նոյնժամայն արկան իբերան սրոյ ։ Իսկ զայն այր, որում խոստացան չսպանանել, կենդանւոյն յուղարկեցին ի խորս ծովուն ։ Եւ ինքեանք առեալ զկապուտ անկելոցն բաժանեցին ի մէջ ինքեանց, եւ սփռէին յիւրաքանչիւր տեղիս ։

Եւ եղեւ յետ այսորիկ իբրեւ լուաւ իշխանն Իսմայելի Աբդլ-մելիք զբեկումն զօրաց իւրոց, կոչէ առ ինքն զՄահմետ՝ զօրավարն զօրուն իւրոյ. եւ հրամայէ առնուլ ընդ իւր բազմութիւն զօրաց եւ ելանել ի վերայ աշխարհիս Հայոց սրով եւ գերութեամբ ։ Որոյ անդէն փաղփաղակի կազմեալ զզօրսն սաստկապէս՝ եւ խրոխտալով սպառնայր կատարել զհրամանս իշխանին իւրեանց ։ Իբրեւ լուան նախարարք Հայոց աշխարհիս զհէնն որ գայր զօրացեալ ի վերայ. հանդերձեցին զԿաթողիկոսն Հայոց զՍահակ եւ

զումանս յեպիսկոպոսաց աշխարհիս ընդ նմա՝ երթալ ընդդէմ զօրուն Իսմայելի եւ խօսիլ ընդ զօրավարին նորա բանիւք խաղաղութեան եւ նուաճել զինքեանս ընդ լծով ծառայութեան նոցա ։ Եւ իբրեւ յուղարկեցաւ յաշխարհէս, ողջունէր զամենեսեան սիրական համբուրիւ աջոյն. օրհնէր զհօտն որ ինքեան հաւատացեալ հանդերձ հովուակցօք, եւ յանձն առնէր շնորհացն Տեառն ։ Եւ իբրեւ զանց արարեալ զբազում օթեւանօք եւ հասանէր ի քաղաքն Խառան. եւ անդէն եհաս նմա ախտ հիւանդութեան ։ Եւ մինչչեւ էր հասեալ Մահմետ զօրավարն ի Խառան, մերձեցաւ վախճան նորա, եւ գրէ զվերջինս բանից իւրոց յանդարձի առ զօրավարն Իսմայելի ։ Եա՝ ասէ՝ առաքեցայ ընդ առաջ քո յազգէն իմ խօսիլ զխորհուրդս իմ առաջի քո, զոր միաբանեալ նախարարք եւ ռամիկք Հայոց խնդրեն իքէն. այլ որ կենացն է Տնտեսարանապետ՝ ստիպով յափշտակեաց զիս առինքն. եւ ո՛չ ժամանեցի հանդիպիլ քեզ եւ խօսիլ ընդ քեզ ։ Այլ արդ՝ երդմնեցուցանեմ զքեզ ի կենդանին Աստուած, եւ դաշինս դնեմ քեզ զուխտն Աստուծոյ որ առ Իսմայէլ՝ հայրն ձեր. որպէս խոստացաւ տալ նմա զտիեզերս ի ծառայութիւն եւ ի հնազանդութիւն, արասցե՛ս խաղաղութիւն ընդ ժողովրդեան իմում, եւ ծառայեսցեն քեզ հարկատրութեամբ. արգելցե՛ս զսուր քո յարենէ եւ զձեռն քո յաւարառութենէ.

եւ հնազանդեցին քեզ յամենայն սրտէ իւրեանց. բայց վասն հաւատոյս մեր՝ զի իշխանութիւնլիցի մեզ պահել յոր հաւատացաքն եւ խոստովանեցաք. եւ որք ի ձեռաց այտի մի՛ խոշտանգեսցէ զմեզ դառնալ ի հաւատոյ մերոյ ։ Արդ՝ եթէ արասցես զհայցուածս իմ՝ յաջողեսցէ՛ Տէր զիշխանութիւնդ քո եւ կատա-րեսցի՛ն խորհուրդք կամաց քոց. եւ Տէր հնազան-դեսցուսցէ զամենեսին ընդ ձեռամբ քո ։ Ապա եթէ ոչ կամիցիս լսել բանից իմոց, եւ խոտորնակ իմասցիս յանձնել ի վերայ աշխարհին իմ, Տէր ցրուեսցէ՛ զխոր-հուրդ քո եւ մի՛ հաստատեսցին գնացք ոտից քոց. եւ դարձուսցէ՛ զսիրտ զօրաց քոց չառնել զկամս քո. եւ յարուսցէ՛ յամենայն կողմանց նեղիչս անձին քո. եւ մի՛ կացցէ իշխանութիւնդ քո հաստատուն ։ Արդ՝ մի՛ անտես առներ զհայցուածս իմ, եւ եկեսցե՛ն ի վերայ քո օրհնութիւնք իմ ։

Եւ իբրեւ եհաս Մահմետն ի Խասան՝ պատմեցին նմա զկաթողիկոսէն Հնդոց, եւ մատուցին առաջի նորա զգիրն ։ Իբրեւ ընթերցաւ զգիրն՝ եհարց զվախ-ճանէ նորա. եւ պատմեցին նմա եթէ՝ ոչ եւս է եղեալ ի գերեզման, զի առ ժամայն էր վախճանեալ ։ Իբրեւ լուաւ՝ վաղվաղակի յարեաւ եւ չոգաւ ի տեղին. կացեալ մերձ առ մարմնոյ ննջեցելոյն. ետ նմա ողջոյն ըստ սովորութեան իւրեանց եւ, որպէս լուաք ի ճշմարտախօս արանց, երկրորդէր զնոյն բանս եւ

երրորդէր , Եւ ապա բուռն հարեալ զձեռանէ նորա՝ իբրեւ ընդ կենդանւոյ ումեք խօսէր ասելով « Ծանեայ զխմաստութիւնդ քո ի մատենէն զոր ընթերցայ, զի ըստ օրինի քաջ հովուին ի վերայ քոյին հօտիդ հոգացեալ, փութացար գալ ընդ առաջ խորոխտացեալ սրոյ իմոյ ։ Հաւանեցայ արգելուլ զսուր իմ յաբանոց անմեղաց ։ Այլ արդ՝ արարից եւ կատարեցից զամենայն զոր միանգամայն հայցեսցես յինէն. եւ բարեպաշտութեանդ քո օրհնութիւն հանգիցէ ի վերայ իմ ։ Եւ եթէ սխալեցից ես բան մի յամենայն բանից քոց, եկեսցեն ի վերայ իմ ամենայն նզովքն զոր ընթերցայ ի մատենին քում (13) » ։ Եւ զայս ասացեալ՝ գնայր ի տեղի իջեւանի իւրոյ ։

Իսկ որք ընդ Կաթողիկոսին Սահակայ երթեալ էին յաշխարհէս Հայոց, առեալ զմարմինն երանեալ Հայրապետին փոխէին ի հանգիստ եղեալ խտապանի մատուորապէս ։ Եւ ինքեանք առնուին ի զօրավարէն Իսմայելի բան երդման ի ձեռն գրոյ, եւ դարձան յաշխարհն Հայոց ։ Եւ իբրեւ տեսին բնակիչք աշխարհիս զբան երդմանն եւ խոստման գրոյն վստահ եղեն ի նա , եւ ծառայեցին յանձնէ Իսմայելացւոյն ի ծառայութիւն սակի ։

Իսկ Մահմետ զօրավարն երկրորդ անգամ ելեալ յաշխարհս Հայոց զօրու ծանու յութուտասաներորդ ամի Աբդլ-Մելիք իշխանի. եւ զամս երիս հանդար-

*տեալ դադարէր․ եւ ոչ ինչ չարեաց յուշ լինէր վասն անցիցն որ էաց ընդ զօրն Տաճկաց ի Վարդանակերտն աւանի․ այլ հաստատուն պահէր զերդումն զրոյն զոր տուեալ էր իւր․ եւ միայն ընդ ակամբ հայէր նախարարացն Հայոց ։*



# ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ



## ՄԱՀ ԱԲԴԼ-ՄԵԼԻՔԻ. ՅԱՋՈՐԴՈՒԹԻՒՆ ՎԼԹԻ (1) ՈՐԴՒՈՅ ՆՈՐԱ. ԵՂԵՌՆԱԿԱՆ ԿԱՏԱՐԱԾ ՆԱԽԱՐԱՐԱՑՆ ՀԱՅՈՑ ։

Եւ Աբդլ-Մելքի կալեալ զիշխանութիւնն այսպիսի վարուք՝ վախճանէր ։ Եւ յետ նորա փոխանորդէ որդի նորին Վլիթ՝ իշխանն Իսմայելի ամս տասն եւ ամիս ութ, եւ վախճանի ։ Եւ այս վարք նորա ։ Սա յառաջնում ամի իշխանութեան իւրոյ խորհեցաւ բառնալ յաշխարհէս Հայոց զտոհմ նախարարաց նոցին հեծելովք վասն քինուն (2) զոր ունէին առ Սմբատայ կիւրապաղատի. զի ասէր եթէ միշտ խոչ եւ գայթակղութիւն լինելոցեն իշխանութեանս մերոյ ։ Եւ մինչդեռ զայս չարութիւն երկնէին ի սիրտս իւրեանց. անդէն վաղվաղակի Սմբատն ,

ըղձմէ ճառեցաք, գրէր առ արքայն Յունաց եւ խնդրէր զօր ի նմանէ յօգնականութիւն ։ Եւ հասանեալ կայսերն կատարէր զխնդիրն ։ Տայր բազում զօրս ի ձեռն զօրավարի միոյ, եւ առաքէր նմա ի թիկունս օգնականութեան ։ Եւ միաբանեալ Սմբատայ ընդ զօրավարին Յունաց՝ եկեալ հասանէին ի գաւառն Վանանդայ ի գիւղն որում Դրաշպետն կոչեն ։ Անդ հարկանէին զբանակս իւրեանց ։ Եւ իբրեւ լուաւ Մահմետ՝ իշխանն զօրուն Իսմայելի, ժողովեալ զզօրս իւր՝ մեծաւ պատրաստութեամբ եկն ընդդէմ նոցա ի մարտ պատերազմի ։ Եւ հասեալք առ վայր մի՝ կազմեցին գունդ առ գունդ, եւ ճակատ առ ճակատ, եւ խմբեցաւ պատերազմն ։ Անդ վաղվաղակի բարկութիւն ի Տեառնէ հասեալ ի վերայ նոցա. լքաւ սիրտ պատերազմողաց արանց Յունաց, ի փախուստ դարձեալ անկան յամրոց բանակին իւրեանց ։ Եւ զօրացեալ թշնամեացն՝ հարին զբազումս կոտորմամբ սրոյ, զորոց ասեն զթիւ անկելոցն աւելի քան զհինգ բիւր արանց սուսերամերկաց ։ Եւ զսակաւ մնացորդսն առնէր փախստական յաշխարհէս. եւ իւր ժողովեալ զզօրս բանակին՝ դառնայր ի քաղաքն Դուին (3)։ Իբրեւ զայս տեսանէր իշխանն Իսմայելի՝ եթէ առաջնորդ զօրուն Յունաց եղեն նախարարք Հայոց. դարձեալ զնոյն խորհուրդ խորամանկութեան համայէր Մահմետի կատարել ։

Եւ Մահկերտի (4) առեալ զհրամանն անիրաւ՝ հրամայէր Կասմայ (5) ուրումն, որ էր հրամանատար նորուն ի կողմանն Նախճուան քաղաքի, կոչել առ ինքն զնախարարս Հայոց նոյին հնծելովք իբրեւ պատճառանօք՝ եթէ անցուցանել ի համարու արքու-նի, եւ առնուլ հոգ եւ ռոճիկ։ Եւ նոքա ըստ օրինի պարզմտութեան իւրեանց հաւատարիմ համա-րեալ զնենգութիւն զաղտագողի որսողայն՝ վաղվա-ղակի անդր հասանէին։ Իբրեւ ժողովեցան անդր. հրամայեցին յերկուս բաժանել զնոսա. զոմանս հաւա-քեցին յեկեղեցին Նախճուանու, եւ զկէսն յաւանն ի Խրամ, արկանէին յեկեղեցի նորա կարգեալ ի վերայ պահապանս, եւ խորհէին թէ ո՛ րպէս կորուսցեն զնոսա։ Եւ միաբանեալ առ հասարակ ամենեքին՝ հանին արտաքս զաղատատոհմն յարգելանէն, եւ զորս ի սրբարանն արգելեալ էին՝ հրակէզ արարին եւ տոչորէին ի յարկս սատուածային խորանին։ Իսկ ըմբռնեալքն յայնպիսի դառնութիւն վտանգի իբրեւ տեսին թէ՝ ամենայն ուստեք զրկեալ էին յօգնականու-թենէ մարդկան, ապաւինէին առ բոլորեցունն Աստուած եւ զնա միայն կարդային յօգնականու-թիւն ասելով. «որ նեղելոց ապաւէնդ (ես), վտանգելոց օգնական, աշխատելոց անդորրիչ՝ հա՛ս յօգնականու-թիւն նեղելոցս եւ վտանգիս, որ պաշարեցին զմեզ, փրկեա՛ զմեզ ի դառն մահուանէս զոր ածին ի վերայ

մեր, զի ահա՛ սաստկապէս զօրացաւ ի վերայ մեր տապ բոցոյս եւ առաւել տօչորէ շրջապատեալ զմեօք եօթնպատիկ քան զբաբելոնեան բոցոյն բորբոքումն ։ Այլ որպէս երից մանկանցն առաքեցեր յօգնականութիւն զպահպանօղ զօրութիւն հրեշտակին, եւ զմեզ մի՛ անտես առներ ի քոյ գթութեանցդ, զի եւ մեք ծառայք քոյ եմք. Թէպէտեւ բազում անգամ մեղուցեալ բարկացուցաք զմարդասիրութիւնդ քոյ քաղցր. այլ ի բարկութեան քում զողորմութիւն յիշեսցե՛ս առ ծառայս քոյ, քանզի ահա՛ սրբարան քոյ եւ տեղի փառաց անուան քոյ եղեւ մեզ տեղի գերեզմանի ։ Վասն որոյ եւ մեք գոհանալով զսուրբ եւ զահեղ անուանէդ քումմէ՝ ի ձեռս քո յանձնեսցո՛ւք զոգի եւ զշունչս մեր եւ զմարմին « Եւ զայս ասացեալ միաբան ամենեքեան զօրհներգութիւն ի բարձունս վերառաքելով փոխեցան յաշխարհէս » ։ Իսկ զնախարար ազատացն եդին ի կապանս բանտի, յանհանդուրժելի տանջանսն խոշտանգէին, եւ պահանջէին ի նոցանէ բազում ոսկի եւ կշիռ արծաթոյ եւ երդմամբ դաշինս արարեալ հաւատարմացուցանէին զերդումն ստութեան ։ Եւ նոքա առ վտանգի նեղութեանն՝ զբազում մթերս գանձուցն իւրեանց, զորս ի պահեստի եդեալէին յերեսաց նեղչացն ի ծովու եւ եթէ ի ցամաքի, տային ի ձեռս թշնամեացն զի թերեւս ապրեցուսցեն զանձինս իւրեանց ։

Եւ իբրեւ ունայնացեալք ի գանձուցն եղեն՝ ձեռնամուխ եղեալ անօրինայն բառնային զկենդանութիւն նոցա, եւ զփայտէ կախեալ դատապարտէին զնոսա ։ Անդ ըմբռնեցան Սմբատ՝ որդի Աշոտոյ ի Բագրատունի տոհմէ, եւ Գրիգոր (6) եւ Կորիւն ի տոհմէ Արծրունեաց, եւ Վարազ-Շապուհ եւ եղբայր իւր ի տոհմէ Ամատունեաց, եւ բազում այլք ի նախարարաց Հայոց, զորս ոչ բաւեմ մի ըստ միոջէ պատմել։ Զնոսա զամենեսեան բարձեալ ի կենաց՝ անժառանգ առնէին զաշխարհս ի նախարարաց ։

Յայնմ ժամանակի Թափուր եղեալ աշխարհս Հայոց ի տոհմէ նախարարաց, մատնէին որպէս ոչխարս ի մէջ գայլոց ։ Եւ Թշնամեացն անօրինակ չարեօք (7) յարձակեալ ի վերայ՝ յանհնարին աղէտս վտանգի պահէին զմնացեալս աշխարհիս Հայոց. որոց տառապեալ յանհնարին նեղութեանցն՝ զհառաչանս եւ զաղաղակ հեծութեան բարձրացուցանէին յերկինս ։ Իսկ Սմբատ կիւրապաղատն եւ նախարարքն որ ընդ նմա, գնացեալ մերձեցան յաշխարհէս. եւ անցեալ խնդրեցին ի Թագաւորէն Յունաց քաղաք բնակութեան եւ դաստարա խաշանց իւրեանց. եւ նա տայր նոցա զքաղաքն որ անուանեալ կոչի Փոյթ ի կողմանս Եգեր աշխարհին. եւ բնակեցան ի նմա ամս վեց ։

Իսկ Մահմետն կատարեալ զայս ամենայն չարիս,

թարձրացեալ բողոք աշխարհիս հասանէր յականձս իշխանին Իսմայելի, որում անունն էր Վլիթ ։ Եւ վաղվաղակի առաքէ հրովարտակ եւ կոչէ զնա առ ինքն. եւ փոխանակ նորա առաքէ զԱբդլ-Ազիզ ոմն, որ էր խօթ լեզուօք. այլ խորագէտ, լի երկրաւոր իմաստութեամբ, առասպելախօս եւ առակարկու ։ Եւ իբրեւ հաստատեցաւ յիշխանութեանն, գրէր հրովարտակ առ Նախարարս Հայոց, եւ հաւանեցուցանէր զնոսա դառնալ յիւրեանցական աշխարհս. եւ տայր նոցա գիր երդմամբ չափ ըստ սովորութեան իւրեանց ։ Եւ իբրեւ վստահ եղեալ յուխտադրութիւն նորա, առին զքաղաքն յորում բնակեալ էին, եւ զգանձս եկեղեցեացն յափշտակեալ յաւարի՝ դարձան ի Հայս հատուածեալք ի կայսերէն Յունաց ։ Եւ կայսերն լուեալ՝ սորջացաւ ընդ եղեալ ապիրատութիւնն. եւ կոչեալ զառաջնորդս եկեղեցեաց զՄետրապօլիտն եւ զԱրքեպիսկոպոսունս. եւ հրամայէր նոցա նզովս գրել ի մատենի, եւ ի կատարման տօնին Զատկաց հրամայէր ընթեռնուլ ի վերայ գործողացն ապիրատութեանն. քանզի ի տօնին յայնմիկ գործեցին զգործ անօրէնութեանն ։ Եւ ի նոյն տօնի կարգաւորեցին ամի ամի զնոյն նզովս ընթեռնուլ մինչեւ ցայսօր. որ եւ տիրեաց իսկ ի վերայ նոցա, եւ եղեւ պատճառ կորստեան նոցա ։

Իսկ Աբդլ-Ազիզն տիրեալ աշխարհիս Հայոց,

խաղաղայոյց զամենայն յարձակմունս անիրաւութեան յաշխարհէս. եւ գխորոխտացեալ անզգամութիւն որդւոցն Իսմայելի սաստիկ կշտամբութեամբ ցածուցանէր ։ Ճինէր վերստին զքաղաքն հզօրագոյն եւ ընդարձականիստ մեծութեամբ քան զառաջինն , եւ ամրացուցանէր դրամբք եւ դռնափակօք , անցուցանէր շուրջ զպարսպովն պարկէնս փոսից լցեալ ջուր յապաստան ամրոցին. քանզի ասէր գիւրմէ Աբղ-Ազիզ (8) «յառաջնում աւերածին Դունայ եթէ՝ ի ձեռն իմ եղեւ կործանումն քաղաքին, եւ ես կանգնեցից զսա. զի էի ես՝ ասէ՝ մանուկ երկոտասանամեայ եւ ունէի սփածանելիս կարմիր ։ Եւ յորժամ զօրն Տաճկաց մարտնչէր ընդ քաղաքիս, մտի ես ընդ խողովակ մի եւ ելի ի պարիսպն, եւ ի բարբառ իմ ի ձայն ուժգին աղաղակեցի առ զօրն մեր, որք անդէն վաղվաղակի թօթափեցան պայիկքն նախամարտիկք , եւ որք պահէին զպարիսպն՝ ի փախուստ դարձան. եւ յաղթութիւնն Իսմայելի զօրացաւ. եւ կործանեցաք զքաղաքս » ։ Զայս բերանով իւրով ասէր պատմել զինքենէ ։

Զայնու ժամանակաւ դարձեալ գրգռէր սիրտ զօրավարին Մահմետի ի վերայ աշխարհին Ճենաց. եւ խնդրէր յիշխանէն Իսմայելի զօր բազում, եւ խոստանայր նմա ածել զարքայն Ճենաց ի հնազանդութիւն ծառայութեան ։ Իսկ նորա գումարեալ

զօր բազում եւ տայ ի ձեռն նորա իբրեւ արս 200,000 ։ Եւ խաղացեալ Մահմետ ի կողմանցն Դամասկեայ բազմութեամբ զօրացն ի կողմանս Արեւելից՝ անցանէր ընդ Ասորեստան, ընդ աշխարհն Պարսից եւ ընդ Խորասան. եւ երթեալ հասանէր ի մասն ինչ Ճենաց աշխարհին. եւ բանակէր առ եզր գետոյն հզօրագունի որ Բոտիսն կոչի ։ Գրէ հրովարտակ առ արքայն Ճենաց « ընդէ՞ր ասէ՝ դու միայն ընդվզեալ՝ ոչ մտանես ընդ հնազանդութեամբ իշխանին մերոյ, զի ամենայն ազգք սարսեցին ի մէնջ ։ Արդ՝ դու յո՞վ ապաստանեալ չհնազանդիս մեզ ։ Մի՞ արդեօք իբրեւ զաղջկունսդ քո համարիս զմեզ յորոց միջի փերեւետեալ ճողխանաս ։ Այլ արդ՝ եթէ ոչ մտցես ընդ լծով ծառայութեան մերոյ, գիտասջի՛ր զի անապատ արարից զերկիրդ քո ի բնակչաց, եւ փախճան արարից արքայութեանդ քո . Բայց մի՛ յանհոգս լեալ յապաղեսցես զպատասխանի գրոյս. այլ արագ դարձուսցես այսրէն » ։ Իբրեւ ընթերցաւ զգիրն արքայն Ճենաց, որ կոչէր Ճենբակուր, կոչէր առ ինքն զամենայն փշտիպանսն համահարզս իւր, եւ խորհէր թէ զի՞նչ տացէ բանիցն պատասխանի ։ Եւ խորհեալ առ միմեանս՝ գրեն բանիցն պատասխանի եւ ասեն « մի՞ արդեօք հզօրագոյն դու քան զամենայն թագաւորս, որ ի սկզբանցն եւ այսր տիրեցին իվերայ աշխարհի՝ Բաբելացւոց թագաւորն որ տիեզերաց

տիրեաց, եւ Մակեդոնացւոցն եւ Պարսից ։ Ընդ՞էր նոքա ոչ կարացին տիրել ի վերայ աշխարհիս մեր. այլ գիտասջի՛ր զի լիրբ քան զամենայն շուն իցես դու, եւ խոտոն պատգամաւորութեան վարանեալ. եւ այդորիկ աղագաւ չար ցանկութիւն քոյ իշխամբաւ գերեցիկ կուսից իմոց խնդրս արկեալ հարկեցոյց զքեզ դնել զանձն քոյ եւ զանձինս զօրացդ եկելոց ընդ քեզ իբրեւ թէ ոչ գոյին գերեզմանք ի Դամասկոս անձանց ձերոց ։ Այլ արդ՝ գիտասջի՛ր զի աշխարհս մեր ոչ է մտեալ ընդ հարկաւ ուրուք. եւ ո՛չ եւս յանձին կալայց, բայց թէ ընծայ յինէն խնդրեսցես՝ ըստ օրինի թագաւորաց տաց քեզ. եւ յարուցեալ երթիցես խաղաղութեամբ ի տեղի քոյ » ։

Իսկ Մահմետի դարձեալ յղեալ առ Ծենեբակուր « տո՛ւր ինձ ասէ աղջկունս 30,000. եւ գնասցիս ի քէն խաղաղութեամբ. ապա թէ ոչ՝ պատերազմաւ ելից ընդդէմ քո » ։ Եւ յանձին կալաւ արքայն Ծենաց պատգամին յղելոյ, եւ առաքեաց առ Մահմետ եւ ասէ » Մնա՛ այդրէն ի բանակի քում մինչեւ կատարեցից զխնդրուածս քոյ ։ Եւ նոյնժամայն հրաման ետ զօրաց իւրոց կազմել սայլս վաչեօք դիպակօք եւ զընտիրս հեծելոց կուռ սպառազինութեամբ բառնալ ի վերայ սայլիցն փոխանակ աղջկանցն զորս խնդրեաց, որպէս զի կարասցէ զնոսա որսալ յորոգայթ իւր ։ Եւ եկեալ յեզր գետոյն՝ բանակէին ընդդէմ նոցա ։ Եւ էին

իվերայ սայլից աւելի քան զքառասուն հազար արանց հեծելոց ։ Եւ ինքն Ճենբակուր սակաւ արամբք բանակէր բացագոյն ի նոցունց իբրեւ վտաւանօք ինչ սակաւ, եւ առաքէր առ Մահմետ զօրավարն» արարի՝ (10) ասէ՝ զոր հայցեցերն յինէն, զայս 30,000 աղջիկս յամենայն իշխանութեան իմում ընտրեցի պատուաւորաց քոց ։ Արդ՝ առեալ զպատուաւորս քո զօրուդ ըստ թուոյ աղջկանցս իմոց՝ ածից յայսկոյս գետոյս. եւ տա՛ց զաղջկունս իմ ըստ թուոյ վիճակաւ ումումեք եւ հասցէ. զուցէ մարտ պատերազմի լինիցի ի մէջ զօրաց քոց. Եւ ետ տանել նաւս յայնկոյս գետոյն, զի միանգամայն անցցեն առնա ։ Իսկ նոցա անխորհուրդ միտօք ընտրեալ զպատուական զօրացն՝ անցին յայնկոյս գետոյն իբրեւ արք 30,000 ։ Եւ իբրեւ վախճանեցին զանցանելն՝ հրաման ետ արքայն Ճենաց յարձակիլ ի վերայ զօրուն Իսմայելի ։

Եւ իբրեւ բախեցին զմիմեանս մարտիւ պատերազմի, վաղվաղակի եղին եւ որք ընդ փախչիւքն թագուցեալ էին. եւ ի մէջ առեալ կոտորեցին խուր սուսերի մինչեւ ոչ մնաց ի նոցանէն ապրեալ եւ փախստական ։ Եւ հատին զլարս նաւուցն՝ զի մի ոք ապրեսցի, յորմէ ոչ ոք ապրեցաւ բայց միայն Մահմետան սակաւ արամբք հեծեալ յերիվարան՝ անկան իգետն ապաստանեալք ի քաջութիւն երիվարացն. Եւ այնպէս կորագլուխ ամօթով դարձեալ յարքայէն

Ճենաց՝ զնացին յերկիր բնակութեան իւրեանց ։ Եւ ոչ եւս յաւել ելանել ի պատերազմ ի վերայ աշխարհին Ճենաց ։ Որ ամս տասն եւ ամիս ութ կեցեալ վախճանի ։

Յետ նորա փոխանորդէ զիշխանութիւնն Սուլէյման ամս երկու եւ ամիս ութ՝ եւ վախճանի ։ Եւ այս է վարք նորա ։ Սա յերկրորդ ամի իշխանութեան իւրոյ գումարէր զօրս բազումս, եւ տայր ի ձեռս զօրավարին Մսլիմայ. եւ առաքէր ի դրունս Կասպից (11) ։ Որոց եկեալ եւ մարտ եդեալ ընդ զօրս Հոնաց որ ի Դարբանդ քաղաքի, հարին զնոսա եւ հալածեցին. եւ քանդեալ աւերեցին զդղեակապարիսպ ամրոցին ։ Եւ մինչդեռ քանդէին զպարիսպ ամրոցին՝ գտին վէմ մի մեծ ի հիմունս նորա, որ ունէր վերնագիր դրոշմեալ օրինակ զայս « Մարկիանոս՝ ինքնակալ կայսր շինեաց զքաղաք եւ զաշտարակս զայս բազում տաղանդօք յիւրոյ գանձուց. եւ ի յետին ժամանակս որդիքն Իսմայելի քանդեսցեն զսա եւ յիւրեանց գանձուց վերստին շինեսցեն » ։ Եւ իբրեւ գտին զդրոշմ գրոյն զոր ունէր քարն. դադարեցին ի քակելոյ զպարիսպն. եւ կացուցեալ գործավարս ի վերայ՝ վերստին շինեցին զկործանեալ պարիսպն ։

Եւ ինքն Մսլիմ առեալ զբազմութիւն զօրացն՝ անցանէր ընդ պահակն Ճորայ (12), ասպատակ սփռեալ յաշխարհն Հոնաց. եւ երթեալ բանակէր մերձ

առ Թորգու (13) քաղաքի Հոնաց ։ Իսկ բնակիչք աշխարհին իբրեւ տեսին զչէնն, որ զարթուցեալ հատանէր ի վերայ նոցա . վաղվաղակի ազդ առնէին արքային Խազրաց որ անուանեալ կոչէր Խաքան ։ Իսկ նորա առեալ ընդ իւր զբազմութիւն զօրացն եւ զամենայն յաղթանդամ հսկայազունսն իւր , որոց արիութիւն զօրութեան հռչակեալ էր առ ամենայն ազգս. եւ եկեալ բանակէր մերձ առ նմա ։ Եւ իբրազում աւուրս մարտ եղեալ մարտնչէին ընդ միմեանս ոչ զունդ առ զունդ, այլ ըմբշամարտ մարտիւ ։ Եւ յապաղէր Խաքանն չխառնամխել պատերազմն վասն զալստեան Ալփ Թարխանին, զոր էր կոչեալ ի թիկունս օգնականութեան ։ Իբրեւ ետես Մսլիմն (14) զանհուն զօրացն բազմութիւն՝ վարանէր յանձն իւր , եւ խորհէր եթէ զիա՛րդ մարթասցէ հնարս գտանել, զի կարասցէ զերծանիլ ի նոցանէ ։ Եւ հրամայեաց զօրացն լուցանել հուր սաստիկ ի բանակին անդէն. եւ թողեալ զաղխս բանակին, զհարճս եւ զծառայս եւ զազախնեայս եւ զայլ խառնիճաղանճն, ճանապարհ կալեալ ընդ լեառն Կովկաս կոտորէր զանտառն՝ եւ ճանապարհ արարեալ զերծանէր մազապուր ի ձեռաց թշնամեացն ։ Եւ այնպէս կորագլուխ դառնայր լի ամօթով յաշխարհէն Հոնաց ։ Եւ կատարեալ զայս ամենայն՝ վախճանեցաւ Սուլէյման (15) ։

Ծենայ՝ գնացին յերկիր բնակութեան իւրեանց ։ Եւ ոչ եւս յաւել ելանել ի պատերազմ ի վերայ աշխարհին Ծենայ ։ Որ ամս տասն եւ ամիս ութ կեցեալ՝ վախճանի ։

Յետ նորա փոխանորդէ զիշխանութիւնն Սուլէյման ամս երկու եւ ամիս ութ՝ եւ վախճանի ։ Եւ այս է վարք նորա ։ Սա յերկրորդ ամի իշխանութեան իւրոյ գումարէր զօրս բազումս, եւ տայր ի ձեռս զօրավարին Մսլիմայ. եւ առաքէր ի դրունս Կասպից (11) ։ Որոց եկեալ եւ մարտ եղեալ ընդ զօրս Հոնաց որ ի Դարբանդ քաղաքի, հարին զնոսա եւ հալածեցին. եւ քանդեալ աւերեցին զդղեակապարիսպ ամրոցին ։ Եւ մինչդեռ քանդէին զպարիսպ ամրոցին՝ գտին վէմ մի մեծ ի հիմունս նորա, որ ունէր վերնագիր դրոշմեալ օրինակ զայս « Մարկիանոս՝ ինքնակալ կայսր շինեաց զքաղաք եւ զաշտարակս զայս բազում տաղանդօք յիւրոյ գանձուց. եւ ի յետին ժամանակս որդիքն Իսմայելի քանդեսցեն զսա եւ յիւրեանց գանձուց վերստին շինեսցեն » ։ Եւ իբրեւ գտին զդրոշմ գրոյն զոր ունէր քարն. դադարեցին ի քակելոյ զպարիսպն. եւ կացուցեալ գործավարս ի վերայ՝ վերստին շինեցին զկործանեալ պարիսպն ։

Եւ ինքն Մսլիմ առեալ զբազմութիւն զօրացն՝ անցանէր ընդ պահակն Ճորայ (12), ասպատակ սփռեալ յաշխարհն Հոնաց. եւ երթեալ բանակէր մերձ

առ Թարգու (13) քաղաքի Հոնաց ։ Իսկ բնակիչք աշխարհին իբրեւ տեսին զՀէնն, որ զարթուցեալ համանէր ի վերայ նոցա . վաղվաղակի ազդ առնէին արքային Խազրաց որ անուանեալ կոչէր Խաքան ։ Իսկ նորա առեալ ընդ իւր զբազմութիւն զօրացն եւ զամենայն յաղթանդամ հսկայազունսն իւր , որոց արիութիւն զօրութեան հռչակեալ էր առ ամենայն ազգս. եւ եկեալ բանակէր մերձ առ նոսա ։ Եւ ի բազում աւուրս մարտ եղեալ մարտնչէին ընդ միմեանս ոչ գունդ առ գունդ, այլ ըմբշամարտ մարտիւ ։ Եւ յապաղէր Խաքանն չխառնամխել պատերազմն վասն գալստեան Ալփ Թարխանին , զոր էր կոչեալ ի թիկունս օգնականութեան ։ Իբրեւ ետես Մսլիմն (14) զանհուն զօրացն բազմութիւն՝ վարանէր յանձն իւր , եւ խորհէր եթէ զիա՛րդ մարթասցէ հնարս գտանել , զի կարասցէ զերծանիլ ի նոցանէ ։ Եւ հրամայեաց զօրացն լուցանել հուր սաստիկ ի բանակին անդէն. եւ թողեալ զաղխս բանակին, զհարճս եւ զծառայս եւ զաղախնեայս եւ զայլ խառնիճաղանճն, ճանապարհ կալեալ ընդ լեառն Կովկաս կտրէր զանտառն՝ եւ ճանապարհ արարեալ զերծանէր մազապուր ի ձեռաց թշնամեացն ։ Եւ այնպէս կորագլուխ դառնայր լի ամօթով յաշխարհէն Հոնաց ։ Եւ կատարեալ զայս ամենայն՝ վախճանեցաւ Սուլէյման (15) ։

# ԳԼՈՒԽ ԵՕԹՆԵՐՈՐԴ



## ԱՄԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ ՕՄԱՐԱՅ Բ. ԱԶՆԻՒ ԲԱՐՔ ՆՈՐԱ. ԳԵՐԵԱԼ ՀԱՅՔ ԴԱՐՁ ԱՌՆԵՆ ՑԻՒՐԵԱՆՑ ՀԱՅՐԵՆԻՍ. ԹՂԹԱԿՑՈՒԹԻՒՆ ՆՈՐԱ ԸՆԴ ԼԵՒՈՆԻ ԿԱՅՍԵՐ ԲԻՒԶԱՆԴԻՈՑ։

*Եւ յետ նորա փոխանորդէ զիշխանութիւնն Օմար (1) ամս երկուս եւ ամիսս հինգ, եւ վախճանի։ Զսա ասեն ազնուականագոյն քան զամենայն արս ազգատոհմի իւրոյ։ Սա արար դարձ գերութեանն զոր գերեաց Մահմետ յաշխարհէս Հայոց յետ այրելոյն զնախարարս աշխարհիս. զի առ զբազում ամբոխս եւ գերեաց զարս եւ զկանայս։ Եւ իբրեւ հաստատեցաւ իշխանութիւնն Օմարայ՝ արձակեաց զբովանդակ գերեալսն յիւրաքանչիւր տեղիս. եւ խաղաղացոյց զաշխարհս որ ընդ իւրով իշխանութեամբ։ Այն*

Օմար գրէ թուղթ առ Լեւոն՝ կայսր Հոռոմոց յաղագս ուսանելոյ զզօրութիւն հաւատոյս մերոյ, յորում էին պէսպէս հարցմունք, զոր համառօտ ի Ներքոյ դրոշմեցից ։ « Անուամբն Աստուծոյ Օմար՝ իշխան հաւատացելոց ։ Առ Լեւոն կայսր Հոռոմոց (2) ։ Բազում անգամ կամեցայք (3) գիտել զձերոյ կարծեօք հաւատոյդ ուսումն. եւ յաւելաք ուսանիլ եթէ զինչ արդեօք խորհիս. եւ ո՛չ եղեւ մեզ հնար հասու լինել ։ Այլ արդ՝ առ ի՛նձ զատուգութիւնն, նախ՝ եթէ վասն է՞ր ասաց Յիսուս առ Աշակերտսն » մերկ եկիք եւ մերկ դառնայք ». կամ ընդէ՞ր ոչ ընկալաք զոր ասաց Յիսուս զինքենէ. այլ (կամեցար) քններ զգիրս Մարգարէից եւ զՄաղմոսացն (առի) գտանել ի նոցանէ վկայութիւնս վասն մարդանալոյն Յիսուսի. եւ երկուացար, եւ ի կարծիս անկար, եւ ոչ բաւական համարեցար զոր վկայեաց Յիսուս զանձնէ իւր. այլ հաւատացեր յայն զոր ասացին Մարգարէքն ։ Այլ Յիսուս արդա՛ր եւ արժանի էր հաւատարմութեան, եւ մօտ էր յԱստուած, եւ լաւագոյն գիտէր զինքն քան զգրեալսն զորս փոփոխեցին ազգք, զորս ոչ գիտէք, եւ այլայլեցին ։ Եւ կամ զի՞արդ արդարացուցանէք զգրեանն եւ զհետ երթայք նոցա որ ինչ նման թուի ձեզ ։ Դուք ասէք թէ Օրէնքն գրեցան բազում անգամ, եւ կորեան, որք ընթեռնուին զնոսա յորդւոցն Իսրայելի եւ գիտէին զնոսա. եւ Մնացին

ժամանակս ինչ որ չկայր ինչ առ Նոսա յայնմանէ եւ ո՛չ ինչ՝ մինչեւ գրեցին ոմանք իմարդկանէ յետ այնորիկ իւրեանց հանճարով, ազգ յետ ազգի, եւ ցեղ յետ ցեղի. եւ Նոքա մարմնեղէնք էին յորդւոյն Ադամայ, որք մոռանան եւ ի կարծիս ըմբռնին. զի մօտ է առ Նոսա Սատանայ եւ Նմանօղք Նորա թշնամութեամբք իւրեանց ։ Եւ կամ ընդէ՞ր ոչ գտանի յՕրէնսն Մովսիսի վասն Արքայութեանն, եւ Դժոխոյն, եւ Դատաստանին եւ Յարութեանն. այլ որք զԱւետարանն գրեցին՝ Նոքա պատմեցին Մատթէոս, Մարկոս, Ղուկաս, Յովհաննէս իւրեանց հանճարով ։ Եւ զՄխիթարիչն զորմէ ասաց յԱւետարանսն առաքել Քրիստոսի, զՄահմետէն մերմէ ասացին առաքել ։ Եւ կամ ընդէ՞ր զկնի Աշակերտացն Յիսուսի յեօթանասուն եւ երկու ցեղս բաժանեցան ազգք Քրիստոնէից ։ Եւ անզուգական զօրութեանն Աստուծոյ ընկեր եւ համեմատ եւ Նման Նմա առնէք՝ երիս Աստուածս խոստովանելով, եւ զամենայն Օրէնսն անձնիշխանաբար փոփոխել ջանայք զթլփատութիւնն իմկրտութիւն փոխելով, եւ զզոհսն ի հաղորդութիւն օրհնութեան հացի եւ բաժակի, եւ զկիւրակէն փոխանակ շաբաթու պատուեցիք ։ Եւ կամ զիա՞րդ էր հնար Աստուծոյ ի մէջ արեան եւ մարմնոյ եւ այսպէս աղտեղութեանց յարգանդի բնակիլ ։ Եւ կամ ընդէ՞ր զոսկերս Առաքելոցն եւ Մարգարէիցն

պատուէք. եւ կամ զնշան խաչին որ դատապարտութեան գործարան էր ըստ Օրինացն, կամ զպատկերս զոր պատուէք ։ Եւ զի Մարգարէն Եսայի վասն մեր Օրինադրին վկայէ ընկեր եւ համեմատ Յիսուսի. զի եւ ուղեկից նմա ետես Մարգարէն ի տեսլեանն հեծեալ մի իշոյ եւ հեծեալ մի ուղտու ։ Իսկ դուք ընդէ՞ր ոչ հաւատայք ։ Զայս ամենայն հասո՛ թնձ ի գիտութիւն զի կարասցիս գիտել զկարծիս ուսմանդ ձերոյ » ։ Զայս ամենայն եւ յոլովագոյն բան զայս ընդդիմաբանութիւնս գրէր Օմար՝ իշխանն Իսմայելի առ Թագաւորն Լեւոն, վասն որոյ հարկաւորի կայսրն Լեւոն գրել պատասխանի օրինակ զայս ։

« Փլաբիոն Լեւոն՝ կայսր հաւատացեալ ի Յիսուս Քրիստոս՝ ճշմարիտ Աստուած մեր եւ Թագաւոր ճանաչողաց զնա ։ Օմարայ Սառակինոսաց առաջնորդի ։ Ո՞րպիսի բան առաջի եդից ուղղագոյն եւ ճշմարտագոյն զառ ի քէն մեզ առաքելոյս ։ Եւ զի մանաւանդ ուսեալք յԱստուծոյ հեզութեամբ խրատել զընդդիմակայսն՝ թերեւս տացէ նոցա ժամանակ ապաշխարութեան ։ Այլեւ ոչ Թագաւորական օրէնք են խրատուցանող բանիւք որպէս քարամբք հարկանել զայնոսիկ որք լսել կամին զճշմարտութեանն զսքանչելի խորհուրդ ։ Բայց վասն զի սկիզբնն իսկ գրոյս զոնեա փոքրագոյն ինչ զկերպարան ճշմարտութեան ո՛չ ունէր. ապա հարկաւոր է զոչ ճշմարիտն ո՛չ

ասել թէ՝ արդա՛ր է ։ Քանզի ասացեր զբովն քոյ թէ բազում անգամ գրեցաք առ ձեզ զմերոյ Քրիստոնէից աստուածային խորհուրդ․ Եւ եթէ յաւելուք ուսանիլ զձերոյ կարծեօք հաւատոյդ ուսումնդ ։ Եւ չէ՛ր հնար լինել եւ ո՛չ միում յայսցանէ. քանզի եւ ոչ մի ինչ հարկ (4) յայսպիսիս զմեզ ածէր յիրս ։ Զի եւ ո՛չ ուսաք իսկ ի վարդապետէն մերմէ եւ ի տեառնէ օտար ուսումնականաց զայսպիսի միայնակ աստուածգիտութիւն առաջի ընկենուլ ի ծաղր կատակաց , եւ մանաւանդ այնոցիկ որ չէնն տեղեակ Մարգարէից կանխատեսութեանն եւ Առաքելոյն քարոզութեան. զի զայս եւ այլոց պատուիրել սովոր եմք ։

Այո՛ բազում անգամ գրեցաք առ քեզ՝ արդեօք թէեւ այլ համանիցէ գրել․ այլ վասն աշխարհական իրաց եւ ո՛չ վասն աստուածային իրողութեանց ։ Բայց մեք որք խրատեալք յԱստուածայնոց ձայնէն » տո՛ւք պատասխանի ամենայնի որ հարցանենն զձեզ « իսկ որ ոչ հարցանէ՝ առ նա ոչ պատասխանել ։ Այլ եւ ոչ զձերոց կարծեացդ զօրութիւն այժմիկ նորոգ կամիմք ուսանիլ. այլ առ ի յԱստուծոյ եւ վասն այսորիկ խրատեալք » զամենայն ինչ քննեցէ՛ք. իսկ զբարին ընկալարո՛ւք » Արդ՝ ունիմք մեք պատմութիւնս գրով զերանելեաց եպիսկոպոսացն մերոց որք էին առ ժամանակօքն այնոքիւք, առ որով Մահ-

մեռան այն Օրէնսդիր ձեր լեալ է ։ Վասն այսորիկ եւ ոչ յաղագս որոյ աղէտք էին աշխատ զքեզ առնել. բայց զի մի կարծիցես զմեզ ամաչեցեալս վասն այսպիսույ սքանչելի աստուածգիտութեանս, լո՛ւր՝ ապա եթէ ախորժիցես եւ լուիցես ինձ՝ զբարութիւնս երկրի կերիցես որպէս ասաց Եսայիաս ։

Ցոյժ դժուարին է ո՞վ այր դու՝ զամենեւին զատուած ի բաց ընկենուլ յորժամ հակառակողն զհակառակեղն համապատաղ խորհիցի։ Այսպիսի ինչ է զոր ասեմս, եթէ երկուք ոմանք առ հուր ինչ մերձեցեալ կային, մին հուր զնա ասէր, որպէս եւ էրն իսկ, եւ միւսն հակառա-կելով՝ աղբիւր ջուրց զնոյն ասէր. յայտնապէս ահա երեւէր ստութիւն հակառակասիրին ։ Արդ՝ ասա ցեր՝ Տեառն մերոյ ասել յԱւետարանն «մերկ եկիք եւ մերկ դառնայք» ։ Եւ ո՛չ ուրեք յԱւետարանսն գտանեմք Տեառն մերոյ ասացեալ զայս, թէպէտեւ միշտ մեզ հրամայէ առնել զխոկումն մահու. այլ այս բան Յոբայ է, քանզի հասեալ (5) ի վերայ սատանայա-կան փորձութեանցն՝ ասաց զայս արդարն «մերկ ելի յորովայնէ մօր իմոյ, եւ մերկանդամ դառնամ՝ անդրէն ։ Տէր ե՛տ, եւ Տէր էա՛ռ. եղիցի անուն Տեառն օրհնեալ» ։ Բայց այսպէս մի զմիով սովորեցայք արկանել, հատակոտորել զվկայութիւնս գրոց սրբոց, զորս ոչ դուք ընթերցայք եւ ոչ ընթեռնուք. այլ աստուածավաճառք զնոյն ասել հաւատավաճառքդ

որք առ ձեզդ զհաճոյսն ձեր որսալով աստուածայնոց գրոց բանիւ ասելով զինչ եւ պէտք իւրեանց զօղանջեն (6) ։ Բայց թէպէտ հպարտացեալ ես բռնակալութեամբդ. սակայն լո՛ւր զպատասխանիս ։ Ասացեր զտանել մեզ ի Սաղմոսս Դաւթի եւ ի գիրս Մարգարէիցն վկայութիւնս վասն Տեառն մերոյ ։ Ոչ այժմ ինչ յուզեալ գտաք զայսպիսի աստուածս Հոգւոյն սրբոյ զորս ի ձեռս Մարգարէիցն խօսեցաւ. այլ Աստուծոյ շնորհօք եւ կամօք յորմէ (7) (հետէ) սկսաւ քարոզութիւնն Քրիստոնէից, նովիմբ եւ կատարեցաւ, հիմնեցեալ աճեաց եւ աճեսցէ նորին Արարչի եւ Աստուծոյ զօրութեամբ ։

Գրեցեր թէ «բաւական համարեցար, եւ հաւատացեր յայնս, եւ թողեր զայս զոր վկայեաց Յիսուս ի վերայ անձին իւրոյ, եւ երկուացար, եւ ի կարծիս անկար» ։ Երանի՜ թէ հաւատայիր որպէս ասեսդ Աւետարանին հաստատուն եւ անսխալ պատմագրացն քան ամենայնի, թէպէտեւ ոչ հակառակ միմեանց զհինն եւ զնորս գիտեմք զի ո՛չ իսկ հնար էր միոյ բարութեան աղբերն բղխել չար եւ բարի, ճշմարտութիւն եւ սուտութիւն ։ Այլ յաղագս դիւրընկալ առնելոյ անօրէն ազգին Հրէից զմարմնով գալուստ Բանին իւրոյ առակօք եւ օրինակօք եւ յայտնագոյն պատուիրանօք ի ձեռն Մարգարէիցն զգուշացուցանէր զազգն զի մի՛ անհաւանք ըստ սովո֊

րութեան իւրեանց գալստեանն Քրիստոսի լինիցին ։ Ըստ նոյին վկայեաց վասն ինքեան Տէրն յԱւետարանսն, եւ ոչ օտար յայնցանէ զորս ինքն անմարմնաբար ի Մարգարէիցն խօսեցաւ բերանոյ, եւ զորս յետ ժամանակաց իմարմնանալն յայտնագոյնս խօսեցաւ ։

Եւ զայնոսիկ Աստուծոյ շնորհիւն ի սմին թղթի յիւրաքանչիւրսն ցուցցուք տեղիս՝ զբարձրագոյնսն՝ առաւել քան զմարդոյ, եւ զխոնարհագոյնսն իբրեւ՝ զմարդոյ խոստովանեալ ։ Երկրորդ՝ գրեցեր եթէ «արդարեւ Յիսուս արժանի էր հաւատարմութեան, եւ մօտ էր յԱստուած եւ լաւագոյն գիտէր զինքն քան զգրեալսն, զոր փոփոխեցին ազգք զորս ոչ գիտէր, որ այլայլեցին ի նոցանէ եւ փոխեցին» Պատասխանի ․ Ճշմարտութիւնն ոչ գիտէ զէն չէ ասել, եւ ոչ զչէն՝ է ․ իսկ ստութիւն զամենայնէ (8) դիւրեաւ բուռն հարկանէ․ զի կարող է ոչ միայն զերեւելի տարածս ուրանալ ․ այլ զնոյն ինքն Արարչէն ասէ ոչ է Աստուած ։ Արդ՝ չէ՞ ինչ զարմանք թէ եւ ըզգիրս Աստուծոյ ուրանալ կարէ ստութիւն կամ թէ պատճառել զնոյանէն պատճառս մեղաց ։ Յիսուս արդարեւ արժանի էր հաւատարմութեան ո՛չ որպէս մարդ ոք սոսկ՝ յԱստուծոյ բանէն թափուր, այլ որպէս կատարեալ յերկոսին՝ յԱստուածութեանն եւ իմարդկութեան ։ Հաւատարիմ են եւ ի ձեռն

Մարգարէից նորին ստացուածք բանին . ոչ վասն այնորիկ են հաստատութիւն զի մարդիկ խօսեցան զնոսա . այլ վասն զի անմարմնաբար նոքօք խօսեցաւ Աստուածն Բան : Եւ վասն զի խառն էր ի հնումն և ի նորումս . վասն այսորիկ եւ ո՛չ հակառակ են միմեանց : Այլ որ ասացեր այլայլեալ գգրեանն. եթէ առաջնորդ ուսմանդ քոյ ուսոյց զայդ՝ մոլորեալ զինքըն . եւ եթէ այդ ոք, եւս առաւել սաստեաց . արդ՝ լո՛ւր եւ գեղեցկապէս խորհեա՛ : Քում ուսմանդ Առաջնորդ ոչ առէ հաստատել զբանն առանց վկայից. Նմանապէս ասէ (9) եւ օրէնքն հրամայեն » ի բերանոյ երկուց եւ երից վկայից հաստատեսցի ամենայն բան » : Գիտեմք զԱբրահամ վասն Քրիստոսի յառաջ ընկալեալ զաւետիսն ասելով ցնա Աստուած » ի զաւակի քում օրհնեսցին ամենայն ազգք երկրի (10): Եւ Սահակ այսպիսի յուսով օրհնեաց զՅակոբ . զի Յակոբ վասն սորին օրհնեաց զՅուդայ՝ զիւր որդին «Յուդայ՝ ի քէն ելցէ ինձ լինել իշխան և պետ յերանաց նորա մինչեւ եկեսցեն նմա հանդերձեալքն . եւ նա է ակնկալութիւն հեթանոսաց » (11): Զի Մովսէս վասն սորին օրինագրեաց և պատուիրեաց զՅեսու, զԴաւիթ, զՍաղմոսն և զերկոտասան մարգարէսն հանդերձ Սամուէլիւ, Եղիայիւ, Եղիսէիւ, զԵսայի, զԵրեմիա, զԴանիէլ, զԵզեկիէլ, զարդարն զՅոբ, զՅովհաննէս Մկրտիչ՝ զԶաքարեայ որդին : Դիր

ի վերայ սոցա զերկոտասան աշակերտսն Տեառն, եւս եւ զեօթանասունսն . եւ միանգամայն ընդ հինն եւ ընդ նորս՝ հարիւր տասն եւ մէկ ։ Արդ՝ այսքան սրբոց եւ սիրելեաց Աստուծոյ՝ վասն Քրիստոսի զաւետարանն խօսեցելոց, զորոց եւ Մահմետն քոյ վկայեաց լինել սուրբս եւ ծառայս Աստուծոյ, անհաւա՞ն լինիս, եւ զքոյ Մահմետն քան զԱստուած որ նոքօք խօսեցաւ, և քան զԱստուածն Բան մարմնով երեւեալ հաւատարի՞մ համարիս ։ Եւ արդ՝ զհամառօտն հարցանեմ, ասա՛, աղաչեմ՝ հարիւր տասն և մէկ ծառայիցն Աստուծոյ՝ զմի և յաղագս միոյ խօսողաց վկայութի՞ւնն ճշմարիտ է եթէ միոյ այլախորհի եւ այլիմացի եւ ստելով ճշմարտող կարծողի ։ Եւ այս է ստելով ճշմարտելն, զվերոգրեալ սուրբսդ՝ ծառայս եւ սիրելիս Աստուծոյ Մահմետն քոյ խոստովանել ուսուցանէ ձեզ . եւ զոր ի ձեռն նոցա խօսեցաւ Աստուած ոչ ինքն ընդունի եւ ոչ այլում ընդունիլ ուսուցանէ ։ Ասացեր » եւ զիա՞րդ արդարացուցանիցէք զգրեանն Հրէից, եւ զհետ երթայք որ ինչ նման թուին ձեզ յայնցանէ . եւ դուք ասէք եթէ օրէնքն գրեցան բազում անգամ եւ կորեան, որք ընթեռնուին զնա յորդւոցն Իսրայելի եւ գիտէին զորս ի նմա . եւ Յիսուսին ժամանակս ինչ որ չկայր առ նոսա յայնցանէ և ոչ ինչ՝ մինչեւ գրեցին զմանք ի մարդկանէ յետ այնորիկ իւրեանց հանճարովն ըստ

*կամաց խուրեանց՝ ազգ յետ ազգի եւ ցեղ յետ ցեղի ։
Եւ նոքա մարմնեղէնք էին յորդւոյն Ադամայ, որք
մոռանան և ի կարծիս ըմբռնին, զի մօտ է առ նոսա
սատանայ եւ նմանօղք նորա թշնամութեամբն իւր-
եանց ։ Պատասխանի. Զարմանամ, զարմանամ
ոչ ընդ անհաւատութիւն եւ եթ ուսմանդ ձերոյ. այլ
եթէ զիա՛րդ ընդ յայտնութիւնդ ոչ ամաչէք. այլ ըղ
նոյնդ եւ գրով աւանդէք որպէս զի եւս ծիծաղելի
լինիցիք. եւ զմեզ մերովք բանիւք կարծէք դայ-
թակղեցուցանել. եւ զգլուխդ զոր ի թղթիդ քոյ
յափշտակեալ դնես մերովք աստուածովք, կարծես
հաստատել գրով թէ որ ասէք դուք ։ Արդ՝ եթէ հա-
ւատարիմ թուին քեզ աստուածք մեր, ամենայնին
պարտիս հաւատալ. քանզի սոտով վկայի ո՛չ որք (որ) զո-
մանս ի վկայութեանցն (12) ընդունին և զկէսն ի բաց
ընկենուն ։ Բայց որովհետեւ չես տեղեակ՝ լուեա՛լ
ուսի՛ր ։ Ասեմք մեք Հրէից ի սրբութեան տեղւոյն՝
(13) ո՛չ յանձանց ինչ ստեղծեալ գրոյս. այլ ի
սոյգ սպասմութեանց եբրայեցի արանց աստուա-
ծասիրաց տեղեկացեալ եւ ի գրոց նոցին իսկ Մար-
զպրէից ։ Քսան երկու են արարածք Աստուծոյ
զորս ի սկզբանն ի վեց աւուրս գործեաց. քսան եւ
երկու (են) գիրք աստուածայինք. եւ որ առ Եբ-
րայեցիսն՝ նոքին եւ առ մեզ ։ Նոյնքան եւ թիւ ալ-
փաբետիցն նոցա, թէպէտ հինգն ի նոցանէ կրկնակս*

ունին, և այն ոչ առանց մեծի խորհրդոյ։ Զայս վասն այնորիկ Աստուած մարգարէիւքն ուսուցեալ կարգեաց զի ի միմեանց հաստատեալ ճշմարտութիւնքն երեւեսցին (14)։ Յայսց քսան և երկու գրոց հինգն են Օրէնք զոր Թորայ (15) Եբրայեցիք, Օրաթայ՝ (16) Ասորիք, և Նոմոս մեք կոչեմք, որ ունի զաստուածգիտութեանն զօրութիւն և զարարչագործութեանն Աստուծոյ զաշխարհս, եւ պատմէր վասն կռոցն Հեթանոսաց ոչ պաշտել զնոսա, եւ ուխտն որ առ Աբրահամ վասն զաւակին որ է Քրիստոս, եւ այլ պէսպէս զատաստանաց և զոհից հրամանս ի բաց հրաժարեցուցանել զնոսա ի հեթանոսական սովորութեանցն որում ընդելըն խակ էին։ Իսկ Յեսուայ եւ Դատաւորացն եւ Հռութայ գիրքն և Թագաւորութեանցն չորեքին եւ Մնացորդացն, սոքա պատմօղք են ըստ ժամանակին աքանչելագործութեանցն Աստուծոյ, եւ անսխալ ազգաբանք Արդարոցն ազգի որ գայ, ի Ջանէ կարգաւ ի Քրիստոս, եւ պատմութիւնք զԹագաւորացն Իսրայելի եթէ ո՛յք եղեն հաճոյք Աստուծոյ եւ ո՛յք ոչ. եւս եւ բաժանումն ազգին վասն յանցանաց իւրեանց յերկուս թագաւորութիւնս՝ Իսրայելի և Յուդայ, եւ պատմօղք վասն գերութեան նոցին։ Իսկ Սաղմոսք Դաւթի, և գիրք Սողոմոնի զոր Կոհելէթ (17) եւ Շիրաշիրիմ (18) Եբրայեցիք, եւ Պառիմոն (19) եւ Ասմաատան (20)

*մեք անուանեմք. և երկոտասան մարգարէից Եսա-յեայ, Երեմեայ, Դանիէլի եւ Եզեկիէլի գրենոյն՝ ամենայնն մարգարէութիւնք են վասն գալստեանն Քրիստոսի ։*

*Արդ՝ եթէ ի Հրէից ոք չփոթեալ ապականէր, ո՛չ էր հնար գրենոյն ողջ պահել. զի չարագործողքն յայ-նօսիկ նախ՝ զթիւ գրենոյն ի բաց բառնային, և ի մի կամ յերկուս կամ թերևս աւելի՝ յերկու գիրս ժողո-վէին* (21), *և զյաւելուածն ևս ի բաց բառնային* (22). *քանզի ինոսա դիւրագոյն էր ջնջելն։ Եւ դարձեալ, որ-պէս կարծեմ՝ չես անտեղեակ թշնամութեանն որ ընդ մեզ Քրիստոնեայս և ընդ Հրէայսն, և ոչ վասն այլոյ միոյ ուրուք այլ վասն խոստովանելոյն մեր զՅիսուս եթէ՝ սա է Քրիստոսն, որ և Որդի Աստուծոյ առ ի Մարգարէից քարոզեցաւ. իսկ Հրէայքն ահա՛ զսա ոչ առեն Քրիստոս, այլ թէ և խոստովանին թէ՝ արժան է գալ Քրիստոսի . սակայն անհաւան մնացեալք գրոց Մարգարէից, եւ ո՛չ այսպէս որդի Աստուծոյ խոստովանին զՔրիստոս ։*

*Արդ՝ ապա զի՛րդ ապականիչք գրենոյն զայս-պիսի հաստատուն եւ անտարակուսելի վկայութիւնս իւրեանց գրեանն թողին և կամ ինքեանք յաւելին, որք ոչ կարող են ի վերայ այլոյ ուրուք իմանալ, թէ եւ յոյժ ոք բռնադատեսցէ զբանն, եթէ ոչ ի վերայ մարմնացելոյ Որդւոյն Աստուծոյ ։*

Ընկալ եւ զերրորդ պատասխանիս ։ Գերութիւն Հրէից նախ քան զմարմնով գալուստն Քրիստոսի եղև . իսկ զկնի որդ առ Նովաւ հաստատուն կացեալ էր եւ տաճարն եւ կտակարանքն եւ քահանայութիւնն, որպէս եւ յայտ իսկ է ի որոց Աւետարանացն, որպէս դու իսկ վկայեցեր զՏէառնէն, զԹլպատութենէն եւ զայլոցն մի ըստ միոջէ, զոր ըստ Աւետարանացն կատարեաց ։ Եւ զայս ոչ յաղագս այլ ինչ իրաց էր արարեալ . այլ զի արդարացուսցէ զիւր առաջեալսն ի ձեռն Մարգարէիցն, եւ ցուցցէ եթէ չէին հակառակ Նմա ; այլ սիրելիք եւ հաստատուն վկայք անտեսութեանն Նորա խորհրդոյ ։ Եւ որ՞ք էին կտակարանքն որ առ Հրէայսն եթէ ոչ գրեանն Մարգարէից որք յետ երկոցուն գերութեանցն Խաբայելի եւ Յուդայ՝ առ Հրէայսն կային մինչեւ ի ժամանակս Փրկչին մերոյ. յորում բազում վկայութիւնս Տէրն յաւուցանելն զանհաւան Հրէայսն յիշեաց յաւետարանսն։ Գերեցան ի Նաբուգոդոնոսորայ ազգն Հրէից . այլ աստուածային այցելութիւնն ոչ ետ նոցա թոյլ ըստ այժմու զերեւոյդ կատարիլ . այլ զդավանդակ ազգն բնակեցոյց ի տեղիս յորս կամեցաւ ։ Ընդ նոսա էին գրեանն, այլ եւ ոմանք ի Մարգարէիցն որպէս Եզեկիէլ ասէ զինքենէ թէ » եւ էի ի մէջ գերութեանն առ ափն Քոբար գետոյ « և Անանեանքն երանելիք ի Բաբելոնի ընկեցան ի հնոցն, եւ

մեծն Դանիէլ ի Բաբելոն մարգարէացաւ , եւ անդ ընկեցաւ ի գուբն առիւծուց, եւ ամեն Եսթերայ իրքն ի նմին գործեցան ։ Բայց զի ընդ նոսա էին գրեանն՝ լո՛ւր Հոգւոյն սրբոյ ի Սաղմոսին ասացեալ Մարգարէիւն վասն գերելոյն Հրէից, որ թէպէտ տակաւին չէր եղեալ , այլ զանխալ պատահումն իրացն նշանակեալ ի 136 սաղմոսին ասելով « առ գետովն Բաբելացւոց, անդ նստէաք եւ լայաք . ո՞րպէս յիշեցաք զՍիոն, ի միջի նոցա ուռեաց կախեցաք զգործարանս մեր . զի անդ հարցին գերիչք մեր բանս երգոց , եւ տարիչք մեր՝ բանս օրհնութեան » (23) ։

Իսկ որ ասայեր մարդկան հանճարով գրեալ ըզդրեանն . գիտեմ զի զառ ի յԵզրէ զերկրորդումն կամիս բամբասել ։ Զի թէպէտև եղեն ի վերայ նորա շնորհք Հոգւոյն սրբոյ, եւ առանց վրիպանաց գրեաց զամենայն ։ Եւ յորժամ միանգամայն ազգն յաշխարհացն յորս սփռեցան, դարձան յԵրուսաղէմ բերելով ընդ իւրեանս զգրեանն . երեւեցաւ և անդ Աստուծոյ սքանչելեացն գործ . զի եւ ո՛չ մի ինչ ի Հնոյն և առ ի յԵզրէ պատմութենէն գտաւ պակաս։ Եւ որ ասայերն՝ մարդիկ էին և մոռացմամբ ըմբըռնէին ։ Մարդիկ հանապազ յամենայնի տկարք են և պակասամիտք և մոռացկոտք . իսկ Աստուած յաւիտենական, որ մեծ է զօրութեամբ . այսպէս եւ յի-

մաստութեան ո՛չ ունի սահման և եզր որ խօսեցաւ ընդ մարդկան ծառայիւք իւրովք Մարգարէիւք. առ որում ո՛չ է կարծեաց կամ մոռացման ախտ ։ Նա խօսէր ի Մարգարէսն և ոչ ի մարդկան իմաստս թողուլ զնոսա։ Բայց զքո Մահմետն չգիտե՞ս արդեօք մարդ, որոյ բանիւ միայն զայսքան սրբոց Աստուծոյ վկայութիւնս ի բաց ընկենուս ։ Կամ որ ասացեր մօտ լինել զատանայ ի ծառայս Աստուծոյ և զԱստուած ամենեւին ոչ ։ Բայց որք բարուքն խորհին՝ գիտեն եթէ ի մինն որ առանց վկայութեան գրոց է, նմա՛ է մերձենալ սատանայի քան թէ յայնքան սուրբս և վկայեալս յԱստուծոյ ։ Եւ որ յաղագս գրենոյն բան այսքանս բաւականասցի ։

Իսկ որ ասացեր « ոչ գտանել մեղ յօրէնսն Մովսիսի վասն արքայութեան եւ դժոխոց եւ դատաստանի և յարութեան » ոչ կամեցար գիտել եթէ որպէս կարէին մարդիկ ընդունիլ զգիտութիւնն Աստուծոյ, այնպէս ուսուցանէր զնոսա Աստուած ։ Եւ ո՛չ թէ միով Մարգարէիւ խօսեցաւ Աստուած ընդ մարդկան եւ միով ժամանակաւ, որպէս դու ասացեր եթէ զոր ինչ պատուիրելոցէր Աստուած ազգի մարդկան, զամենայն ընդ Մովսիսի ձեռն պատուիրեաց, ո՛չ այդպէս. զի զոր ինչ նոյին պատուիրեաց, չը պատուիրեաց զայն նոցա որ յառաջ քան զՆոյ. և զոր Աբրահամու պատուիրեաց չպատուիրեաց Նոյի

նոյնպէս զՄովսէսին՝ չպատուիրեաց Աբրահամու . եւ զոր Յեսուայն չպատուիրեաց Մովսէսի . եւ զոր Սամուէլին և Դաւթի և այլոց մարգարէիցն յիւրաքանչիւր ժամանակս՝ չպատուիրեաց Յեսուայ : Զի որպէս ասացաքն յառաջագոյն, այսպէս սակաւ առ սակաւ հանեցաւ Աստուած զինքն եւ զկամս իւր ծանուցանել ազգի մարդկան : Զի եւ ոչ կարէին իսկ մարդիկ միահաղոյն բուռն հարկանել զաքանչելի գիտութենէ նորա :

Արդ՝ եթէ զամենայնն ընդ միոյ մարգարէի ձեռն խօսեցեալ էր, ընդէ՞ր եւ զայլ մարգարէսն առաքէր Աստուած . կամ եթէ այնմ ամենայնի թողլ տայր ապականիլ որպէս դուք ասէք, ընդէ՞ր բնաւ խօսեցաւ ընդ նոսա : Արդ՝ թէև յառաջակրթութիւն էր Մովսէսին մարդկան եւ ոչ տակաւին կատարելագոյն. սակայն նշանակեաց Աստուած եւ ի նմա վասն յարութեան եւ դատաստանին եւ դժոխոցն : Վասն յարութեանն ասէ « Տեսէ՛ք՝ զի ես եմ Աստուած եւ ո՛չ է այլ Աստուած բաց յինէն : Ես սպանանեմ եւ կեցուցանեմ, հարկանեմ եւ բժշկեմ, եւ ո՛չ ոք հանէ զձեզ ի ձեռաց իմոց »(24) : Եւ վասն դատաստանին ասէ « սրեցի՛ց որպէս զփայլակն սուսեր իմ, եւ ի խնդիր վրիժուց արձակեցի՛ց զաջ իմ» : Եւ դարձեալ « խնդրեսցէ՛ վրէժս դատաստանաց թշնամեացն. հատուսցէ՛ եւ ատելեացն » : (25) Իսկ վասն

դժոխոցն « զի հուր բորբոքեալ է, ասէ, ի բարկութենէ իմմէ, այրեսցէ մինչեւ ի դժոխս ներքինս » : (26) Իսկ զատուցեալ կատարելութիւնն եւ զոգւոյն անմահ այլովք մարգարէիւքն յայտնագոյն ասէ :

Իսկ որ ասայեր Մատթէոս, Մարկոս, Ղուկաս և Յովհաննէս գրեցին զԱւետարանն : Գիտեմ՝ ընդ ճշմարտութիւն մերս Քրիստոնէից նեղիս եւ կամիս զի ստութեամբ քոյ ընկեր զանէիր թէ ասէաք թէ գրեալ իջոյց զայդ Աստուած յերկնից որպէս դու վասն Փուրկանիդ (27) քոյ ասես · թէպէտեւ չեմք անտեղեակ թէ եւ քոյդ Օմար եւ Աբու-Թուրապ եւ Սալման պարսիկք գրեցին (28) : Եւ դուք ստելով համբաւէք թէ՞ յերկնից իջոյց Աստուած : Արդ՝ յայսմ ծանիր զճշմարտութիւն մերս Քրիստոնէից: Զի թէ այդ այդպէս էր՞ զի՞որդ դու զրպարտես թէ յետոյ ստեցին յԱւետարանն կամ մեք եւ կամ այլ ոք : Զի՞նչ արգելոյր զանուանս Աւետարանչացն իբրեւ բառնալ եւ զայն գրել եւս թէ եւ Աստուած յերկնից ի խոնարհ իջոյց : Այլեւս զոյս տե՛ս զի ո՛չ համեցաւ Աստուած ո՛չ իւր յանձնիմանախօսութեամբ առանց մարմնոյ առ ծողովուրդս մարդկան, եւ ոչ հրեշտակս առ մարդիկ առաքելով խրատել ըզնոսա · բայց մարգարէս ի նոցունց ընտրեաց եւ ըզնոսա առաքեաց · վասն որոյ եւ Տէրն յորժամ կատարեաց զամենայն յառաջագոյն սահմանեալս իւր,

զորս ի ձեռն Մարգարէիցն խօսեցաւ նախքան զգե-
նուլն մարմին . եւ գիտացեալ եթէ մարդիկ են կա-
րօտ օգնականութեանն Աստուծոյ, խոստացաւ նո-
ցա առաքել զՀոգին սուրբ պառակլիտոս այսինքն
մխիթարիչ . զի տրտմէին իսկ եւ սգային յորժամ
լսէին ի Վարդապետէն իւրեանց եւ ի Տեառնէն եթէ
Թողլոցէ զնոսա : Եւ որպէս ասացաք, վասն այնո-
րիկ զՀոգին սուրբ պառակլիտոս կոչեաց որպէս ար-
դա՛րեւ մխիթարիչ իսկ զնոսա վասն նորա համբարձ-
ման . եւ որպէս յիշեցուցանող ամենայն խօսեցելոցն
ընդ նոսա եւ գործելոցն առաջի նոցա, զորս եւ գրե-
լոցն էին ամենայն տիեզերաց : Արդ՝ գիտեա՛ զի
պառակլիտոս մխիթարիչ անուանի և ոչ Մահմատ
(29) այսինքն դոհանամ, եւքանախատէ ի մեր լեզու ո՛չ
(է) պառակլիտոս :

Արդա՛րեւ առանց թողութեան է հայհոյութիւնս
այս որպէս ասաց Տէրն յԱւետարանն « եթէ որ
հայհոյէ զՀոգին սուրբ, մի՛ թողցի նմա » : (30) Զի՞նչ
չարագոյն քան զայս հայհոյութիւն՝ եթէ զՀոգին
սուրբ ասէք զայր մի օտար ի գիտութենէ գրոցն Աս-
տուծոյ : Եւ զի զՀոգւոյն սրբոյ Տէրն ասաց, լո՛ւր
նոցին իսկ ասացելոցն « իսկ մխիթարիչն Հոգին սուրբ
ասէ, զոր առաքեսցէ Հայր յանուն իմ . նա ուսու-
ցէ՛ ձեզ զամենայն եւ յիշեցուսցէ ձեզ զոր ու-
սուցի ձեզ » (31) : « Զոր առաքեսցէ Հայր յանուն

խմ» ասէ, եւ քոյ Մահմետն ո՛չ եկն յանուն Տեառն մերոյ . այլ յիւր անուն, եւ Հոգին սուրբ սրբոյ ա֊ սաց. եւ ոչ մարդկան, այսինքն Աշակերտաց . եւ դու ինքնին գիտես զի ո՛չ երբէք տեսին Առաքեալքն Տեառն զՄահմետն քոյ ։

Արդ՝ որպէս վերագոյնն ասացի, ընդ միոյ միոյ մարգարէի ձեռն ըստ ժամանակաց զիւրոյ Աստուա֊ ծութեանն գիտութիւն ուսուցանէր Արարիչն մեր ։ Բայց և ո՛չ Մարգարէիւքն կատարեաց զամենայն զա֊ լոց զյաւիտենական արդարութիւնն, որպէս (յայտ֊ նեաց) Աստուած ի ձեռն Դանիէլի Մարգարէին . զի զերիս յայտնեաց Աստուած փոփոխմունս որովք ի ճշմարտագոյն աստուածգիտութիւնն մարդիկ յա֊ ռաջ գալ կարասցեն ի կռապաշտութեանն խաւարէ ի չափաւոր ճաճանչ օրինացն լուսոյ . եւ անդուստ ի հզօրագոյն լոյս Քրիստոսի Աւետարանիս . եւ յԱւե֊ տարանէ անտի ի հանդերձեալ անգիշեր լոյսն ։ Չո֊ րորդ փոփոխումն կամ վարդապետութիւն կամ խոստումն մարդիկ յայլոց մարգարէից ո՛չ ընկալան. այլ զնորին հակառակն եւ սպասուէր յոլովակի ի նոյն ինքն Փրկչէն՝ ո՛չ զոք մարգարէ կամ առա֊ քեալ յետ Աշակերտացն իւրոց ընդունիլ ։

Իսկ որ ասացեր յետ Աշակերտացն Տեառն յեօ֊ թանասուն եւ յերկուս բաժանեալ մեզ մասունս, չէ՛ այդպէս . քանզի մի՛ ստութեամբ զքեզ մխիթարել

կարծիցես զմեր սխալանս ինչ օրինակ առնլով ։ Եւ արդա՛րեւ աղարտելի է քոյդ որ ո՛չ է նման ծառայից Աստուծոյ ։ Եւ զիա՞րդ է՞ ես ասացից. միոյ լեզուի է վարդապետութիւնդ ձեր և միոյ ազգի (32), և ժամանակ երևման դորա որպէս դուքդ ասէք՝ հարիւր ամ փոքր ինչ աւելի կամ պակաս ։ Արդ՝ յայսքան սակաւաժամանակեան և միոյ ազգիդ ուսման զտանեմք բազում որոշմունս ։ Այլ որ ի գիտութիւն մեր հասին են այսոքիկ. Քաղի (33), Սաբարի (34), Թուրասպի (35), Կենարի (36), Մուրչի (37), Բասղի (38), անաստուած Ջահրի (39), որք ուրանան զէութիւնն Աստուծոյ և զյարութիւնն և զասացեալ քոյ Մարգարէն. Հարիւրի (40) ։ Եւ այս Հարիւրիս մի մասն ոչ է խոստովանէր. և միւս մասն այնքան ունի առ ձեզ հակառակութիւն ատելութեան, որ լաւագոյն համարի զպաշտամանեսն զձեզ քան զամենայն արդարութիւն՝ անաստուած և թշնամի զձեզ կարդալով և գիտելով. իսկ զմեռանելն ի ձէնջ առաջին յամենայն բարեգործութեանց համարի ։ Եւ այս գործի ի վերայ այդր. զի դու սրով կոտորելով զայնոսիկ որ փոքր մի խորշին ի կարծեաց քոց, չխորհիս մեղանչել յԱստուած ։ Արդ՝ եթէ ի քումդ առաջիկ գտանին այնպիսի իրք, որ մի ազգ էք, մի լեզու, մի ազգապետ՝ նոյն և իշխան և քահանայապետ և դահճապետ. թէ արդարև մարդկային իմաստիւք

էին հաւատք Քրիստոնէից, զի՞նչ զարմանք էին փառաթարագոյն ևս հաւատ քան զձերդ ի մեզ լինել ։ Ութն հարիւր ամք են՝ փոքր ինչ պակաս կամ աւելի, յորմէ (հետէ) Քրիստոս երևեցաւ, և տարածեցաւ Աւետարանն ընդ ամենայն ազգս և լեզուս մարդկան ի ծագաց մինչև ի ծագս Տիեզերաց, ի Յունաց և ի Հռոմայեցւոց քաղաքավարութիւնս և ի Բարբարոսն հեռաւորս . և եթէ է ինչ սակաւախմացութիւն . և այն վասն լեզուին այլայլութեան . փոքր ինչ տասցի, բայց ոչ այդպիսի աննուէր թշնամութիւն որպէս քոյոյդ ։ Զի որ եօթանասուն և երկու տասցեր զայնոսիկ որք ալիղծք և աղտեղիք են ի հեշտասիրութեան և ամբարշտեալք յԱստուծոյ որպէս և զայլ Հեթանոսսն, բերեալ մեզ համարիս, որ զզարշութիւն իւրեանց ամենասուրբ անուամբն Քրիստոսի թագուցանել կարծեցին, և քրիստոնեայ ինքեանք զինքեանս կոչեցին . որոց հաւատքն հայհոյութիւն էին, և մկրտութիւնն ևս պղծութիւն, զորս ի դառնալն ի յիւրեանց պղծութենէն սուրբ եկեղեցին մկրտէր իբրև զհեթանոսս, զորս վաղ երբարձ Աստուած ի միջոյ, և չգտանին ուրեք հետք ։ Եւ եօթանասունս կոչէին ի մեզ Քրիստոնեայք և ամենեքին զնոյն սուրբ և գլխաւորական կենացն դրաւական ընկալեան զմկրտութիւն ։ Եւ եթէ իցեն ինչ բանք ուրուք ի նոցանէն վասն փոքու իրիք . և

այն ի հեռաւորան եւ յայլալեզուան, եւ մանաւանդ յայնոսիկ (41), որ ի մէջ ձերոյ բռնակալութեանդ բնակեալ են. սակայն Քրիստոնեայք են եւ ո՛չ վերստին պէտս ունին մկրտութեան ։ Եւ այս չեն ինչ զարմանք, եթէ յոյժ հեռաւորքն եւ այլալեզուքն չեն այնքան տեղեակք որքան պարտն է՝ ճշմարտութեան աւանդիցն. սակայն նոյն գիրք յիւրաքանչիւր լեզուան ողջ պահեալ, նոյն Աւետարան առանց ամենայն սխալանաց ։ Եւ արդ՝ զյոլով լեզուան թողից յորս այս սքանչելի եւ միրկական աստուածգիտութիւնս բաշխեցաւ, բայց զսակաւսն յիշեցից. առաջին՝ մեր Յունաց. երկրորդն՝ Հռոմայեցւոցն. երրորդն՝ Բաղադացւոցն (42). չորրորդն՝ (43).......: հինգերորդն՝ Ասորւոյն. վեցերորդն՝ Եթովպացւոցն. եօթներորդն՝ Հնդկացն. ութերորդն՝ ձեր Սառամլինոսացդ. իններորդն՝ Պարսից. տասներորդն՝ Հայոց. Մետասաներորդն՝ Վրաց. երկոտասաներորդն՝ Աղուանից ։

Եւ արդ՝ ըստ քո աստուածիդ գրե՛թէ միոյ կամ երկուց ազգի փոփոխէր ոք զգրեանն արդեօք. իսկ զիմ՛րդ և զայլոց ևս ազգաց զորս յոյժ հեռաւորս գիտէք ինէնջ, եւ ի միմեանց օտար լեզուօք եւ սովորութեամբք ։ Բայց դուք սովոր էք առնել զայսպիսիս, մանաւանդ Հաջաջն այն որ ի կողմանս Պարսից առ ի ձէնջ ազգապետ կացեալ, ժողովեաց զամենայն հին

գրեանն ձեր եւ այլ ըստ ախորժակայն գրեայ եւ
թաշխեաց ընդ ամենայն ազգն ձեր. զի կարի դիւ-
րադոյն էր ի միում ազգի եւ ի միում լեզուի գործել
այսպիսի ինչ որպէս գործեցաւն իսկ։ Եւ թէպէտ այս-
պէս սակաւք մնացին Աբու-Թուրաբայ (44) գրեանն.
զի ամենեւին նա ոչ կարաց բառնալ։ Իսկ մեք նախ՝
զի պատուէր սաստիկ ընկալաք յԱստուծոյ չյանդըգ-
նել յայսպիսի իրս։ Եւ դարձեալ եթէ յանդգնեալ
ընդդիմանայր ոք հրամանի նորա, անհնար էր զբաժա-
նեալսն յայլքան լեզուս դարձեալ ի միասին հաւա-
քել եւ խնամով ըստ իւրաքանչիւր լեզուի փորձել,
ոչ զայլ (45) եւ պէտ թարգմանս յուղել եւ նստուցա-
նել զի ի բաց բարձցեն ի գրենոյն զոր բան կա-
միցին, եւ յաւելցեն զոր ախորժեսցեն։ Եւ զայս ոչ
անգիտանաս եթէ հակառակութիւնք են ի մեզ Քրիս-
տոնեայս որպէս եւ դուդ ասացեր, թէպէտեւ ո՛չ
վասն կարեւորագոյն ինչ իրաց. զխո՛րդ եւ զգրեանն
ոչ փոփոխէին ազգքն ըստ իւրաքանչիւր կամաց։
Արդ՝ չգործեցաւ ինչ այսպիսի ի մէջ Քրիստոնէից
ո՛չ ի հեռաւորս եւ ո՛չ ի մօտաւորս. եւ դու մի՛ յա-
ճախեր զստեղծ. զի մի՛ եւ զսակաւ արդարն անհա-
մեսցես։

Բայց ընդ այս յոյժ զարմանամ զի խոստեսցես զԱ-
ւետարանն Տեառն եւ զմարգարէիցն գիրս ասելով
թէ խանգարեցին մարդիկ զնոսա, եւ որպէս կամե-

ցան գրեցին . եւ դու զվկայութիւն անհաստատ կարծեացդ քոյ անդուստ ջանացար ծածկել եւ ըղ-բան զոր առնուս ի վկայութիւն ի բաց բարձանես, զի ուր Հայր գրեալ է՝ Տէր կամ Աստուած փոխեալ դնես ։ Եթէ արդարութեան ինչ ես ի խնդիր, կամ հաւանել պարտիս գրենոյն, և այլս առնուլ զնոսա ի վկայութիւն . կամ եթէ խոստես՝ որպէս ասես թէ խանգարեալք են, չառնուլ վկայութիւն ի նոցանէն ։ Պա՛րտիս եւ ունիլ զերրորդն՝ զվկայութիւնս զոր առնուս ոչ շրջել զնոսա ըստ քոյ կամացդ . այլ որպէս ի գրին կայ, այնպէս ասել զնոսա ։ Յոյժ զծուարին է ծառայից Աստուծոյ, որք ջատագանդեալեն հրամանաց նորա, խօսիլ ընդ ձեզ . զի այլ Հեթանոսքն յործամ լսեն զանուանս Մարգարէից եւ կամ զԱռաքելոցն՝ ի ծաղր ուժգին շարժին . իսկ դուք թէեւ զանուանսն ոչ անարգէք, զբանս նոցա քամահէք, մանաւանդ թէ զխօսողին նոքօք . ապա թէ ոչ զինչ արասցուք զասացեալսն առ Մովսէս « Ես եմ Աստուած Աբրահամու եւ Աստուած Իսահակայ եւ Աստուած Յակոբայ » (46) ։ Եւ կամ թէ « Եկա՛յք, արասցո՛ւք մարդ ըստ պատկերի մերում եւ ըստ նմանութեան » (47) ։ Եւ կամ թէ « Եկա՛յք, իջցո՛ւք և խառնակեսցո՛ւք զնոսա » (48) ։ Եւ կամ թէ « Տէր տեղեաց ի Սոդոմ և ի Գոմոր հուր ի Տեառնէ, Տէր ի Տեառնէ » (49) ։ Եւ այս ի Մովսիսի գրոցն,

զորս ոչ ընթերցար դու եւ ոչ օրէնսուսոյցն քոյ ։ Զի՞նչ՝ ցհրեշտա՞կս կարծիցես դու ասել Աստուծոյ այսպիսի ինչ, որք եւ տեսանել զնա ոչ կարեն ։

Զեմք որպէս զքեզ եթէ վայրապար եւ հարևանցի կարծեմք զգիրս Աստուծոյ զասացուածս ։ Ցո՞վ պատշաճ էր ասել Աստուծոյ այսպիսի բանս եթէ ոչ առ. Բանն իւր որ է կերպարան էութեան Նորա և ճառագայթ լուսոյ փառաց Նորա, եւ ցՀոգին սուրբ որ սրբէ զամենայն եւ լուսաւորէ ։ Եւ զրպարտիմք ի ձէնջ իբրեւ զերիս Աստուածս խոստովանօղս ։ Լո՛ւր և ապա պատասխանեա՛, աղաչեմ, ա՛յլ ինն է արեգակն եւ ա՛յլ ճառագայթք Նորա՝ թէպէտեւ յարեգականէ անտի է. և աստանց ճառագայթիցն արեգակն ո՛չ է արեգակն ։ Եւ եթէ ասէ ոք զճառագայթսն ծնեալ յարեգականէ աստանց ախտի կամ խզականի, ո՛չ ստէ ։ Եւ թէպէտ այլ ինչ (է) արեգակն եւ այլ ինչ ճառագայթն . ո՛չ եթէ վասն այնորիկ երկու արեգակունք իցեն . Բայց քեզ արդեօք չթու՞ի այսպէս ։ Արդ՝ եթէ այսմ լուսոյ զոր աչօքս մեր տեսանել կարեմք, եւ արարած է Աստուծոյ, երեւի այսպիսի մաքուր ի յախտէ ծնունդ, որ և զիշերաւ ծածկի եւ արդելանաւ չինուածոյ, ո՞չափ եւս առաւել ինձ իմասցիս զաստուածայնոյն ինքնեղ, ինքնարարականն, և անզլիշեր լուսոյն ։ Եւ զայս հարկաւորեցաց օրինակաւ իւիք ցուցանել . զի պատ-

ուխրելոյն Աստուծոյ որ ի գիրս սուրբս ոչ հաւանիս . այլ զքոյ կամսդ վեհագոյն քան զնոսա համարիս. զո-րս կամիսն գրես ի նոցանէ, եւ զորս ոչ կամիս՝ յայլ ինչ փոխարկես . եւ զորս կամիս՝ խոտես եւ ի բաց ընկենուս ։ Անիծեա՛լ ամենայն մարդ որ երկուս կամ երիս խոստովանի Աստուածս, զի հա՛րկ է զայ-նոսիկ այլացեղս եւ այլասկզբունս ասել ։ Այլ մեք մի գիտեմք զԱստուած՝ արարիչ երկնի և երկրի՝ ո՛չ անբան այլ ամենասուրբ եւ արուեստաւորիչ իւրով Բանիւն որով արար եւ ունի զարարածս ։ Որոյ բան ո՛չ իբրեւ զմեր բանս յետ խօսելոյն լուծեալ եւ ի բաց բարձեալ, եւ մինչչեւ խօսեալ՝ ո՛չ լուեալ եւ ո՛չ ծանուցեալ . զԱյս գիտեմք Աստուծոյ Բան, ճա-ռագայթ անխաւար, անորակ լուսոյ, ո՛չ որպէս արե-գական ճառագայթիցն եւ եթ ծնունդ . այլ ի վեր քան զկարողութիւն ասացուածիս մեր ։ Զսա կոչեն Որդի աստուածային գիրք՝ ո՛չ ախտաւոր կարօտու-թեան եւ աղտեղի ցանկութեանցն ծնունդ . այլ զորօրինակ յարեգականէ ճառագայթ, եւ որպէս ի հրոյ՝ լոյս, եւ բան՝ ի մտաց ։ Եւ այս որչափ մարդ-կայինս կարաց թարգմանել լեզու զԲանին Աստուծոյ առ ի յԱստուծոյ ունիլ զգոյութիւն ։

Եւ ապա քանզի ո՛չ ինչ պատուական է Աստուծոյ յարարածս իւր քան զմարդն . վասն զի եւ դու խոս-տովան լինիս եթէ հրամայեաց Աստուած հրեշտա-

կայ երկրպագել Ադամայ, Թէպէտեւ յաստուածային գիրս զայդ ոչ գտանեմք ։ Արդ՝ Ադամ մարդ էր՝ գեղեցիկ վկայեցեր բամբասեալ գքոյին հպարտութիւնդ. զի որ մարդկան ոչ երկրպագեսցեն գիտասցեն ընդ որս դասեսցին, որպէս ասացեր ։ Արդ՝ ի պատկեր Աստուծոյ եղեւ Ադամ՝ յայտ է ։ Զի՞րդ՝ զայս ախտաւոր, ընդդիմահար մարմի՞նս կարծիցես Աստուծոյ ասել պատկեր իւր, ո՛չ՝ այլ զիւր և զԲանին իւրոյ եւ զՀոգւոյն իւրոյ զնմանութիւն եդ ի նմա զհոգի, զմիտս եւ զբան ։ Զսոսա ի նմա հաւաքեալ կառոյց, եւ ընդ ինքնիշխանութեանն շրջարկեալ պատիւ՝ եղեւ Աստուծոյ պատկեր ։ Սա խաբանօք բանսարկուին անկաւ ի պատուոյն զոր ետ նմա Արարիչն. անարգեալ եղեւ մոռացմամբ Ստեղծողին իւրոյ. եւ վարուք անատակ եւ զարշելի ցանկութեամբ, պիղծ եւ պէսպէս գլճութեամբք կեղով, ատելութեամբք, զրկութեամբք միմեանց, սպանութեամբք, եւ որ վերջին եւ առաջին է ամենայն չարեաց՝ կռապաշտութեամբք, եւ այնպիսի պոռնկութեամբ որ ասել տաղտկանամ. զի ոչ միայն զոչէան Աստուածս կարծեցին եւ կամ զերեւելի արարածս. այլ զնոսին իսկ զախտսն՝ զպոռնկութիւն և զարուագիտութիւն աստուածս կարծեալ պաշտեցին ։ Զորս բանսարկուն՝ իւր արար երկրպագուս եւ ուրա՛խ լինէր պատկերօք կռոցն չարաչար նշանս ախ-

տից կատարելոց յերկրպագուան, և ի նոսին յորդորե-
լով զնոսա ։

Արդ՝ տեսեալ Աստուծոյ զիւր պատկերն անար-
գեալ երկրպագութեամբ բանսարկուին և գործովք
հաճոյից նորա, ողորմեցաւ նմա որպէս բարերար և
արդա՛րև մարդասէր ։ Եւ զի այս էր փրկութիւն՝ ճա-
նաչել զԱրարիչն իւր և ի բաց կալ ի թշնամւոյն. ըստ
ժամանակի ժամանակի, որպէս ի խաւարի ի կռապաշ-
տութեան՝ որպէս ճրագ լուցանէր զգիտութիւն իւր ի
ձեռն ծառայից իւրոց մարգարէից ։ Եւ զի կուրա-
ցեալ էին միտք մարդկան, և ոչ կարէին զբովան-
դակ Աստուածութեան գիտութեանն ընդունել ըզ
լոյս. վասն այսորիկ զչափաւոր գիտութիւն իւր սա
սակաւ սակաւ յայտնէր մարդկան որպէս կանխա-
տեսցի, մինչև ցկատարումն ժամանակաց, որչափ
հաճեցաւ Աստուած խրատել զմարդիկ ։ Եւ յառա-
ջագոյն խոստացաւ մարգարէիւք զգալուստ մարմնով
Բանին իւրոյ. և քանզի զմարմին և զհոգի և զամե-
նայն ինչ առնլոցէր Աստուծոյ բանն զմեզս բաց ի
մեղացն ։

Եւ զի ո՛չ ոք կարաց ի մարդկանէ այնքան ի խո-
նարհութեանն իջանել աստիճան որքան նա. վասն
այսորիկ զխոնարհագոյնսն զնմանէ՝ որպէս զխոնար-
հագունէ մարդոյ գիտեմք ասացեալ. իսկ զբարձրա-
գոյնսն՝ իբրև զարդա՛րև Աստուծոյ ։ Յիշեսցե՞ս սր-

դնեմք զոր ասացաք զՄովսիսի ասացեալն զհաւատարութիւն Բանին առ նոյն ինքն Աստուած։ Լո՛ւր նմին իսկ Մովսիսի յաղագս մարդկայքս երեւմանն « Մարգարէ յարուսցէ՛ ձեզ Տէր Աստուած ձեր յեղբարց ձերոց իբրեւ զիս . նմա լուիջի՛ք ըստ ամենայնի զոր ինչ եւ խօսեսցի առ ձեզ ։ Եւ եղիցի՛, ամենայն մարդ որ ոչ լուիցէ Մարգարէին այնմիկ . սատակեսցի՛ անձն այն ի ժողովրդենէ իւրմէ » (50) ։ Բազում եւ ոչ եթէ մի մարգարէք յարեան յԻսրայէլի յետ Մովսիսի . այլ զայս պատուէր յաղագս միոյն առնէ, եւ որ զօրաւորագոյնս եւ ճշմարտապատուիրան էր խօսելոց ։ Արդ՝ եկեսցե՞ն քեզ այսուհետեւ հոյլք վըկայութեանց մարգարէից վասն գալստեանն Քրիստոսի ։ Բայց լո՛ւր նախ՝ զխոնարհագոյն ասացեալսն զնմանէ . զի զայսուիկ ախորժելով, որպէս կարծեմս ես (լուիցես), թերեւս որպէս սամոյխով ինչ այսուիկ ի բարձրագոյնսն, եթէ նորա իցեն կամք, հանեալ հուպ կացուցից ։ Դաւիթ մարգարէանալով ընդ նորա ասէ « Ես եմ որդն եւ ո՛չ մարդ, նախատինք մարդկան եւ արհամարհանք ժողովրդեան ։ Ամենայն որ տեսանէին զիս, այպանէին զիս . խօսէին շրթամբք եւ շարժէին զգլուխս իւրեանց ։ Յուսացաւ ի Տէր, եւ ապրեցուսցէ՛ զնա, փրկեսցէ՛ զնա, կեցուսցէ՛ զնա . զի կամի զնա » (51) ։ Եւ այս երբէք ո՛չ գործեցաւ ի Դաւիթ բայց ի Տէրն ի ժամ խաչելութեան ։

Արդ՝ լո՛ւր նմին Դաւթի վասն նորա զբարձրագոյնսն ասացեալ ։ « Տէր ասաց ցիս որդի իմ ես դու. ես այսօր ծնայ զքեզ » (52) ։ Եւ յաղագս զամենայն Հեթանոսսն ընլոյ որ ի նայն հաւատովք (53), յարեաց ի նոյն » խնդրեա՛ յինէն, եւ տա՛ց քեզ զՀեթանոսս ի ժառանգութիւն, և յունողութիւն քեզ զծագս երկրի » (54) ։ Եւ դարձեալ « Ասաց Տէր Տեառն իմոյ նի՛ստ ընդ աջմէ իմմէ մինչեւ՝ եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց . . . ընդ քեզ է սկիզբն զօրութեան պայծառութիւն սրբոց քոց ։ Յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ » (55) ։ Իսկ յաղագս յերկինս մի գոլոյ Աստուածութեանն բնութեան դարձեալ նշանակեաց Դաւիթ ասելով « Ողորմութեամբ Տեառն լի՛ եղեւ երկիր, եւ բանիւ Տեառն երկինք հաստատեցան, և Հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա » (56) ։ Եւ Երեմիա « Տէր առաքեաց զիս եւ Հոգի նորա » ։ Եւ յաղագս մարմնանալոյ Բանին լո՛ւր դարձեալ Երեմիայի « Նա է Աստուած մեր ասէ, ընդ որում ոչ համարեսցի . այլ եգիտ զամենայն ճանապարհս իմաստութեան, եւ ետ զնա Յակոբայ ծառայի իւրոյ եւ Իսրայելի սիրեցելոյն ի նմանէ ։ Յետ այսորիկ յերկրի երեւեցաւ եւ ընդ մարդկան շրջեցաւ ։ Այս են գիրք հրամանացն Աստուծոյ եւ օրէնք Աստուծոյ որ կան յաւիտեան ։ Դա՛րձ Յակոբ՝ եւ բուռ՛ն հար ըզ

նմանէն ընդ ծագումն առաջին լուսոյ Նորա » ։ Երկրոր ծագումն լուսոյ Նորա եղոյց մարգարէս, նախ՝ զանճառ խոնարհութեան, որով ծագմամբ զընդհանուր տիեզերս լուսաւորեաց աստուածգիտութեանն ճառագայթիւք ․ իսկ զերկրորդն ի համաշխարհական յարութեանն , յորմէ զգուշացուցանէ մարգարէս զեբրայական ազգն և խրատէ զի առաջնոյ ծագմանն հաւատասցեն եւ մի՛ ապստամբք եղիցին որպէս եւ եղեննն իսկ ․ և օտարք վայելեսցեն ի փառս Նորա, այսինքն Հեթանոսք ։ » Դա՛րձ Յակոբ՝ և բո՛ւռն հար զնմանէն ընդ ծագումն առաջին լուսոյ Նորա » ։ « Մի՛ տար այլում զփառս քո և մի՛ զօգուտն քո ազգի օտարոտւոյ » ։

Ունկնդրի՛ր ըեր ասացելոյդ․ ոչ զմատղանոայոյն եւ եթ՝ Աստուծոյ Բանին մարգարէացաւ ․ այլ յայտնապէս գուշակեաց եւ զհեստութիւն ապստամբութեանն ըստ մարմնոյ Իսրայելին ։ Ոչ ինչ արդելուլեալ այլևս արտաքնոյ ուրումն ոչ յիւրոց կամաց մարգարէութեան, զոր և Մովսէս եդ յիւրում գրաւորութեանն « իբրեւ զի գեղեցիկ է տուն քո Յա՛կոբ՝ և խորանն քո Իսրայէլ » ։ Եւ յետ փոքր միոյ « եկեալ այր ի զաւակէ Նորա եւ տիրեսցէ՛ ազգաց բազմաց, և բարձրասցի՛ քան զԳոգայ թագաւորութիւն Նորա, եւ աճեսցէ՛ թագաւորութիւն Նորա » ։ Եւ դարձեալ « ցուցից զնմանէն, եւ ո՛չ այժմ ․ երանեսցի՛ց, եւ ո՛չ

խնօտոյ ։ Ծագեսցէ՛ աստղ ի Յակոբայ, եւ ծագեսցէ այր յԻսրայելէ և հարցէ՛ զիշխանսն Մովաբու, և առցէ՛ աւար զամենայն որդիսն Սեթայ» (57)։ Արդ՝ թէպէտ իբրև զմարդոյ զայսոսիկ ասաց. տե՛ս զիա՛րդ նշանակեաց զտիրելն նորա ամենայն Հեթանոսաց. Կամիցի՞ս գիտել ո՞ր է տիրելն նորա ամենայն ազգաց, ամենեցուն հաւատալ ի նա, զոր և դու իսկ տեսանես։

Ցուցից եւ զիշխանսն Մովաբայ, զոր եհար Քրիստոս զսատանայ հանդերձ դիւօքն որք զօրացուցանէին ի նոսա զկռոցն մոլորութիւն եւ զպաշտամունսն. քանզի Մովաբացւոցն և որք ընդ նոքօք (58) ազգացն կռապաշտութիւնք զարշելագոյնք էին քան զամենայն ազգաց. զի և զանդամս առնացի և կանացի, որովք անառակ ցանկութիւնքն կատարին, պաշտէին։ Եւ զիա՛րդ բարձրացաւ քան զԳոգայ թագաւորութիւնն նորա. զի նորայն որպիսի ինչ էր՝ երկրաւոր էր, իսկ Քրիստոսին երկնաւոր է։ Եւ զի այնպիսի՛ է Քրիստոսի թագաւորութիւնն, մի ստուգաներ զՀոգւոյն առաջեալն ի Դաւթայ «Աստուած՝ ասէ, զիրաւունս քո արքայի տո՛ւր, եւ զարդարութիւնս քո՝ որդւոյ թագաւորի»։ Եթէ ո՞չ է երկնաւոր և երկրաւոր թագաւորի որդի Քրիստոս՝ ըստ Աստուածութեանն Որդի Աստուծոյ, եւ ըստ մարդկութեանն՝ Դաւթի, որպէս բազում անգամ ասացաք։ Դարձեալ ի վերայ ածէ «Մնասցէ՛, ա-

ոչ, ընդ արեւու յառաջ քան զլուսին յազգաց ազգս, եւ տիրեսցէ՛ նա ի ծովէ մինչեւ ի ծով, եւ ի գետոց մինչեւ ի ծագս տիեզերաց . եւ երկիր պագցեն նմա ամենայն ազգք երկրի, եւ ամենայն ազգք ծառայեսցեն նմա . աղօթեսցե՛ն առ նա յամենայն ժամ եւ զօրհանապազ օրհնեսցեն զնա ։ Եղիցի՛ անուն Տեառն օրհնեալ . զի յառաջ քան զարեւ է անուն նորա ։ Օրհնեսցի՛ն նովաւ ամենայն ազգք երկրի եւ ամենայն ազինք երանեսցե՛ն նմա » (59) ։ Արդ՝ ո՛ ոք ոչ զարհուրեսցի ի վերայ սոսկ մարդոյ զաւակի Դաւթի զայսոսիկ իմանալ, եւ ո՛չ ի վերայ ըստ մարմնոյ որդւոյն Դաւթի . իսկ ըստ Աստուածութեանն՝ Բանի և Որդւոյն Աստուծոյ, և ի ձեռն խաղաղականն հաւաստոյն տիրել եւ ո՛չ սրոյ կոտորածի և անողորմ արեանհեղութեանց և գերութեանց ։ Զայն ինոյն Սաղմոսին յայտնապէս ասէ « ծագեսցէ յաւուրս նորա արդարութիւն և բազում խաղաղութիւն մինչեւ սպառեսցի լուսին » (60) ։

Դարձեալ եւ մարգարէին Միքէիւ ասաց Աստուած « Եւ դու Բեթղահէմ՝ տունդ Եփրաթայ սակաւաւոր , իցես լինել ի հազարաւորս Յուդայ ։ Ի քէն ելցէ՛ ինձ լինել առաջնորդ որ հովուեսցէ՛ զժողովուրդ իւր զԻսրայէլ ։ Եւ ելք նորա ի սկզբանէ աւուրց աշխարհի » (61) ։ Եւ սոսկ մարդոյ ելք ո՛չ է հնար լինել ի սկզբանէ աշխարհի ։ Եւ Եսայիայիւ

դարձեալ ասաց Աստուած « Մա՛րդ է՝ և ո՞վ ծանիցէ զնա . անճկալութիւն Իսրայելի Տէր ։ Ամենեքեան որ թողին զքեզ՝ ամաչեսցե՛ն, հեռացեալքն յերկրի գրեսցին . զի թողին զՏէր զաղբիւր ջուրց կենաց » (62) ։ Բայց Իսրայէլ կոչէ ոչ զանհաւան Հրէայսն . այլ որք տեսին զԲանն Աստուծոյ եւ հաւատացին եթէ Աստուած յԱստուծոյ է . զի Իսրայէլ տեսանող թարգմանի ի լեզու եբրայեցւոց (63) ։ Արդ՝ տեսող զի Իսրայէլ կամի Աստուած, լո՛ւր ի ձեռն Եսայեայ ասացելոյն » Մանուկ ծնաւ մեզ, որոյ իշխանութիւն իւր ի վերայ ուսոց իւրոց . եւ անուն կոչեսցի նորա հրեշտակ մեծի խորհրդոյ, սքանչելի խորհրդակից, Աստուած հզօր, իշխան խաղաղութեան, հայր հանդերձելոց աշխարհին » (64) ։ Հրեշտակ ասաց վասն ասելոց մեզ զմարգարէութեանն . իսկ սքանչելի խորհրդակից եւ Աստուած հզօր վասն անուան Աստուածութեանն ։ Եւ ի վերայ բերէ զայսոսիկ « Մե՜ծ է իշխանութիւն նորա, եւ խաղաղութեան նորա չիք սահման ։ Յաթոռն Դաւթի նստցի և զթագաւորութիւն նորա փառաւորեսցէ՛ և զօրացուսցէ՛ զնա իրաւամբք և արդարութեամբ յայսմհետէ եւ յաւիտեանս ժամանակաց » (65) ։

Արդ՝ եթէ ոչ նստաւ յաթոռն Դաւթի եւ ոչ թագաւորեաց Իսրայելի . զի ո՛չ զանցաւոր աթոռոյ սա է . այլ զայնմանէ զորմէ ասաց Աստուած ցԴաւ-

ւիթ « մինչեւ ցյաւիտեանս պատրաստեցից զզաւակ քո, եւ շինեցից յազգէ յազգ զաթոռ քո որպէս զաթոռս երկնից » (66) ։ Եւ ապա զի՞արդ կամ ո՞ր աթոռ էր Դաւթի որ եղեւ յաւիտեան կամ որպէս զաւուրս երկնից, եթէ ոչ՝ երկնաւոր թագաւորութիւնն ըստ մարմնոյ Դաւթի որդւոյն որ է Քրիստոս, զորմէ և ասայն իսկ « յաթոռն Դաւթի նստցի եւ զթագաւորութիւն նորա փառաւորեսցէ եւ զօրացուսցէ իրաւամբք և արդարութեամբ յայսմհետէ և յաւիտեանս ժամանակաց » ։ Յայտ է թէ առաւել փառաւորագոյն և զօրաւորագոյն թագաւորութիւնն Քրիստոսի՝ ըստ մարմնոյ որդւոյ Դաւթի, փոխեաց զնորա թագաւորութիւնն ի վեր յերկինս. ի յաւիտենականն եւ յանհասանելին ։

Պարտիս ուշադրել եւ Եսայեայ « Ահա՛ կոյս յղութիւն կալցի եւ ծնցի որդի, եւ կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ, » այսինքն ընդ մեզ Աստուած » (67) ։ Ունիմ եւ զայլ վկայութեանց յոլովագոյն հոյլս զոր համառօտել օգտակարագոյն վարկայ . զի մի լսողքն զձանձրութիւն ախտասցին ։ Թէ կամիցիս՝ լո՛ւր և վասն անճառ խոնարհութեան չարչարանացն նորա զորս կամաւորաբար կրեաց համբերեաց ըստ նոցին կանխաւ մարգարէիցն գուշակման ։ (68) Եսայեաւ ասաց Հոգին սուրբ « ես ոչ խստանամ և ոչ ընդդէմ դառնամ . զթիկունս իմ ետու ի հար-

ուածս և զծնօտս իմ յապտակս ։ Եւ զերեսս իմ ոչ դարձուցից յամօթոյ ընդ երեսս թքանելոյ» (69) ։ Զինչ եւ ի ձեռն Զաքարեայ ասաց Աստուած «Եթէ բարւոք թուի յաչս ձեր՝ տո՛ւք զվարձս իմ․ ապա թէ ոչ՝ զրոյց արարէք ։ Եւ կշռեցին զվարձս իմ երեսուն արծաթի» (70) ։ Եւ այս գործեցաւ ի Փրկիչն, վաճառիլ յիւրմէ աշակերտէն, և մատնիլ խմաւ, որպէս և այլ մարգարէութիւնքն որ կատարեցան ի Տէր, զորս պատմեն սուրբ Աւետարանքն․ զոր թէ կամիցիս, ընթերցիր խնամով եւ այսպէս գտցե՛ս ։ Ընդ բազմաց եւ Դաւիթ ասաց մարգարէութեամբ վասն տացին «որ ուտէր զհաց իմ՝ մեծացոյց ի վերայ իմ ըզգարշապար իւր» (71) ։ Լո՛ւր եւ միւս ազդմանն Եսայեայ «Ահա՛ւասիկ ի մի՛տ առցէ մանուկ իմ, վերասցի եւ բարձրասցի յոյժ ։ Զորօրինակ զարմասցին ազգք բազումք ի վերայ քո, եւ կարկեսցեն թագաւորք զբերանս իւրեանց ի վերայ քո․ զի որոց ոչ պատմեցաւ վասն նորա, տեսցեն, եւ որոց ոչ իցէ լուեալ, ի մի՛տ առցեն ։ Տէ՞ր՝ ո՛ հաւատաց ի լուր մեր․ եւ բազուկ Տեառն ո՛ւմ յայտնեցաւ ։ Պատմեցաք առաջի նորա իբրև զմանուկ, իբրեւ զարմատ ի ծարաւուտ երկրի ։ Տեսաք մեք զնա, և ոչ գոյր նորա տեսիլ, և ոչ գոյր նորա գեղեցկութիւն․ այլ տեսիլ նորա անարգ, նուազեալ քան զամենայն որդւոց մարդկան ։ Այր մի ի հարուածս, եւ գիտէ համբերել

ցաւոց. զի դարձուցեալ զերեսս իւր անարգեցաւ և ոչ ինչ համարեցաւ ։ Նա զմեղս մեր բառնայ և վասն մեր չարչարի . և մեք համարեցաք զնա ի ցաւս և ի հարուածս և ի չարչարանս իբրև յԱստուծոյ ։ Բայց նա վիրաւորեցաւ վասն մեղաց մերոց և պատժեցաւ վասն մերոյ անօրէնութեան. խրատ խաղաղութեան մերոյ ի նմա. և նորա վիրօքն բժշկեցաք ։ Ամենեքեան որպէս ոչխարք մոլորեալք, այր ի ճանապարհի իւրում մոլորեցաւ ։ Եւ Տէր մատնեաց զնա առ մեղս մեր . և նա առ վշտին ոչ բանայ զբերան իւր ։ Իբրև ոչխար ի սպանդ վարեցաւ . իբրև որոջ առաջի կտրչի անմռունչ կայ . այնպէս ոչ բանայ զբերան իւր ։ Առ խոնարհութեան նորա դատաստան նորա բարձաւ . եւ զազգատոհմն նորա ո՞ պատմեսցէ . զի բառնան յերկրէ կեանք նորա ։ Յանօրէնութեանց ժողովրդեան իմոյ ի մահ վարեցաւ . զի անօրէնութիւն ոչ գործեաց, եւ ոչ գտաւ նենգութիւն ի բերան նորա » (72) ։

Արդ՝ այսքան վկայութիւնս Հոգւոյն սրբոյ զորս խօսեցաւ ի ձեռն ծառայից իւրոց Մարգարէից միայն Մահմետին քոյ բանիւ ուրանա՞ս և սո՞ւտ առնես ։ Եւ ո՞ւր է իւր իսկ օրինադրին քո հրամանն առանց երկուց վկայից ոչ հաստատել ։ Եւ ոչ կարի յոյժ փոքրագոյն է իրս ։ Իսկ զիա՞րդ այսպիսի անհագին հայհոյութիւն միայն նորա բանիւ խօսիլ ոչ պատկառիս ։ Զքո

օրինաւորին զանհաւին ստուգութիւնն մոռացա՞ր ար-դեօք. թէ եւ գիտես իսկ ոչ զՄարիամ՝ զԱմրամեան դուստրն, զԱհարոնի քոյրն, նա է մայր Տեառն մե-րոյ։ Նա ի ժամանակսն յայնսանէ մինչեւ ցմայրն Տեառն են ամք երկու հազար պակաս երեսնիւ (73), իսկ ազգք երեսուն երկու։ Թէ արդարեւ մարմնե-ղէն եւ ոչ քարեղէն ունիցիս երեսս՝ ամաչեսցես ընդ այդքան յայտնութիւնս յայտնի ստութեանց (74)։ Զի ի Յուդայի ցեղէն խոստացաւ Աստուած զգալու-ստն Քրիստոսի. եւ Մարիամ՝ Ամրամայ դուստրն ի Ղեւեայ էր, եւ այնքան երկայագոյն ժամանակօք զոր ասացի։ Բայց յոլովագոյն եւ զգայագոյն ստու-թեանց ձերոյ՝ որքան անհնա՛ր է զալ զհետ, սակայն թէ եւ առասպելք քո անհաստատութեանց ամբաս-ստութեանց գոն խորք, փոքր դուլիւ ճշմարտու-թեան ցամաքեցուցուք (75)։

Ասացեր վերադրելով զօրինացն եւ զԱւետարա-նացն եւ զսաղմոսացն թէ խանգարեցիք դուք եւ Հրէայք, եւ ի վերայ ածեր թէ՝ վկայ եմ եթէ յԱս-տուծոյ են։ Եթէ մերքս չխոթեալ են և ապականեալ, քոյն ո՞ւր է, որում վկայեցեր։ Աղէ՛ ցո՛յց ինձ զայլ գիրս Մովսիսի եւ զՄարգարէիցն եւ զՍաղմոսս Դաւթի, զոր տեսցուք, կամ զայլ Աւետարան։ Ո՜հ ամօթո՛յ է արժանի ստութիւնդ, եւ առասպելագոյն քան զամենայն ստութիւն։ Գո՛նեա ի վերայ ա՛ծ

եթէ ես ոչ էի անդ, եւ մի՛ դուք հաւատայք ։ Ո՞վ այր դու՝ զվկայութիւնդ, որ յայսց որ առ մեզ Աւետարանայս առնուս, թէպէտեւ զնոսին բռնադատես եւ այպպնես. եւ տակաւին ասես եթէ զայսոսիկ խանգարեալէ ձեր ։ Աղէ՛ յայնմ Աւետարանէ խօսեաց զոր ետես Օրէնսդիրն քո, ապա գիտեմ եթէ զճշմարիտն ասես ։

Եւ որ ասացեր եթէ մի են հաւատք . արդարեւ մի են հաւատք, եւ մի մկրտութիւն, եւ ո՛չ գոյ այլ հաւատ աւանդեալ յԱստուծոյ, եւ ո՛չ պատուէր տրւեալ (76) ի մարդիկ ։ Եւ որ ասացերն չաղօթեսցին օրէնքն յոր կողմն աղօթէք . եւ ո՛չ հաղորդեսցին ըղ ձեր հաղորդութիւնդ ։ Այս բանջաղանաց և ընդ վայր խնդրոց են հոյլք . զի կողմն աղօթից մարգարէից չերեւէր ։ Բայց դու միայն յարգել կամիս զհեթանոսական զոհանոցն զոր տուն Աբրահամու անուանեցեր ։ Եւ ո՛չ ուրեք յաստուածային գիրս գտանեմք զԱբրահամ հանեալ ի տեղիսն յայնոսիկ, զոր օրէնսդիրն քո չարջանակի երկրպագել ազգիդ ձերոյ ուսոյց ։ Իսկ Հաղորդութեան խորհրդոյն ի տեղւոջ իւրում եղից զպատասխանին ։ Այլ այժմ նախ՝ զԱւետարանայն աստուածատուր տեսցուք թէ՝ արդարեւ այսպէս իցէ որպէս դուդ կարծես ։ Աղօթեայ արդարեւ Յիսուս ըստ մարդկութեանն զոր էառ ի մէնջ առ ի զմեզ ուսուցանելոյ, եւ ըստ Աստուա-

ծութեանն ոչ կարօտ աղօթից։ Այլ յաղօթելն ոչ ասէր որպէս դուք գրեցեր, այլ թէ « Հա՛յր՝ եթէ հնա՛ր է՝ անցցէ զբաժակս զայս յինէն » (77) ցուցանելով թէ մարդ եմ ճշմարիտ. զի թէ յԱստուածութենէն ոք թերի զԱստուծոյ Բանն խոստովանի, կորուսանէ զյոյս կենաց իւրոյ. Նոյնպէս եւ եթէ ի մարդկութեանս ոք կատարեալ զնա ոչ խոստովանի ։

Բայց տե՛ս զճշմարտութիւն Աւետարանացն եւ զձեր հաւատացելոցս. զի եւ խոնարհագոյնքն եւ բարձրագոյնքն ողջ պահին ի գիրս Աւետարանացն ։ Եւ եթէ ապականէաք կամ մեք կամ առաջինքն. ընդէ՞ր զխոնարհագոյն ձայնսն յԱւետարանացն ոչ բառնայաք ։ Ասաց « ոչ կարէ որդի մարդոյ յանձնէ առնել եւ ոչ ինչ. այլ Հայրն որ յիս բնակեալ է, նա գործէ զգործն » (78) ։ Եթէ հաւատաս ցայնմ գրելոյն « ոչ կարեմ յանձնէ առնել եւ ոչ ինչ » հաւատա՛ եւ այնմ թէ՝ » Հայրն որ յիս բնակեալ է, նա գործէ զգործն « Եթէ հաւատաս երկիւղին ի ժամ մահուն կենարար, եւ քրտանցն որ վասն Ադամայ քրտանցն կրեաց, զոր ինքն անմարմնաբար ասաց ցԱդամ « Քրտամբք երեսաց քոց կերիցե՛ս զհաց քո » (79) ։ Եւ առ ի հրեշտակէն զօրանալոյ, որ ոչ վասն զնա զօրացուցանելոյ. այլ հրեշտական զկարծիս Աշակերտացն նորա հաստատելով. զի իբրեւ ընդ մարդ լուկ նայէին եւ մարդ սոսկ կարծէին ։

Վասն այնորիկ զի զմնեա ի հրեշտակին խօսակցու-
թենէ ի վերքան զմարդ սոսկ երեւիցի ։ Արդ՝ եթէ այսմ հաւատաս, հաւատամ դու եւ այնմ որ ասաց ի նմին գիրս « ես դնեմ զանձն իմ անձամբ իմով . եւ դարձեալ անձամբ իմով առնում զսա » (80) ։ Եւ դարձեալ՝ ոչ ասաց առաքեաց զիս Աստուած առ ախեզերս . եւ զառնամ առ նա, որպէս և դուդ գրեցեր . այլ թէ՝ « որ առաքեացն զիս Հայր՝ ընդ իս է » (81) ։ Եւ դարձեալ « Ելի ի Հօրէ, եւ եկի յաշխարհ, կամ դարձեալ թողում զաշխարհ եւ երթամ առ Հայր » (82) ։ Բայց ուր Հայր գրեալէ, դու զայն Տէր կամ Աստուած շրջես, եւ անձամբ զանձն քո արդարացուցանել կարծես . Ցոյժ գործես անիրաւութիւն. զմինս եւ եթ ոչ առեցեր . այլ թէեւ ըզ վկայութիւնն ուղիղ եդեր՝ հաւանիլ ոչ կարացեր « որ հաւատայ յիս, ոչ հաւատայ յիս . այլ յայն որ առաքեացն զիս » (83) ։ Այսինքն է ոչ յերեւելի մարդս . այլ յաներեւոյթ Աստուած բանս ։ Եւ դարձեալ « որ անարգէ զիս, անարգէ զառաքիչն իմ » և « որ տեսանէ զիս՝ զայն տեսանէ, որ առաքեացն զիս »(84) ։ Առաքի իբրեւ մարդ և առաքէ իբրև Աստուած ։ Ասաց Աշակերտացն « Հայր իմ մեծ է քան զիս »(85)։Քան զմարդկութիւնն է մեծ, թէ ոչ՝ զիա՞րդ դարձեալ ասէր « Ես և Հայր իմ մի եմք »(86)։ Ասաց յաղօթսն որպէս և գրեցեր « զի ծանիցեն զքեզ

ճշմարիտ Աստուած՝ եւ զոր առաքեցեր զՅիսուս Քրիստոս » (87) ։ Ահա ի նոյն պատուի Աստուածութեանն եդ զՅիսուս Քրիստոս ։ Արդ եթէ սոսկ մարգարէ էր, արժա՞ն էր ասել զի ծանիցեն զմիայն ճշմարիտ Աստուած եւ զՄովսէս եւ զայլ մարգարէս եւ ապա զՅիսուս ։

Արդ՝ ի բա՛ց թող զբաջաղանօք լի իմացուածսդ. քանզի էր Աստուած կատարեալ, եւ առմամբ մարդկութեանս եղեւ մարդ ճշմարիտ ։ Եւ զխոնարհագոյնսն գտանեմք զնմանէն ասացեալ իբրեւ զմարդոյ, որպէս բազում անգամ ասացի ։ Փորձի ի սատանայէ ի ձեռն ծածկութիւն այսինքն է մարդոյն. քանզի լուեալ սատանայի զձայնն որ ի մկրտութեանն ասելով Աստուծոյ « Դա՛ է որդի իմ սիրելի՝ ընդ որ հաճեցայ » (88) զարհուրեալ սոսկայր. եւ ո՛չ գիտէր վասն ո՞յր արդեօք եղեւ ձայնն ։ Իսկ Տէրն զպահոյն զքառասնօրեայ ժամանակ առաջի արկեալ, որպէս ձայնիւ ինչ ցուցանէ զինքն եւ վասն իւր եղեալ ըզ ձայնն. զի միշտ ընդ առաքինութեան փութացողն նախանձի եւ տրտմի չարն. եւ մատուցեալ տեսանէ մարդ զՏէրն ։ Իսկ նա իբրեւ գիտակ ամենայնի՝ իբրեւ մարդ առնէ նմա զպատասխանին չարժանաւորեալ զթշնամին մեր, և յայտնել զկատարելութիւն խորհրդոյն ։ Այլ զիա՛րդ ոչ ընթերցար եթէ յետ կատարելոյ փորձութեանն ի բաց եկաց ի նմանէ

սատանայ առժամանակ մի . եւ հրեշտակք մատեան եւ պաշտէին զնա : Եւ հրեշտակք զոնսկ մարդ պաշտե՞ն : Ի ճշմարտութենէն եւ եթ, որպէս երեւի, փախչիս, եւ ոչ այլ ինչ կամիս : Եւ այս է զոր ասեմ՝ աստուածաբանել զմեր Տէրն ընդդիմանաս՝ եւ մարդ սոսկ խոստովանիս յօրինակ ածելով զԱդամ թէ՝ եւ նա առանց ծնողաց յԱստուծոյ ծնեալ եղեւ :

Իսկ զկենարար մահուանէն որ լուեալ ես ես ասելով ոչ ումեք կարող գոլ ի մարդկանէ սպանանել զնա : Եւ եթէ սոսկ մարդ է ըստ քո կարծեացդ, զի՞նչ անհնարին է մեռանել մարդոյ : Արդ՝ քաջ մի՛տ դիր եւ խորհեա՛ յայսմիկ . եւ զի դու զխոնարհագոյնն որ յաղագս Տեառնն ձայնս հեշտութեամբ ընդունիս, եւ զբարձրագոյնն ի բաց լքանես եւ ընկենուս : Լո՛ւր նոյին իսկ Աւետարանայն յաղագս այսոցիկ : Յովհաննէս Աւետարանիչ յաղագս որոյ ասելով « որ հաւատայ յՈրդի, ընդունի զկեանսն յաւիտենականս . եւ որ ոչն հնազանդի Որդւոյ, ոչ տեսցէ զկեանսն . այլ զբարկութիւնն Աստուծոյ » (89) : Եւ դարձեալ Յովհաննէս Զաքարիայի որդին ասէ « Ահա՛ Յիսուս՝ Գառն Աստուծոյ, որ բառնայ զմեղս աշխարհի » (90) : Եւ նոյն ինքն սկիզբն Յովհաննու Աւետարանին « ի սկզբանէ էր Բանն, եւ Բանն էր առ Աստուած, եւ Աստուած էր Բանն : Նա էր ի

սկզբանէ առ Աստուած ։ Ամենայն ինչ նովաւ եղեւ և առանց նորա եղեւ և ոչ ինչ և այլն »(81)։ Եւ նոյն ինքն Աստուծոյ Բանն հանդերձ մարմնով ասէր « որ ետես զիս՝ ետես զՀայրն իմ »(92). « եւ որպէս գիտէ զիս Հայր՝ գիտեմ և ես զՀայր »(93). « և որ առաքեաց զիս Հայր՝ ընդ իս է »(94). « Ելանեմ ես առ Հայրն իմ եւ առ Հայր ձեր . եւ Աստուածն իմ եւ Աստուած ձեր » (95). Հայր նորա բնութեամբ, եւ ձեր՝ շնորհօք . զի « որք ընկալան զնա, ասէ, ետ նոցա իշխանութիւն որդիս Աստուծոյ լինել, որոց հաւատացեն յանուն նորա » (96). իսկ Աստուած նորա՝ ըստ մարմնոյն ընդ մեզ, և մեզ՝ բնաբար ։ Առաքի իբրեւ զմարդ, և առաքէ իբրեւ զԱստուած « որպէս առաքեաց զիս Հայր, եւ ես առաքեմ զձեզ » (97)։ Ըստ այսմիկ եւ ամենայն ձայնք Աւետարանչայն ։

Իսկ այն որ ասացերն, անձնիշխանաբար զթըլպատութիւնն մեզ ի մկրտութիւն փոխել, եւ զզոհսն ի հաղորդութիւն օրհնութեան հացի եւ բաժակի ։ Զայս ո՛չ մեք . այլ նոյն ինքն Տէրն զօրինակս որ ի հնումն՝ ի ճշմարտութիւն օրինացն փոխեաց ըստ մարգարէութեանն Երեմիայի որ ասէ « Ահա աւուրք գան, ասէ Տէր, և ուխտեցից տանդ Իսրայէլի եւ տանդ Յուդայ ուխտ նոր . ոչ ըստ ուխտին զոր ուխտեցի ես ընդ հարան նոցա յաւուր յորում հանի

զնոսա յերկրէն Եգիպտացւոց»(98)։ Եւ զո՞ր ուխտ եդ ընդ հարսն Նոյա յերկրին Եգիպտացւոց, եթէ ոչ զարիւն զատկին ի Պասքային զոհինքն ի Զատկին զորմէ ասացն «այս օրէն կացցէ՝ յազգս ձեր»(99)։

Արդ՝ արեամբ անասուն զատկին ապրեցան որդիքն Իսրայելի ի սատակչէն. իսկ արեամբ անարատ զատկին ո՞չ ապրեսցիմք ի յաւիտենական մահուանէն։ Ի ժամանակի չարչարանացն առեալ հաց՝ օրհնեաց, եբեկ եւ ետ աշակերտացն. այսպէս եւ զբաժակն գինւոյն՝ առեալ մարմին եւ արիւն իւր, պատուիրեալ զայս առնել ի յիշատակ իւր՝ նշանակելով զիւր խորհեւ զամբիծ եւ զանարատ զատկին զենումն։ Զի եւ այն զատն ճշմարիտ զայս նշանակելով ուսուցանէր զատն. զի ոչ ընթերցար զգիրս եւ ոչ զանուանս զոր կոչեցին Ամա աստուածային գիրք՝ Բան, Որդի, Ճառագայթ, Կերպարան Աստուծոյ; Կերպարան ծառայի, Աստուած, Մարդ, Հրեշտակ, Մարգարէ, Կարթ, Տէր Տերանց, Ծառայ, Գառն, Ոչխար, Հովիւ, Անդրանիկ յեղբարց, Անդրանիկ ի մեռելոց։ Ոչ ինչ արգելէր զիւրաքանչիւր զայսոսիկ անուանս ցուցանել թէ ընդէ՞ր եւ ըստ ո՞րում պատճառի անուանեցան, եթէ ճանաչէր զքեզ խնդրող արդարութեան։

Իսկ զթլփատութիւնն, որ ասացեր՝ մեզ փոխել ի մկրտութիւն. զթլփատութեանն խորհուրդ ոչ գի-

սկզբանէ առ Աստուած ։ Ամենայն ինչ նովաւ եղեւ և առանց նորա եղեւ և ոչ ինչ և այլն »(81)։ Եւ նոյն ինքն Աստուծոյ Բանն հանդերձ մարմնով ասէր « որ տեսս զիս՝ տեսս զՀայրն իմ »(92). « եւ որպէս գիտէ զիս Հայր՝ գիտեմ և ես զՀայր »(93). « և որ առաքեաց զիս Հայր՝ ընդ իս է »(94). « Ելանեմ ես առ Հայրն իմ եւ առ Հայր ձեր . եւ Աստուածն իմ եւ Աստուած ձեր » (95). Հայր նորա բնութեամբ, եւ ձեր՝ շնորհօք . զի « որք ընկալան զնա, ասէ, ետ նոցա իշխանութիւն որդիս Աստուծոյ լինել, որոց հաւատասցեն յանուն նորա » (96). Իսկ Աստուած նորա՝ ըստ մարմնոյն ընդ մեզ, և մեզ՝ բնաբար ։ Առաքի իբրեւ զմարդ, և առաքէ իբրեւ զԱստուած « որպէս առաքեաց զիս Հայր, եւ ես առաքեմ զձեզ » (97) ։ Ըստ այսմիկ եւ ամենայն ձայնք Աւետարանչայն ։

Իսկ այն որ ասացերն, անձնիշխանաբար զԹըլպատութիւնն մեզ ի մկրտութիւն փոխել, եւ զզոհսն ի հաղորդութիւն օրհնութեան հացի եւ բաժակի ։ Զայս ո՛չ մեք . այլ նոյն ինքն Տէրն զօրինակս որ ի հնումն՝ ի ճշմարտութիւն օրինացն փոխեաց ըստ մարգարէութեանն Երեմիայի որ ասէ « Ահա աւուրք գան, ասէ Տէր, և ուխտեցից տանդ Իսրայելի եւ տանդ Յուդայ ուխտ նոր . ոչ ըստ ուխտին զոր ուխտեցի ես ընդ հարսն նոցա յաւուր յորում հանի

զնոսա յերկրէն Եգիպտացւոց» (98) ։ Եւ զո՞ր ուխտ եդ ընդ հարսն Նոյա յերկրին Եգիպտացւոց, եթէ ոչ զարիւն զատկին ի Պասքային աւուրսն ի Զատկին զորմէ ասացն «այս օրէն կայցէ՛ յազգս ձեր» (99)։

Արդ՝ արեամբ անասուն զատկին ապրեցան որդիքն Իսրայելի ի սատակչէն. իսկ արեամբ անարատ զատկին ո՞չ ապրեցիմք ի յաւիտենական մահուանէն։ Ի ժամանակի չարչարանացն առեալ հաց՝ օրհնեաց, եբեկ եւ ետ աշակերտացն. այսպէս եւ զբաժակն զինւոյն՝ առեալ մարմին եւ արիւն իւր, պատուիրեաց զայս առնել ի յիշատակ իւր՝ նշանակելով զիւր խաչն զամբիծ եւ զանարատ զատկին զենումն ։ Զի եւ այն զատն ճշմարիտ զայս նշանակելով ուսուցանէր զատն. զի ոչ ընթեռցար զգիրս եւ ոչ գիտացես զոր կոչեցին Աստուածային գիրք՝ Բան, Որդի, Ճառագայթ, Կերպարան Աստուծոյ; Կերպարան ծառայի, Աստուած, Մարդ, Հրեշտակ, Մարգարէ, Կարթ, Տէր Տերանց, Թագաւոր, Գառն, Ոչխար, Հովիւ, Անդրանիկ յեղբարց, Անդրանիկ ի մեռելոց ։ Ոչ ինչ արգելէր զիւրաքանչիւր զայսոսիկ անուանս ցուցանել թէ ընդէ՞ր եւ ըստ ո՞րում պատճառի անուանեցան, եթէ ճանաչէիր զքեզ խնդրող արդարութեան ։

Իսկ զԹլպատութիւնն, որ ասացեր՝ մեզ փոխել ի մկրտութիւն. զԹլպատութեանն խորհուրդ ոչ գի-

տայեր, եթէ ընդէ՛ր հաճեցաւ Աստուած յայնմ անագամի ծածկագոյնի դնել զուխտ իւր և ոչ յայլ փառաւորագոյն և յայտնի անդամս ։ Եւ զի թէ արդեօք զայն ո՞չ գիտիցես թէ Աբրահամ նախքան զթլփատութիւնն եղեւ հաճոյ Աստուծոյ. եւ նշանակ հաւատոյն և սիրոյն որ առ Աստուած՝ ընկալաւ զթլփատութեանն հրամանս։ Բայց թէ ընդէ՞ր ըստ մերադրելոյն ի ծածուկ անդամի անդ. այլ քեզ ոչ է գիտելի։ Բայց մեք զթլփատութիւն սրտի հոգւով՝ հրամանս առաք ընդունիլ և ոչ զարտաքին մարմնոյ. այլ ըստ մերագոյն առաջելոցդ խոստմանն Աստուծոյ նոր ուխտ ուխտել ։ Եւ եթէ զթլփատութիւնն, եւ զզոհսն եւ ըզ շաբաթս ոչ բառնայր ճշմարիտ օրինացն Յիսուսին Քրիստոսի, ապա զո՞ր նոր ուխտ ուխտէր ։ Արդ՝ արժանի էր յայդմիկ ամաչել քեզ. զի կամեցեալ քո ի յետին ժամանակս, յոր ազատեաց Աստուած զմարդկան ազգ ի կապանացն օրինաց՝ վրէժխնդիր թըլփատութեանն լինել, յոյժ ձաղեցեր զնա. քանզի ի Ճնումն հրամայեաց Աստուած թլփատել զամենայն արու յաւուր ութերորդի. իսկ դուք ոչ զարս, այլ եւ զկանայս, յորում եւ իցէ հասակի՝ անօթալեօք խայտառակէք (100) ։

Այլ զաստուածային մկրտութենէն կանխամարգարէին Եզեկիէլի Աստուած գուշակեաց ասելով «Եւ ցանեցից ի վերայ ձեր ջուր սուրբ. եւ

որբեսջիք յամենայն պղծութեանց ձերոց, եւ յամենայն կռոց ձերոց սրբեցից զձեզ » (101) ։ Ջնոյն եւ Տէրն յԱւետարանի անդ պատուիրեաց « Գնացէ՛ք այսուհետեւ . աշակերտեցէ՛ք զամենայն հեթանոսըս, մկրտեցէ՛ք զնոսա յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ » (102) ։ Եւ կատարեցաւ բանն, որ ի մարգարէէն, եթէ « եդի՛ զքեզ ի լոյս հեթանոսաց » եւ զարձեալ « ժողովուրդ որ նստէր ի խաւարի՝ ետես զլոյս մեծ » ։

Իսկ զկիւրակէն ոչ փոխանակ շաբաթու եդաք որպէս դու սուտ ես կարծել անխորհրդաբար ։ Դու զուրբաթ օր ժողովոց կարգեցեր՝ զպատճառս և ոչ մի խրատանաց զիտելով ։ Այլ վասն յարութեան Տեառն ըստ մարմնոյ, որով մեզ զյարութիւն խոստացաւ, յաղօթս և ի գոհութիւն զԱրարչէն պարապիմք վասն արդամ՛բեւ մեծի եւ այսպիսի խորհրդոյ . քանզի յաւուրն ի սկզբանն յորում ասաց « եղիցի լոյս, եւ եղև լոյս »(103) . ի սմին աւուր զլոյս աւետեաց յարութեանն ծագեաց ազգի մարդկան յարութեամբ ըստ մարմնոյ միածնի իւրոյ Բանին ։ Եւ ոչ հրէաբար զատարկանալ ի սմա հրամանս ընկալաք , մինչզի եւ զկերակուրս անգամ հրէաբէն ոչ պատրաստել ի սմա ։ Բայց դու որովհետեւ մարգարէիցն եւ իւր իսկ Տեառնն ոչ հաւատաս, զի՞որդ զճշմարիտ աւանդութիւնս մեր Քրիստոնէիցս առ կարեւորս ունիցիս ։

զի վասն քո եւ նմանեաց քոյ ասաց . Աստուած ի ձեռն մարգարէին « Տեսէք արհամարհոտք՝ եւ արհամարհեցարո՛ւք եւ եղծարո՛ւք . զի գործ մի գործեմ ես յաւուրս ձեր, գործ որում ոչ հաւատայցէք եթէ ոք պատմեսցէ ձեզ »։

Ոչ եւս եմ մոռացեալ զոր ասացերն թէ « զիա՛րդ էր հնար Աստուծոյ ի մարդկային արգանդի բնակել ի մէջ արեան եւ մարմնոյ եւ պէսպէս աղտեղութեանց » Որպէս կարծեմ՝ տեղեակ ես եթէ բազում են արարածք Աստուծոյ, զորս հրամանաւ և եթ յոչ լինելոյ բանիւ ի լինելութիւն էած ասելով ի ձեռն սաղմոսին թէ « նա ասաց, եւ եղեն . ինքն հրամայեաց, եւ ստեղծան » (104) ։ Եւ զայնս զորս թերեւս պատուականագոյնս եւ մաքրագոյնս քան քոց խորհրդոց քան զմարդն կարծիցես, զերկինն և զերկնաւորսն արեգակամբ և լուսնիւ և աստեղօք, և զերկիր բուսովք և բոլոր կենդանեօք։ Իսկ զայս կենդանիս, որ աղտեղիս ասացեր , ոչ հրամանաւ . այլ ամենակարող եւ ամենասրբովքն իւրովք ստեղծեաց ձեռօք, եւ փչմամբ իւրով հոգիացուցեալ կենդանացոյց ։ Արդ՝ ո՛չ էր ըստ Աստուծոյ պիղծ բնութեանս մերոյ կազմած որ յայնոցիկ արարչագործ ձեռացն իւրոց ստեղծեալ, որ և ի պատկեր ստեղծողին ի նմին Արարչէ պատուեցաւ ։ Եւ արդ՝ մի հայհոյեր զբաջի արարողն նորա . զի Աստուծոյ պիղծ եւ ո՛չ մի

ինչ է որ յինքենէ եղեն բայց ի մեղաց, զոր ոչ ստեղծ Աստուած ի մարդն և ոչ հրամայեաց ։ Այլև ոչ գոյ ինչ պատուականագոյն արարած քան զմարդն վասն որոյ արար խակ զամենայն ։ Արդ՝ զոր այսքան պատուոյ արժանի արար, զնոյն իւր պատկերն առ-նուլ և փրկել ոչ ամօթ համարէր . զի որպէս ասացի՝ ո՛չ ինչ աղտեղի է ի մարդկային բնութենէս բայց միայն մեղք ։ Զի զոր դու աղտեղագոյն ի բնու-թեանս մերում համարիս, զնա ի մեծ յարգարու-թիւն ազգիս մերոյ յօրինեաց որպէս զատամնեայս կանանց ի ծննդականութիւն մարդկան, և զխողովակս բացահոսմանց աւելորդաց կերակրոցն եւ ըմպելեաց ի կենացն պահպանութիւն ։ Զի այսուքիկ քեզ աղտե-ղիք . իսկ Աստուծոյ՝ որ քեզ է սիրելի, զիճութիւն եւ ապանութիւն եւ հայհոյութիւն եւ այլք այսպի-սիքս՝ աղտեղիք եւ ոչ վերասացեալքդ, զորս ինքն առի արարչութիւն ծննդեան եւ հանգստեան նոցին արգամբք սահմանեաց ։

Ի վերայ այսոցիկ և զայս իմա՛, զի եթէ զմորենին առ Մովսիսիւ փառեաց Աստուած հրով Աստուա-ծութեամբն իւրով, և ոչ եկէզ . պատուականութիւն մարդոյ (ասուել) է քան զմորենին և քան զամենայն արարածս . զի վասն սորոյն որ առ ի մարդկանէ ըն-նէին՝ ասաց Աստուած « բնակեցայց ի նոսա » ։ Եւ զարմանալ թէ « յո՛ բնակեցայց, եթէ ոչ ի հեզս եւ ի

խոնարհս և յայնոսիկ որք դողան ի բանից իմոց »(105)։ Աւասիկ բնակարան իւրոյ Աստուածութեանն ասաց զարդարոն ի մարդկանէ . եւ չեղեւ ինչ խափանումն Աստուծոյ եւ Թշնամանք ի բնակման մարդկային ախտից նոցա, զոր դու աղտեղութիւն կարգեցեր . զի եւ վայելուչ էր միշտ կենդանւոյն կենդանի տաճար իմն լինել ։ Եւ զայս քեզ առաջի արկանեմ, մանաւանդ զի խանդաս ընդ պատիւ Աստուծոյ սրբոց եւ նոյին նշխարաց յորս զինքն ասաց բնակել Աստուած ։ Զի եթէ ամենեցուն ոսկերաց խնամ տանի Աստուած առ ի յառնել մարդկան զհասարակաց յարութիւնն, ո՞րչափ եւս առաւել սրբոց իւրոց . վասն որոց բազում անգամ մեծամեծս եւ փառաւորագոյնս խօսեցաւ . եւ մանաւանդ որք մահու վասն նորա համբերեցին ։ Վասն որոյ եւ ասաց Հոգին սուրբ բերանով Դաւթի « պատուական է առաջի Տեառն մահ սրբոց իւրոց »(106) ։ Դարձեալ « բազում նեղութիւնք են արդարոց . յամենայնէ փրկեաց զնոսա, եւ պահեսցէ զոսկերս նոցա . եւ մի ի նոցանէ մի փշրեսցի » (107) ։ Զաստուածայնոյ զօրութենէն որ ի սուրբսն բնակեալ էր, ասէ ոչ փըշրել . այլ բազմաց սրբոց փշրեցան եւ հրով կիզան ։ Բայց դու եւ ո՛չ բնաւին կարես խորհել յայսոսիկ . այլ իբրեւ զողջոյ ընդ երեւելիս եւեթ հայիս ։ Եւ դարձեալ ասէ « սքանչելի է Աստուած ի վերայ սր-

րոց իւրոյ »։ Եւ Սաղոմոն դարձեալ « Արդարք յաւիտեան կեցցեն, եւ ի Տեառնէ է վարձք նոցա. զի թէպէտեւ յաչս մարդկան մեռան. այլ նոքա ի հանգստեան են » (108)։ Գիտեմ զի և այնմ չես տեղեակ թէ՝ սպանեալ զանթլպատ այլազգին, եւ ընկեցեալ ի գերեզման մարգարէին Եղիսէի. եւ նորա մերձեցեալ յոսկերս մարգարէին՝ յարեաւ վաղվաղակի (109)։ Ահա եթէ ոչ էր աստուածային զօրութեանն բնակեալ յոսկերս մարգարէին սրբոյ՝ զիա՞րդ կարէին սոսկ մեռելոյ մարդոյ ոսկերք յարուցանել զմեռեալ այրն։ Եւ կենդանին Աստուած ոչ համարեցաւ ազատութիւն իւրոյ Աստուածութեանն բնակել ի գերեզման մեռելոյն, որ ինձ եւ քեզ աղտեղի թուի. այլ Աստուծոյ նորին հակառակն։ Բայց իքէն զո՞րպիսի պատիւ սրբոցն խնդրեսցուք. զի դու այժմ զերկիւղածս Տեառն ըստ սովորական հեթանոսական մոլորութեանն խոշտանգես ուրանալ, իսկ զոչ հաւանեալսն սպանանելովն՝ զանձն քո յաւիտենական մահուանն սպանանես ըստ կանխասացութեան Տեառն մերոյ թէ՝ « եկեսցէ ժամանակ զի ամենայն որ սպանանիցէ զձեզ՝ համարիցի պաշտօն մատուցանել Աստուծոյ » (110)։ Որպէս Մահմետ՝ եղբայր հօրն քո յաւուր յորում զանաստուած զօրհագործութիւնն առնէր, զարիւն ուղտուն սպանելոյ ընդ արիւն Քրիստոնէից ծառայիցս Աս-

տուծոյ գլխատելովն խառնէր ։ Եւ դու ընդ այս նեղիս՝ եթէ զսուրբն Աստուծոյ որ վասն նորա խոստովանութեանն կատարեցան յաշխարհիս, ի նուիրեալ Աստուծոյ տեղիսն դնեմք ։

Իսկ որ յաղագս նշանի խաչին եւ պատկերին յիշեցեր ։ Պատուեմք վասն յիշատակի չարչարանացն զխաչն մարմնացելոյ Աստուծոյ բանին ի վերայ նորա, զոր ուսաք հրամանաւ Աստուծոյ առ Մովսէս, եւս եւ քարոզութեամբ մարգարէիցն՝ անուանեալ զնա թիթեղն սուրբ և նուիրեալ ։ Եւ ձեւ թիթղանն է այսպէս որպէս եւ կենդանին ցուցեալ երեւի ։ Քանզի եւ նշանաւ խաչին կնքին ճակատք մեր Քրիստոնէից որպէս վասն մեր չարչարեցելով մարմնով բանին իւրոյ ։ Իսկ մարգարէն Եսայիա յայտնապէս եւ զփայտէն նշանակեաց յորոց խաչն, որով պսակեալ միշտ պարծի եկեղեցի «Մայրիւ, ասէ, եւ պեկլիւ եւ պեկլիտխաւ առհասարակ փառաւոր առնել զտեղի սրբութեան իմոյ, եւ զտեղի ոտից իմոց փառաւորեցից» (111) ։ Եւ Սաղոմոն ասէ «օրհնեալ է փայտն որով լինի արդարութիւն» (112) ։ Եւ դարձեալ «Փայտ կենաց է ամենեցուն, որ առնեն զնա . եւ որք յենուն ի նա իբրեւ ի Տէր հաստատութեամբ» (113) ։

Այլ վասն պատկերի չունիմք այսպիսի կարծիս զի և ոչ ընկալաք իսկ ի գրոց այսպիսի պատուէրս ։

Թէպէտ եւ գտանեմք ի Հնումն հրամայեալ Աստուծոյ Մովսիսի ի Խորանին վկայութեան առնել զնմանութիւն Քերովբէից : Այսպէս եւ մեք փափագանօք աշակերտացն Տեառն, եւ նորին իսկ Տեառնն մարմնանալոյն սիրովն վառեալք՝ հաւատով կենդանագրութեան եւ նմանագրութեան, որ ի նոյնոյ ժամանակաց առ մեզ եհաս՝ որպէս զկերպարանս իսկ նորա յանդիման տեսանելով՝ զուարճացեալ փառաւորեմք զԱստուած զփրկողն զմեզ ի ձեռն այսպիսի նմանութեանց զգեցողին Որդւոյն իւրոյ միածնի եւ փառաւորողի զտուրքս իւր. եւ ոչ թէ փայտին եւ գունոյն որ ի վերայ փայտին՝ երկիր պագանեմք :

Բայց դու ոչ ամաչես զոհիւք պատուելոյ զտունն քոյ զոր Քաբարն (114) կոչեցեր, եւ Աբրահամու իմն ասես տուն. զոր արդարեւ զանձուր դիւական անապատն եւ յերազի անգամ չիք տեսեալ Աբրահամու : Զոր տուն եւ նախ քան զՄահմետն ձեր ազգդ ձեր պաշտէր, զոր սովորութիւն ձեր եւ Մահմետն ձեր ոչ եբարձ. այլ միայն անուանեալ Աբրահամու ասաց : Իսկ զի մի յաճախումն նախատող քեզ երեւեցայց - զայս եւ ի սրբոց Աւետարանացն եւ ի քոյ իսկ պատմութեանց յայտնի քեզ արարից : Զի յոլով անգամ զպաշտութիւն դիւացն Տէրն յանապատն յայն յուղարկէր որպէս և ասէ յԱւետարանին « շրջին, ասէ, ընդ անջրդին տեղիս » (115) :

Իսկ դուք ընակեալ անդ, եւ յակն անկեալ ձեր երբեմն ի նմանութիւն օձից, եւ երբեմն աղտեղի եւ գէճ ցանկութեամբ ըստ սովորութեան իւրեանց պատրեալ զձեզ՝ ամուսնանալոյ կարծիս տան ։ Իսկ դուք անընտրողաբար հաւանեալք պատրանաց նոցա, աստ եւ ի հանդերձելումն հաւասար նոցա էք ։ Եւ զայս ոչ իմանայք եթէ առ հանդերձեալսն Աւետարանաւ Փրկչին ոչ կարեն նոքա այլափոխեալ իւիք մերձենալ. այլ եւ մարդանալոյն նորա զօրութեամբ կապեալ ապստամբ նոցա բռնութիւնն՝ թէպէտեւ չարասէր գոն որպէս եւ հայրն իւրեանց սատանայ, վնասել յայտնապէս ոչ կարեն նոցա ։ Զի թէ կարէին եւ իշխէին՝ ի միում աւուր հրով տոչորեալ սպանանէին զձեզ. այլ միայն գողաբար խաբէութեամբ՝ ի կորուստ հոգւոյ ձերոյ պատրեն զձեզ ։ Կամ քարին զոր ոռքունն (116) կոչեցեր, զոր ոչ գիտես եթէ ընդէ՞ր երկրպագեալ համբուրես, եւ դիւական կոտորածին, յորմէ զազանք եւ թռչունք զարշին եւ միւռոնի վազեսցեն. և քարանձղութեանն և փախտեանն եւ զգլուխ գերձնլոյն և այլոց ամօթալեաց, զորս գործենն ։

Թողում ասել զօրինադրին ձերոյ զաղտեղի հրամանն յաղագս մերձենալոյ արանց ի կանայս. զորմէ ամաչիմ ասել յօրինակ բերելն զվարելն անդաստանաց որովք արօրաբար պղծութեամբք ոմանք ի ձէնջ

ուսան մերձենալ ի կանայս ։ Կամ զի՞նչ ասայից զողջախոհ պարկեշտութիւն մարգարէին ձերոյ, ըզ Ջերդայ կնոջն զխարդաւանական պղծութիւնն եւ զպատճառս աղանդութեանն յԱստուած ի վեր առաքելն . ուստի եւ տաղտկալին օրէնք յազգ ձեր ի ներս մտին ։ Եւ զի՞նչ չարագոյն հայհոյութիւն քան զայն կամողացն, զոր գործէր՝ պատճառ զԱստուած ընելով ։ Իսկ որ Դաւթի զՈւրիա կինն ասացեր առնուլ . էառ մեղուցեալ Աստուծոյ . վասն որոյ պատուհասեցաւ ի Տեառնէ ։

Իսկ Մահմետն քո և դուք հակառակիք , բարւո՛ք առնէք ։ Եւ զի՞նչ քան զայն չարագոյն՝ զմեղս չհամարիլ մեղք, որում թողութիւն իսկ ոչ գտանէք անամօթ մեղացն ։ Աստուած հրամայեաց յԱւետարանսն չթողուլ առնն զկին բայց վասն պոռնկութեան. և դուք իբրեւ կերակրով յագեալ կանամբք՝ յորժամ եւ կամիք՝ թողուք ։ Իսկ զանդրէն առնլոյն զամօթ՝ եթէ էր Ճար, ոչ ասէի . քանզի նախ՝ այլոյ տայք պղծել զկինն, եւ ապա առնուք ։ Իսկ զանխիղճ պոռնկութիւն հարճիցդ յորս զամենայն ստացուածս եւ զկողոպուտս մարդկան ծախէք . ո՛ւր եղից, մեծագունից գնելով մեծագնոց ստացուածոց, եւ յագեալք որ ընդ նոցայն պղծութիւն, իբրեւ զանասունս վաճառէք ։ Ասէն զօձէ եթէ ընդ միւռինէս զեռնոց որ ի ծովու է, ի խառնակութն մերձաւորու-

թեան գայ . և իբրև մերձենայ յեզր ծովու, զմահացու թոյնն ի բաց դնէ, և այսպէս կատարէ զցանկութիւնն ։ Իսկ դուք քան զնոյն ինքն զօձ թունաւոր էք և զնենգաւորագոյն չարութիւնդ քոյ ոչ մարմնական մերձաւորութեամբն թողեալ. զի և ի մահուանն ձեր մեղանչական՝ խեղդամահ կորուսեալ զմիմեանս վարդապետելով չար դիւին ։

Իսկ վասն սատանայի և արդարոյն հոգւոյ որ ասացեր թէ՝ զսատանայ Աստուծոյ գանձապահ անէք, կարի յոյժ սխալեցար ի խոհականութենէն մեր ։ Այլ զի ուրա՛խ էր սատանայ ի վերայ անյուսութեանն զոր վասն մահուան մարդկան. միանգամայն կարծէր եւ ինքն սատանայ թէ՝ որք ննջեցին արդարքն՝ կորեան արդեօք եւ մոռացեալք եղեն յԱստուծոյ . կարծելով ի ձեռն մարմնոյ և ամբաւ խոնարհութեան և զԲանն Աստուած այնպիսի ոք՝ յորդորեաց զաշակերտն նորա ի մատնութիւն և զՀրէայսն ի սպանութեան խորհուրդ։ Եւ տեսեալ զկամաւոր գալուստն Տեառն ի մահ խաչին՝ երկուցեալ սկսաւ արհաւրօք կշտամբել զկին դատաւորին առ ի խափանել զազգի մարդկան փրկութիւնն ։ Եւ ճաշակեալ զմահ մարդկութեամբն, անմահ միացեալ բնութեամբ Աստուածութեանն եւ անմեկնելի ի մարդկութենէ իւրմէ իբրեւ Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ՝ յարեաւ, մանաւանդ թէ յարոյց զիւր մարդկութիւնն

ըստ մարգարէութեանն Դաւթի եթէ « յարիցէ Աստուած, եւ ցրուեսցին ամենայն թշնամիք նորա» (117)։ Եւ յերկրորդում մարգարէսն եթէ « Մնայ ինձ յաւուր յարութեանն իմ »։ Որ յարուցեալ ոչ վասն իւր որ անմարմին էր եւ անմահ եւ անապական. այլ վասն ազգի մարդկան առեալ զմարդկութիւնն, եւ նովաւ համբերեալ մահու։ Որ և իւրով յարութեամբն շնորհեաց մարդկան զյարութիւն եւ զյոյս վերստին զգենլոյ զմարմին ննջեցելոյն հոգւոց զերծեալք հոգիքն անմարմինք յանմարմնաբար ազդեցութենէ թշնամւոյն. քանզի եւ ոչ փոքրագոյն խնամոց Արարչին հանդիպին հոգիքն ի Քրիստոս մարմնաւորութեամբ Բանին.

Արդ՝ այսպէս սատանայ անյուսութեամբն իւր եւ դիւաց իւրոց կորստեամբ և տկարութեամբ կապեալ՝ առի ոչ եւս բռնադբօսել զմարդիկ ի պաշտամունս տարրատիս, զոր ոչ կամիցի Աստուած, եւ յուսով ժառանգելոյ զյաւիտենական հուր գեհենին։

Ոչ մոռասցուք եւ զոր ասացեր ի մարգարէէն Եսայեայ զասացեալն զհեծելոյն իշոյն եւ ուղտուն։ Եւ արդ՝ դիտաւորութիւն տեսլեանն այսպիսի է։ Տեսիլ անապատին ծովուն՝ քո անապատն է ծովեզերեայ մերձ ի Բաբելացւոց իշխանութիւնն, եւ սահմանակից նորին։ Եւ յետ փոքու միոյ ասէ « տեսանէի հեծեալս երկուս՝ հեծեալ մի յէշ եւ հեծեալ մի

յուղտ ։ » Երկոքին մի հեծեալ էին որպէս ի նմին տեղւոջ մարգարէն յայտնապէս ասէ ցուցեալ ։ Բայց էշ կոչէ մարգարէն զհրէական ժողովուրդն որ ընթեռնուին զօրէնս եւ մարգարէս, եւ հաւանեալք վարդապետութեանն սատանայի՝ ոչ ծանեան եւ (ոչ) հնազանդեցան տիեզերափրկող Աւետարանին, զորմէ եւ ի սկզբան գրոց խրոց դատախազ լինի ասելով « Ծանեաւ եզն զստացիչ իւր, եւ էշ զմսուր Տեառն իւրոյ, եւ Իսրայէլ զիս ոչ ծանեաւ » (118) ։ Իսկ ուղտ կոչեաց զՄադիացւոց եւ զԲաբելացւոց վասն յաճախ լինելոյ առ ձեզ կենդանւոյս այսորիկ ։ Եւ այն թշնամի որ զՀրէայսն օրինապահութեանն կարծեօք մոլորեցոյց, զձեզ կռապաշտութեամբն գլորեաց. եւ զի երկոքեան մի են, տե՛ս, զիա՛րդ յայտնապէս ցուցանէ մարգարէս, եւ դարձեալ ասէ « Տեսանէի զնոյն հեծեալ զի գայր երկձի » ։ Ահա՛ մի է որ յառա՛ջն երկու երեւէր. եւ զի երկձի, զի Հրէից եւ Հեթանոսաց տիրեաց որ հալածեցին ըզ նա ։ Եւ արդ՝ զի՞ գայր, եւ զի՞նչ խօսէր՝ գայր ասէ երկձի, եւ զաղաղակ բարձեալ ասէր « անկաւ Բաբելոն եւ կործանեցան ձեռագործք նորա » ։ Ահա՛ թշնամին է սյս որ ողբայ զանձյութիւն իւր, որ այլ տեղի փախստեան ոչ եգիտ բայց զանապատն քոյ, եւ զերկոսին ձիս ամբարշտութեան իւրոյ եկն, էած աղգիդ քո որ է հրէական անհաստատութիւն (119)

եւ հեթանոսական անսուտակութիւն։ Եւ զայս ի միա֊սին ետ ձեզ՝ գողափժարար զձեզ պատրեալ եւ ոչ բռնութեամբ . զի Թլպատիք, եւ առանց եղուտ եւ արարչական Բանին եւ Հոգւոյն իմանայք զԱստ֊ուածութիւնն իբրեւ զՀրէայս ։ Իսկ բախտից եւ ճա֊կատագրի եւ դիւաց որ են գեհեանք , հաւանիք իբրեւ զհեթանոսս ։ Ընդ նոսին եւ իբրեւ զնոսա վարիք աղտեղի եւ անասելի դիւթութեամբք, ճանա֊պարհ Աստուծոյ կոչէք զանողորմ սպանութեանց և գերութեանց մարդկան զպատպատական ձեր ։ Հա֊ւատք ձեր եւ վարձ այսպիսիք , եւ պարծանք ձեր հրեշտակային վարս վարողաց ։

Իսկ մեք գիտացեալք եւ ծանուցեալք զմեր սքան֊չելի փրկութեանս խորհուրդ, ակն ունիմք յետ յարու֊թեանն վայելման թագաւորութեանն երկնից, որ քարոզութեան Աւետարանին հնազանդեցաք , եւ հնազանդիմք այնպիսեաց բարեաց « զոր ակն ոչ ետես եւ ունկն ոչ լուաւ, զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց եւ հաւատացելոց » ։ Եւ ոչ զինւոյ եւ կաթին եւ մեղու աղբերս, եւ կանանց միշտ կոյս մնացելոց խառնակմունք, եւ ծնունդ որդւոց, եւ այլ այսպիսի հեթանոսական եւ յիմարութեան անզգե֊դոց շաղակրատմունք ։ Անդր ի բաց տար զաստա֊պելական բաղձաղմանցդ բարբանջմունս « զի ո՛չ է ար֊քայութիւնն կերակուր եւ ըմպելի » (120) . որպէս

ասաց Հոգին սուրբ « այլ արդարութիւն է եւ արքայութիւն » քանզի ի յարութեանն ոչ կանայս առնեն եւ ոչ արանց լինին . այլ այնպէս են որպէս հրեշտակք յերկինս » (121) ։ Բայց վասն զի դուք գիճութեամբ եւ աղտեղի ցանկութեանցդ հեշտութեամբ ոչ երբէք յագիք, եւ քան զնա այլ ոչ ինչ բարի համարիք . վասն այսորիկ եւ զերկնից արքայութիւն առանց այնր ոչ ինչ համարիք, եւ այնուիկ կամիք զարդարել զնա ։

Այս քեզ համառօտ պատասխանիք . զի յաղագս անսասանելի եւ անտարագրելի հաւատոյս նեղեալք ի նախնումն . եւ այժմ ի ձէնջ Հեթանոսաց . և հանապազ մեռանիմք յաղագս պատուականն, սուրբ եւ անզուգական անուանն որ կոչեցեալ է ի վերայ մեր. ըստ կանխագուշակ մարգարէին Եսայեայ թէ « կոչեսցի քեզ անուն նոր զոր տէր անուանեսցէ » (122) ։ Որպէս պատուիրեաց մեզ Տէրն մինչդեռ մարմնով յաշխարհիս էր ասելով « Եթէ զիս հալածեցին, ապա եւ զձեզ հալածեսցեն . եթէ զբանն իմ պահեցին, ապա եւ զձերն պահեսցեն ։ Այլ զնոյնս արասցեն առ ձեզ . զի ոչ ծանեան զԱռաքիչն իմ » (123)։ Եւ դարձեալ թէ « յաշխարհի աստ զնեղութիւն ունիցիք » (124) ։ Եւ ցՀայրն յաղօթսն ասելով « զորս ետուր ինձ յաշխարհի, քո էին եւ ինձ ետուր ըզ նոսա » ։ « Եւ յաշխարհէ աստի չեն, որպէս եւ ես չեմ

յաշխարհէս » . « զի եթէ յաշխարհէ աստի էիք, աշխարհս զիւրն սիրէր արդեօք. բայց չեն յաշխարհէս ։ Այլ ես ընտրեցի զնոսա յաշխարհէս. վասն այսորիկ ատեայ զնոսա աշխարհ » (125) ։

Արդ՝ վասն այսպիսի յուսոյ ի ձէնջ տանջիմք պատուհասելեօք եւ ի մէնջ համբերութեամբ . զի և ոչ յաղեղն մեր յուսամք, եւ ոչ սուր մեր փրկեսցէ զմեզ . այլ աջ Տեառն և բազուկ Նորա և լուսաւորութիւն երեսաց Նորա ։ Եթէ յայսմ աշխարհի տակաւին կամիցի եւ հաճեսցի , եւ եթէ ի հանդերձելումն փոխանակ ի ձէնջ վտանգացդ զվարձսն աճեցուսցէ որպէս կամի, և յորժամ կամիցի ։ Իսկ դուք իրանակալութեանդ եւ իզրկմանդ մոլալով կարծէք վասն հաճոյից Աստուծոյ ի հաւատոյ ձերոց վայելել զայս՝ ոչ յիշելով զՊարսս որ չորս հարիւր ամ բռնակալեցին՝ վասն որո՛յ պատճառանաց՝ ինքն Աստուած գիտէ . այլ ո՛չ յաղագս Նոցա ուղիղ հաւատոցն ։

Իսկ մեք հաճեալեմք ընդ նեղութիւնս եւ ընդ վիշտս որ հասանեն մեզ վասն փառաւորեալ անուան Տեառն մերոյ եւ Փրկչին Յիսուսի Քրիստոսի. որպէսզի հանդերձելոյ բարեացն հասցուք ընդ այնոսիկ որք սիրեցին զօր երեւելոյ մեծի դատաւորութեանն Աստուծոյ ի փառս եւ ի գովեստ սիրելեաց անուան Նորա ։ Ընդ որս եւ փառաւորելոյ արժանի եղիցուք զմի Աստուածութիւնն Հօր եւ միածնի իւ-

րոյ Բանին եւ Հոգւոյն սրբոյ՝ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս . ամէն ։

Եւ զայս ի պատճէն պատասխանւոյն գրեալ կայսերն Լեւոնի՝ առաքէ ի ձեռն միոյ հաւատարիմ ծառայի իւրոյ առ Օմար՝ իշխանն Իսմայելի, զոր իբրեւ ընթերցաւ՝ յոյժ պատկառանօք ամաչեալ զամօթ մեծ ։ Եւ ի ձեռն այսր թղթոյ առաւել եւս յաւելոյր զբարեխառնութիւն եւ զբարեմտութիւն առ ազգ Քրիստոնէից, եւ ամենայն ուստեք բարեացապարտ զինքն ցուցանէր . քանզի որպէս նախքան զայս պատմեցաք, գերեաց գերեդարձ առնէր եւ ամենեցուն շնորհէր զյանցանս նոցա ձրի թողութեամբ . ցուցանէր եւ առ իւրոյին ազգն մտերմութիւն լաւագոյն քան զառաջինսն որ նախքան զնա իշխանքն էին . քանզի զմթերս գանձուցն բացեալ բաշխէր հոգ. սպայիցն . եւ յետ այսր ամենայնի եղելոյ վախճանէր ։

# ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ



**ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԵԶԻՏԻ Բ. ՀԱԼԱԾԱՆՔ ՔՐԻՍՏՈՆԷԻՑ . ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԵՇԱՄԱՑ ԵՒ ՊԱՏԵՐԱԶՄ ՆՈՐԱ ԸՆԴԴԷՄ ՀՈՆԱՑ ԵՒ ՅՈՒՆԱՑ ։**

*Իսկ ապա յետ Նորա Ցեզկերտ (Եզիտ) (1) ոմն տիրեալ ամս վեց (2) . որ էր այր ժանտ եւ մոլեկանութեամբ շարժեցեալ՝ բազում չարեօք մարտնչէր ընդ ազգիս Քրիստոնէից . քանզի յածեալ յայսոյն բռնութենէ՝ տայր հրաման փշրել եւ խորտակել ըզ կենդանագրեալ պատկերս ճշմարիտ մարդեղութեան Տեառն մերոյ եւ Փրկչին եւ Նորին աշակերտացն ։ Խորտակէր եւ զնշան տէրունեան խաչին Քրիստոսի, զոր ուրեք ուրեք կանգնեալ էին յանուն (Նորա) ի պատճառս երկրպագութեան համօրէն Երրորդու-*

թեան . քանզի յոյժ ստիպէր զնա մոլորութիւն այսոյն՝ ուս դնել և համբառնալ ընդ վիմին հաստատնոյ. վիմին ինչ ոչ կարէր ստնանել, բայց ինքն առ վիմին խորտակեցաւ ։ Եւ ի գլուխ մոլորութեանն համեալ՝ տայր հրաման խաղաղութեան եւ ջնջէր յերկրէ զբազմութիւն անսուրբ անաստոյն արօտական խոզից. զի դարձեալ յայս շրջեալ փոխեաց զմիտս նորա մոլորութիւն այսոյն ։ Եւ ի կատարումն եկեալ՝ մերձենայր վախճան նորա, եւ այնպէս խեղդամահ սատակէր ի թռնութենէ այսոյն՝ զարժանաւորն ընկալեալ զպատուհասն ի թոլորեցուն Տեառնէն ։ Եւ այսպէս դառնութեամբ սատակէր ի կենացն ։

Տիրէ դարձեալ փոխանակ նորա Շամ որ է Հեշմ՝ (3) ամս տասն եւ ինն (4) ։ Եւ սա յառաջնում ամի իւրոյ իշխանութեանն խորհուրդ վատ իմէջ առեալ՝ առաքէր զումն զօրականր, որում անուն էր Հերթ՝ աշխարհագիր առնել ընդ աշխարհս Հայոց վասն ծանրացուցանելոյ զլուծ լծոյ ծառայութեան հարկատրութեան ազգի ազգի չարեօք, որպէս զի դժուարեալ ընդ բարեմտութիւնն Օմարայ եթէ անիրաւութեամբ ծախեաց զմթերս գանձուցն, զորս համբարեալ էր իշխանացն որ յառաջ քան զնա . եւ բաղում վտանգ հասուցանէր աշխարհիս՝ մինչզի ամենեցուն հառաչել ի վերայ անհանգիստ նեղութեանցն, յորմէ ոչ գոյր ապրել ումեք յանհնարին

վտանգիւն ։ Եւ յայնմհետէ առաւել ծանրացաւ ձեռն Նորա ի վերայ աշխարհիս Հայոց ։

Զայնու ժամանակաւ դարձեալ ամբոխ յուզէր ի կողմանցն հիւսիսոյ. քանզի մեռաւ արքայն Խազրաց որ Խաքանն (5) կոչէին ։ Իբրեւ ետես մայր Նորին որոյ անունն էր Փարսբիթ, հրաման տայր զօրավարին որ Թարմաչ կոչէր, զօր բազում գումարել ի վերայ աշխարհիս Հայոց ։ Եւ միաբանեալք ելանէին ընդ աշխարհն Հոնաց եւ ընդ պահակն Ճորայ ընդ երկիրն Մասքթաց. ապականէին յաշխարհն Փայտակարան . անցանէին ընդ գետն Երասխ յերկիրն Պարսից, աւերէին զԱրտաւէտ եւ զԳանձակն շահաստան եւ զգաւառն որ Աթշիբագուան կոչի, եւ զաստպատար ոմն Փերող (6) եւ զՈրմիզդ Փերող ։ Եւ ի գլխի հարան զօրքն Իսմայելի , եւ Ջառայ ոմն անուն՝ զօրավար Նոցա , կոտորէին զամենեսին ի սուր սուսերի , եւ ինքեանք ապաստանէին ի գաւառն Զարեւանդ, եւ պաշարէին զամրոցն որ անուանեալ կոչի Ամպրիոտիկ . եւ զաղխ բանակին եւ զգերեալսն խարոյն թողուին մերձ ի քաղաքն Արտաւէտ ։ Եւ մինչդեռ մարտնչէին ընդ ամրոցն Ամպրիոտիկ՝ յանկարծակի գունդ մի ի զօրացն Իսմայելացւոց եւ զօրավար Նոցին եւ անուն զօրավարին Նոցա Սեթ-Հարաշի, անկանէր ի վերայ բանակի Նոցա սակաւ արամբք, եւ զբազումս հարեալ սատակէր

ի սուր սուսերի իւրոյ, եւ թափէր զգերեալսն խորոյ նոցա։ Վաղվաղակի հասանէր գոյժ աղմկին առ զօրսըն որ պահէին զամրոցն Ամպրիոտին. եւ իբրեւ լուան զչարիսն որ հասին ի վերայ նոցա, թողին ըզ բերդն, զոր պաշարեալ էին, եւ հասին ի վերայ հինին որ եկեալ էր ի վերայ բանակի նոցա ։ Որում ի դիմի հարեալ նոյն զօրքն՝ հարկանէին ի նոցանէ բազում հարուածս եւ յափշտակէին ի նոցանէ զնշան դրօշին որ էր պատկեր պղնձի, զոր դեռ եւս ունին առ ինքեանս գունդ (7) Հարաւշեայ իբրեւ զպատիւ քաջութեան նախնեաց իւրեանց ։

Եւ յետ այնորիկ առաքէ իշխանն Իսմայելի ըզ Մսլիմ՝ զեղբայր իւր բազմութեամբ զօրաց ի թիկունս օգնականութեան գնդին Հարաւշեայ ։ Եւ իբրեւ եկն Մսլիմ եւ ետես, զի ոչ ժամանեաց հասանել ի մարտ պատերազմին. քանզի ստացաւ ըզ յաղթութիւնն Սէթն. զի զոմանս հարեալ էր ի կոտորման սրոյ, եւ զոմանս փախստական արարեալ. եւ զաւար եւ զգերութիւն թափեալ. բազում թըշնամանօք կշտամբեալ խոշտանգէր զնա, եւ կամէր սպանանել. այլ ոչ կարէր յանդիման տալ հրաման. քանզի ազգատոհմն նորա յարուցեալ բարձրացուցանէին զաղաղակ ։ Եւ ոչ իշխեաց ի կամս անձին իւրոյ. այլ լուռ եղեալ արգելոյր ի խորհրդոց իւրոց, եւ դառնայր առ իշխանն Իսմայելի ։

Եւ յետ այսորիկ սկսաւ գոռալ ընդդէմ Թագաւորին Յունաց . և յղէր դեսպան առ Լեւոն կայսր Հռոմոց գալ նմա ի Հնազանդութիւն Հարկատրութեան։ Եւ իբրև ոչ ունէր յանձին կայսրն Լեւոն զիրս պատգամին յղելոյ՝ պատմեաց առաքէր զՄսլիմ՝ զեղբայր իւր զօրու ծանու ի վերայ աշխարհին Յունաց ։ Որոյ առեալ զբազմութիւն զօրացն՝ անցանէր ընդ Ասիակէս յԱսորւոց աշխարհն Միւսիգիոն որ թարգմանի Միջերկրեայք , եւ երթեալ հասանէր յաշխարհն Բիւթանացւոց, և բանակէր առ եզր գետոյն Հզօրագունի որում Սագառիոն (8) կոչի ։ Պատրաստին ապա եւ զօրքն Յունաց, եւ գաղթեն զբնակիչս աշխարհին յամրոցս եւ ի քաղաքս ամուրս յերեսաց Իսմայելի . եւ ինքեանք բանակէին ընդդէմ Նոցա ի միւս կողմն գետոյն՝ ամրացուցեալ զտեղի բանակին իւրեանց պարկէնաւ փոսիւ շրջապատեալ . եւ այնպէս Նստեալ պահէին ոչ սակաւ ժամանակս ։ Իսկ ապա ի թագաւորէն Լեւոնէ բազում զգուշութիւն հասանէր օր ըստ օրէ առ զօրավարն Յունաց զի մի նենգութեամբ որսասցի յորոգայթ Նոցա . այլ միայն Նստեալ պահեսցէ զնոսա առանց պատերազմելոյ ։

Իսկ Նորա ոչ զգուշացեալ ըստ Հրամանի կայսերն. քանզի քարոզ կարդացեալ զօրավարքն Իսմայելի տապաստակ սփռեալ զօրաց իւրոց ընդ կողմանս կողմանս, առնուլ աւար եւ գերութիւն բազում, եւ

դառնալ յաշխարհ իւրեանց ։ Եւ լուեալ զայս զօրավարին Յունաց՝ հրամայէ զօրաց իւրոց պատրաստութեամբ վառիլ զկնի նոցա ։ Եւ իբրեւ եկին զկնի զօրուն Իսմայելի . եւ նոյնժամայն տեսին եւ զգացին զգալուստ նոցա զկնի իւրեանց . քանզի զօրացնու մէգ փոշեզգած ի վերայ նոցա ։ Եւ նոքա զատուցեալ զաղխ բանակին իւրեանց . եւ զգունդն զօրաց յերկիւ բաժանեալ՝ կացուցանէին դարանամուտս աստի եւ անտի . եւ ինքն Մսլիմ եւ մասն ինչ զօրացն ընդդէմ նոցա ճակատէին ։ Իսկ նոքա ի դիմի հարեալք նոցա անպատրաստ հանդերձ աղխիւ բանակին իւրեանց, անկան ի մէջ թշնամեացն . եւ յարուցեալ դարանամուտքն ի թաքստեացն՝ ի մէջ առնեալ հարին զբազումս ի զօրուէն Յունաց կոտորածս սրոյ . եւ ինքեանք ապաստանք սփռեալ զկողմամբքն այնոքիւք՝ առնուին զգաւառս եւ զքաղաքս երկրին այնորիկ, զորոց զթիւ գերելոցն աւելի քան զութն բիւր մարդկան, եւ դարձան բազում խնդութեամբ յաշխարհն իւրեանց ։

Եւ տեսեալ զյաղթութիւնն մեծ իշխանին Իսմայելի՝ բազում խնդութիւն առնէր նախարարօքն իւրովք, և մեծամեծ պատուօք պատուէր զեղբայր իւր, եւ օրհնէր յոտին նորա զյաղթութիւնն զոր արար ։ Եւ զառ աւարին բաշխէր զօրացն, եւ զգերեալսն ստանայր ի ծառայս եւ յաղախնայս, եւ հանգստեամբ

դադարէր յանձին այնմիկ ։ Իսկ ի գալ միւսոյ ամին դարձեալ զօր գումարէր բազում քան զառաջինն, և տայր ի ձեռս զօրավարին Մալիմայ, եւ առաքէր ի վերայ աշխարհին Յունաց ։ Որոյ ուխտ եղեալ երդմամբ չափ եղթօր իւրում ոչ դառնալ տունա մինչեւ կատարեսցէ զկամս անձին իւրոյ ․ զի ուխտ եղեալ էր զայս, բառնալ զԹագաւորութիւնն եւ կործանել զքաղաքն ի հիմանց որ կոչի Կոստանդնուպօլիս, եւ զզանազան հիմնարկութիւնս սրբոյն Սոփիայ, որ ի վերնոյն իմաստութենէ շինեցաւ յերկրի տուն Աստուծոյ, պղծալից դիւապաշտութեանն շինել տեղի երկրպագութեան ։

Եւ զայս ամենայն հաստատեալ ի սրտի իւրում՝ խաղացեալ յառաջ բազմութեամբ զօրացն հասանէր յաշխարհն Յունաց, և բանակէր առ եզր ծովուն Պոնտոսի ամենայն աղխիւն իւրով ։ Եւ իսկ եւ իսկ խրոխտալով ընդ արքային Լեւոնի՝ յղէր դեսպան և և գրէր հրովարտակ ՝ առ նա այպանութեան, յորում էին բազում ձաղանք, որ ունէր օրինակ զայս ․ Զի՞նչ է յամառութիւնդ յոր ապստամբեալ ոչ եկիր ի հնազանդութիւն հարկատրութեանս մեր ․ զի ամենայն ազգք սարսեալ դողացին ի մէնջ ։ Իսկ դու յո՞վ ապաստանեալ՝ այդպէս կարծրանաս ընդդէմ մեր ․ ո՞չ ապաքէն լուար զչարիսն զոր ածաք ի վերայ ամենայն Թագաւորութեանց որք ընդդէմ դար-

ձան իշխանութեանս մերոյ, զորս խորտակեալ փշ-րեցաք իբրեւ զանօթ խեցեղէն, եւ մեր եղեւ ամե-նայն պարարտութիւն երկրի. քանզի հրամանն Տեառն եւ խոստումն որ առ հայրն մեր Իսմայէլ, ի գլուխ ել, եւ զամենայն թագաւորութիւնս վանեալ պարտեցաք։ Կամ թէ եւ զայդ ո՞չ տեսեր, ո՛րչափ վտանգ եհաս ի վերայ երկրիդ քո յաւուրս քոյոց թագաւորութեանդ. զի ձեռամբ իմով աւերեցի զբազում քաղաքս եւ սրով իմով կոտորեցի զբազ-մութիւն զօրաց քոց. Այլ արդ՝ գիտութի՛ւն լիցի քեզ զի եթէ ոչ մտցես ընդ հարկատուութեամբ իմով, ուխտ եդեալ եմ երդմամբ, զի ո՛չ տեսից զեր-կիր ծննդեան իմոյ մինչեւ բարձից զթագաւորու-թիւնդ քո եւ կործանեցից զամրութիւն պարսպա-ւոր քաղաքիդ յոր յուսացեալդ ես, և զանուանեալդ քո Սոփիա, որ է տուն երկրպագութեան քո, արա-րից ի լուալիս զօրաց իմոց, և զփայտ խաչիդ որում երկրպագես, խորտակեալ ջախջախեցից ի գլուխ քոյ. զի օգնութիւնք և պարծանք հաւատոյս մեր մեծ են առաջի Տեառն »։

Զայսոսիկ եւ եւս վատթարագոյն նախատինս յղէր առ Լեւոն կայսր։ Իսկ նորա ընթերցեալ զգիրն ապստամբութեան՝ վաղվաղակի հրաման տայր Հայրա-պետին հանդերձ Սինկղիտոսին եւ ամենայն բազ-մութեամբ քաղաքին մի պակասեցուցանել զճնչիւն

փառաբանութեան ի սրբոյն Սոփիայ մինչեւ յերիս աւուրս : Եւ դղրդեցաւ ամենայն քաղաքն ի տեղի պաշտամանն ըստ հրամանի կայսերն : Ապա եւ ինքն Թագաւորն յայտնեցեալ ժամանէր ի սուրբ քաւա- րանն, եւ զգիր նախատանացն առեալ ի ձեռն՝ տա- րածեալ առաջի Տեառն ըստ նմանութեան Եզե- կիայ յուշ առնելով զբազմախիտ նեղութիւն Փրկչին մերոյ, զոր ի սկզբանցն պահեաց զողորմու- թիւն առ տիրեալս իւր : Մաղթէր արտասուօք ըզ- թողութիւն Աստուած օգնական լինել, եւ ի վրէժ- խնդրութիւն հասանել չարաչար թշնամեացն : Ցոյց տանէր եւ զճակերանս նախատօնացն սաելով ըզ- զաւութեան բանն « ո՜րչափ չարացաւ թշնամին ի սրբութեան քում, պարծեցան ատեցողքն ի մէջ բարեկենդանութեան իւրեանց , եդին անձամբ նշանս անձանց զյաղթութիւն, եւ զայլելութիւն ի վե- րուստ ոչ ծանեան » (9) : Հգ. Սղ. Տ-Ֆ

Զայս եւ զայսպիսիս բազում հեղոյր առաջի Տեառն խոստովանութիւնս յերկարաձգեալ մինչեւ յերիս աւուրս անձանձրութեամբ կատարէր զուխտ աղօթիցն : Իսկ յետ այսորիկ գրէ հրովարտակ առ Մսլիմ զօրավարն Իսմայելի, որ ունէր օրինակ զայս « Ընդէ՞ր պարծեցար ի չարութեան հզօրդ՝ զանօրէ- նութիւն, եւ արեցեր իբրեւ զածելի զնենգութիւն, եւ առաջի ամենակալին ընդվզեալ մեծաբանեցեր.

զապիրատութիւն ի բարձունս խորհեցար զՔրիստոսէ Փրկչէն մերմէ եւ զվերընկալ աթոռոյ Նորա ։ Վասն որոյ յուսացեալ յողորմութիւն Նորա զոր նախատեցեր, եթէ հատուսցէ քեզ փոխարէն չարութեանդ քոյ, եւ զբերանդ պղծութեան զոր բացեր ի վերայ Թագաւորին Թագաւորաց եւ քաղաքիս Նորա եւ տաճարի փառաց անուան Նորա եւ իմ, զի պահապան եմ Աթոռոյն Քրիստոսի, կարկեսցէ Տէր ըստ Նզովից մարգարէին Դաւթայ որ ասէ թէ՝ « խցցին բերանք այնոցիկ որ խօսին զանօրէնութիւն » ։ Այլ մեք « ո՛չ եթէ յաղեղն մեր պարծիմք, եւ ո՛չ սրով մերով կեցցուք . այլ ա՛ջ Տեառն եւ բազուկ Նորա եւ պահպանող զօրութիւն լուսոյ երեսաց Նորա » (10) . կարող է խորտակել զայնոսիկ որ պարծին յամբարտաւանութիւն իւրեանց իբրեւ զքեզդ, որ ոչ ածեր զմտաւ երբէք եթէ զորս խողխողեաց սուր քոյ, եւ կամ գերեցան յերկրէս իմ . խնդրի արիւն նոցա ի ձեռաց քոց . քանզի ոչ վասն արդարութեան գործոց քոց . այլ վասն մերոց անօրէնութեանց թողացոյց զգաւազան մեղաւորաց ածել ի վիճակս արդարոց . զի զչափ առցուք տկարութեանս մերոյ եւ խրատեսցուք գնալ ըստ կամաց հաճոյից Արարչին ։ Այլ դու մի՛ փորձեսցես զՏէր Աստուած մեր . զի կարող է զքեզ ամենայն բազմութեամբ քոյ մատնել ի խորս ծովուդ ծփելով զջուրս ծովուդ, որ֊

պէս զխստասիրտն Փարաւոն մատնեաց խորոց Կարմիր ծովուն ։ Քանզի գաւազանն Մովսիսի էր, որով դարձաւ ջուրն ի վերայ եգիպտական զօրուն, եւ խորասոյզ կորստեամբ դատեցաւ . եւ գաւազանն այն ունէր օրինակ զամենազօր նշանի խաչին Քրիստոսի որ ի քէն այսօր նախատեալ եղեւ ։

Արդ՝ եթէ դառնալով դարձցիս յինէն, ընտրեցեր անձինդ զբարին եւ զօրացդ քոց . ապա թէ ոչ՝ զոր ինչ ստիպիդ ի խորհուրդ քո, արա՛ վաղվաղակի . եւ Տէր արասցէ՛ զբարիս եւ զհաճոյան առաջի իւր, եւ զդատաստան իւր դատեսցի եւ զժողովուրդ իւր փրկեսցէ՛, և զնեղիչս մեր կորագլուխ ամօթով դարձուսցէ՛ ի մէնջ » ։

Իսկ իբրեւ ընթեռնոյր զայս հրովարտակ զօրավարն Իսմայելի, նա առաւել սրտմտէր բարկութիւն նորա . եւ զայրացեալ գազանաբար համբառնայր մարտնչել ընդ հաստատուն վիմին . զի որսասցի յորողայթ իւր ըստ արժանւոյն . զի ի Տեառնէ խստանայր սիրտ նորա ։ Եւ տայր հրաման զօրաց իւրոց նաւս կազմել . եւ վաղվաղակի կատարէր հրամանն . քանզի զբազում աւուրս պատրաստեալ էր զնաւսն ։ Եւ նոյնժամայն մտեալ ի նաւսն ամենայն աղխիւն իւրեանց՝ երթեալ մերձենայր ի քաղաքն ։ Իբրեւ ետես կայսրն Լեւոն զբազմութիւն զօրացն անտառացեալ ի վերայ ծովուն, տայր հրաման կազմել ըղ

վանդականկապ կազմած երկաթեղէն պարապին և աղխել զդուռն շղթայագործ ամրոցին ։ Եւ ոչ ումեք եւս պատերազմել ընդ թշնամեացն . քանզի Նմայր ի վերուստ լինել այցելութիւն նմա եւ վրէժխնդրութիւն ըստ գործոյ իւրոյ ։ Եւ իսկոյն հրամայէ Հայրապետին հանդերձ սինկղիտոսիւն եւ ամենայն բազմութեամբ քաղաքին կատարեալ և ջերմին հաւատով աղօթս ընդ ինքեանս մարտակից զանյաղթելի եւ զպայծառացեալ նշան խաչին Քրիստոսի ։ Եւ ինքն Թագաւորն ընդ ամենայն բազմութեան բանակայր զանպարտելի յաղթութիւնն ի վերայ ուսոցն . եւ ժողովուրդն զհնչիւն փառաւորութեանն բարձրացուցանէին ի վեր, եւ զբուրումն անուշահոտութեան խնկոցն, եւ զպայծառութիւն մոմեղինացն եւ ջահիցն առաջի եւ զկնի բերելով ի պատիւ յաղթող եւ պատուական խաչին ։ Եւ բացեալ ըզդուռն քաղաքին՝ ելին արտաքս ամենայն բազմութիւն համբարձեալ զնշան խաչին ի վերայ ջուրցն ասելով « օգնեա՛ մեզ Քրիստոս՝ Որդի Աստուծոյ, Փրկիչ աշխարհաց » ։ Եւ զայս բարբառ երեքկին առաքեալ ի վեր յերկինս՝ հարկանէր նշանաւ խաչին զջուրս ծովուն՝ դրոշմելով ի վերայ զտէրունեան գիծն ։

Եւ նոյնժամայն դղրդեալ խորք ծովուն ի զօրութենէ սուրբ խաչին՝ եռացուց ի վեր զալիս իւր ուժ-

զինն չարժամամբ. եւ սաստիկ նուաճելութիւնք լինէ-
ին եւ մեծ խորտակումն զօրացն Իսմայելի, մինչեւ
մեծ մասն զօրացն ընկղմէր ի Ջուրս ծովուն եւ ըստ
փարաւոնեան զօրուն զծովապատիժ բարկութիւնն
հրեայց: Եւ զմասն ինչ Միայեալ զօրուն ի տափաստակ-
սըն՝ տարեալ հանէր յայնկոյս ծովուն յաշխարհն
Թըրակացւոց, եւ զոմանս ի կղզիս հեռաւորս վարեալ
ընկենոյր . քանզի էին բազմութիւն զօրացն աւելի
քան զլիուն բիւր տարանց : Իսկ որ խլաանդաւոր
նեղութենէն զերծան ի ցամաք՝ ոչ եղև ձեռնամուխ
մատնել ի սուր անողորմ . այլ եւս հրաման պահել
զնոսա պաշարմամբ. զի ոչ ուրեք դուռ ճար ելանել
նոցա ի խնդիր կերակրոյ : Եւ սով մեծ լինէր ի բա-
նակին նոցա մինչեւ սպառել զձիս եւ զՋորիս : Ապա
յետ այնորիկ ձեռնամուխ լինէին ի հարճս եւ ի ծա-
ռայս փողոտել եւ ուտել զի լցցեն զաղքատութիւնն
փորեանց : Իսկ ապա բազում աղերսանօք աղաչէր
զԼեւոն կայսր տանել ողորմութիւն ընդ նմա եւ թո-
ղուլ ի պաշարմանէն. քանզի Միայլին տակաւք ի բազ-
մաց :

Իսկ Թագաւորն Լեւոն զնոսա ածէր զայն, զի Տէր
հատոյց զվրէժխնդրութիւն Թշնամեացն, արար
ողորմութիւն մեծ ի վերայ նոցա . եւ կոչէր զնա
առ ինքն, եւ խօսէր ընդ նմա բազում դատաստա-
նօք : Յո՛ւշ տանէր և զանամօթ լրբութիւն նորա թէ

ընդէր արդեօք կամեցեալ յարձակեցար ի վերայ երկրիս մերոյ, և յանխնայ կոտորեցայ սուր քոյ զզօրս իմ, եւ վարեցեր զբնակիչս քաղաքաց իմոց ի գերութիւն ։ Եւ արդ՝ կենդանի՛ է Տէր՝ զի որդի մահու ես դու, եւ ո՛չ ես արժանի կենաց ․ այլ որովհետեւ զդատաստան իմ Տէր դատեցաւ, եւ դարձոյց զամբարշտութիւն քո ի գլուխ քոյ , եւ զարիւն անձանց անմեղաց խնդրեաց ի ձեռաց քոց ․ Ես ո՛չ մխեցից ըզձեռս իմ ի քեզ եւ ո՛չ դատեցայց զքեզ ըստ արժանեաց, զի ահա՛ անձն քո ի ձեռին իմ է եւ իշխան եմ ի վերայ ձեր սպանանել եւ կեցուցանել ․ բայց ո՛չ մեռցիս, այլ ե՛րթ, պատմեա՛ զմեծամեծս Աստուծոյ զօրութեանցն զոր տեսեր » ։

Պատասխանի ետ Մուշիմ կայսերն և ասէ « զի՞նչ կարացից խօսել առ այդ առաջի քո ․ զի արդա՛րեւ ո՛չ եմ արժանի կենաց ․ զի ոչ են սակաւ յանցանք իմ զոր գործեցի ընդ երկիր քոյ ․ այլ դու մեծ արարեր զողորմութիւն քոյ առիս ապրել անձին իմոյ ․ քանզի սխալանաց իմոց ես ինձէն վկայեմ ։ Այլ որովհետեւ անկաւ ի սիրտ քոյ ողորմութիւն առնել ի վերայ իմ, արձակեա՛ զիս ի տեղի իմ, եւ ուխտեցի՛ց առ քեզ ոչ եւս ելանել ի պատերազմ » ։ Եւ հրամայէր նմա զխնդիրն ։ Իսկ նորա պատրաստեալ՝ մտանէր ի նաւ, ուր եղեալ անցանէր ընդ Միջերկրեայսն, եւ դառնայր յերկիր իւր մեծաւ ամօթով ։

Ապա ելանէին ընդ առաջ նորա ի քաղաքաց քաղաքաց վայելիւք եւ ճչովք եւ զճակատ հարկանելով եւ զմոխիր ցանելով ի վեր : Իսկ նորա ամօթով մեծաւ կորացեալ երեսաւ յանդիման լինէր, եւ ի նոցանէ բազում կշտամբանօք կշտամբէր . եւ ոչ ինչ աւելի պատասխանի առնէր, բայց զայն եւ եթ ասէ « ո՛չ կարէի ընդ Աստուծոյ կռուել » : Եւ յետ այսորիկ գնաց ի տուն իւր, և ոչ. արկ սուր ընդ մէջ իւր մինչեւ ցօր մահուան իւրոյ :

Յայնմ ժամանակի առաքէ իշխանն Իսմայելի Հեշմ՝ ի վերայ ազգիս Հայոց զՄրվան՝ որդի Մահմետի փոխանակ Սեթայ որում Հարաշ կոչէին (12): Իբրեւ հասանէր Մրվան ի քաղաքն Դուին՝ յանդիման լինէին նմա նախարարք Հայոց : Եւ խօսի ընդ նոսա բանիւք խաղաղութեան . եւ կոչէ առ ինքն զԱշոտ՝ որդի Վասակայ ի տանէ Բագրատունեաց, եւ տայր նմա իշխանութիւն պատրիկութեան ի վերայ աշխարհիս Հայոց հրամանաւ Հեշմայ, եւ բազում պատուով պատուէր զնա : Իսկ իմացեալ որդւոյն Սմբատայ զպատիւն Աշոտոյ զի մեծացաւ անձն նորա յաչս Հեշմայ եւ զօրավարին Մրվանայ . եւ յոյժ խեռութեամբ կէին ընդ նմա, մինչեւ հասանէր գժտութիւն նոցա յականջս որդւոյն Մահմետի : Եւ վաղվաղակի հրամայէ ունիլ զնոսա, եւ առաքէր առ իշխանն Իսմայելի զԳրիգոր եւ զԴաւիթ որք էին ի

տոհմէ Մամիկոնեան . եւ գրէր ամբաստանութիւն զնոցանէն թէ՝ հակառակք և խաղմարարք են իշխանութեանս Աշոտոյ ։ Եւ հրամայէր տանել զնոսա յԷմանն կոչեցեալ որ է անապատ, և դնէր զնոսա ի կալանս բանտի մինչեւ ցվախճան կենաց իւրեանց ։

Իսկ իբրեւ հաստատեցաւ իշխանութիւն պատրկութեան Աշոտոյ, երթայր առ իշխանն Իսմայելի վասն բանութեան աշխարհիս . զի յերկից ամաց եւ անդր արգելեալ էր զնախապարարայն Հայոց եւ նոցին հեծելոյն զխածիկթայսն ։ Եւ յանդիման լինէր Հեշմայ . խօսէր առաջի նորա բանս արգոյս եւ իմաստունս ։ Եւ մեծարեցուցանէր զնա լիառ արժանի, կատարէր ըզխնդիր նորա, եւ տայր հրաման կշռել ի ձեռս նորա ամի ամի հարիւր հազար դեկից ամացն ։ Եւ յայնմհետէ յաւուրս իւրոյ իշխանութեան անխափան գայր նոյն ռոճկ արծաթին ամենայն հեծելոցն (13) ։

Յետ այսորիկ զօր բազում գումարէր Մրվան՝ որդի Մահմետի, եւ առնոյր ընդ իւր զիշխանն Աշոտ հանդերձ նախարարօքն և նոցին հեծելովք ։ Եւ միաբանեալ առաջապատակէին յաշխարհն Հոնաց ։ Եւ մարտուցեալ ընդ քաղաքին (Թերեւս Թարգու), հարին զզօրս քաղաքին եւ առին զքաղաքն ։ Իբրեւ տեսին բնակիչք քաղաքին զչէնն որ զօրացաւ ի վերայ նոցա, և զի առաւ քաղաքն, բազումք ի քաղաքացւոյն զինչս իւրեանց խորոց ծովուն մատնէին եւ ծովա-

մէծ խեղդամահ առնէին ։ Իսկ զայլ բազմութիւն և զաւարն առեալ զօրացն Իսմայելի հանդերձ իշխանաւն Աշոտով՝ դառնայր Մրվանն ի կողմանցն Հոնաց մեծաւ յաղթութեամբ եւ բազում աւարաւ ։ Եւ իբրեւ հասանէր ի շահաստանն Պարտաւ՝ որոշէր ի գերելոցն եւ յաւարէն հնգեակս, եւ առաքէր իշխանին իւրեանց Հեշմայ, և զգացուցանէր նմա զիրս յաղթութեանն ։

Իսկ նորա ընկալեալ զընծայս աւարին՝ մեծապէս շնորհակալութիւն մատուցանէր Մրվանայ եւ զօրաց նորա, եւ նախատէր զեղբայրն Մսլիմ օրինակ բերելով զքաջութեամբ յաղթութիւնն Մրվանայ ։ Իսկ նորա պատասխանեալ ասէր « ինձ ոչ էր մարտ պատերազմի ընդ մարդկան այլ ընդ Աստուծոյ ։ բայց նմա ընդ անբան անասունս » ։ Իսկ Մրվանն զմնացեալ աւարն հանդերձ գերելովքն բաշխէր զօրացն իւրոց. տայր մասն Աշոտոյ եւ այլոց պատուաւոր նախարարացն ծառայս եւ աղախնայս ։ Եւ ինքն տիրեալ ի վերայ աշխարհիս՝ խաղաղացոյց զամենայն յարձակմունս բռնութեան, եւ զգործողս անիրաւութեան, զգաւազակսն և զգողսն և զթշնամիսն բարեկարգութեան ծայրակոտոր արարեալ ոտիւք և ձեռօք՝ փայտիւ դատապարտէր ի մահ ։ Եւ լցեալ տասն և ինն ամ Հեշմայ՝ սատակէր (14)։

Եւ տիրէ փոխանակ նորա Վլիթ (15) ամ մի և

կէս : Եւ նա էր այր պնդակազմ ուժով զօրութեան. և վարէր ըմբշական մենամարտութեամբ . և ուր ուրեք լսէր զարութիւն զօրութեան ուժոյ՝ առաջէր՝ առ ինքն տանէր. զի սիրոյ անձին իւրոյ գտցէ: Վարէր ընդ նմին արբշռութեամբ յանարգել գիճութեան իգախաղութեան: Իսկ համատոհմ նախարարացն տեսեալ զգործ իշխանին իւրեանց, զի վարէր անալիտան զազրալից պղծութեամբք՝ հարցին զհաւատարիմս հաւատոյն իւրեանց որ անուանին ի նոցունց կուսայք (16) եթէ ո՛րպէս խորհիցեն վասն նորա : Իսկ նոքա պատասխանի տուեալ նոցա ասեն « որովհետեւ անարգեաց զպատիւ իշխանութեանս մերոյ, եւ էանց ըստ հրաման օրէնսդրին մերոյ, եւ վարեցաւ զազրալից պղծութեամբ, արժանի է մահու, մեռցի » : Իսկ նոքա ըստ հրամանին զոր ընկալան ի կուսայիցն՝ մտեալ յարքունական ապարանսն՝ գտին զնա թմբրեալ գինեզեղխութեամբ, եւ սպանին զնա սրով, եւ փոխանակ նորա կացուցին զՍուլէյման (17) ոմն ի նոյն ազգէ յարքունեան տոհմէ :

Իսկ Մրվանն իբրեւ լուաւ զմահ իշխանին իւրեանց Վլթի՝ վաղվաղակի կազմեալ զզօրս իւր, եւ թողոյր յաշխարհիս Հայոց զԻսահակ՝ որդի Մսլիմի. եւ ինքն հանդերձ ամենայն բազմութեամբն զօրաց երթեալ պատերազմէր ընդ ազգին իւրում, որպէս թէ քինախնդիր եղեալ մահուանն Վլթի եւ որդւոյ նո-

րա ։ Եւ զոմանս ի տոհմէ սպանելոցն գտեալ յանկուցանէր առ ինքն. և զամենայն արս ազգատոհմի իւրոյ ժողովեալ առ ինքն ։ Եւ բազում այլք յորդւոյն Իսմայելի միաբանեալք՝ լինէին բանակ մեծ, և խաղացեալք յառաջ՝ անցանէին ընդ մեծ գետն Եփրատ, եւ յանդիման լինէին միմեանց մերձ ի սահմանս Դամասկեայ ի կոչեցեալն Ռուսափայ ։ Անդ ճակատեալք ի պատերազմ ատուրս բազումս՝ հարկանէին ի միմեանց բազում հարուածս ։ Եւ իբրեւ լինէր օրն ընդ երեկս, իբրթէ մերձենալ ժամ յետին աղօթիցն, ի բաց կային ի պատերազմելոյ, և նստեալ լային զանկեալսն ի միմեանց. եւ ամփոփեալ զդիակունսն տային գերեզմանի ասելով առ միմեանս « մի ազգ եմք, մի լեզու, եւ մի իշխանութիւն, այլեւ եղբարք եւս, եւ ընդէ՞ր խողխողեմք զմիմեանս սրով » ։ Եւ զայս ասացեալ՝ առ վաղիւն ժամ տային պատերազմի. եւ մարտ պատերազմին յերկարեալ ի մէջ նոցա ։ Եւ յաղթահարէր Մրվանն զմիւս կողմն եւ սպան զՍուլէյման, և կալաւ զիշխանութիւնն ինքն ամս վեց ։

Եւ զայն (18) ժամանակս իշխանութեան իւրոյ ոչ դադարէր պատերազմն յորդւոցն Իսմայելի. քանզի պաշարէր Մրվանն զքաղաքն Դամասկոս, եւ մարտ եդեալ խորտակէր զդրունս երկաթիս. եւ ըզ բնակիչս քաղաքին զորդիսն Իսմայելի որք միանգամ

յարութիւն հասանալէին՝ ի չորս ցիցս պրկեալ՝ տաշէին զջլեմս նոցա գործովք հիւսական սրոյ, եւ այնպէս զատնութեամբ սատակէին ի կենաց։ Եւ զկանայս յղիս հերձուին ընդ մէջ։ Եւ զմանկունս արուս ընդէ-ին ի մէջ որմոցն միջով չափ, ի վերայ անցուցանէին զորմսն եւ այնպէս չարամահ սատակէին ի կենացն. և զաղջկունսն որ ոչ գիտէին զանկողին արուի, սոյն-պէս վարէին ի գերութիւն եւ զայլ խառնիճաղանճ բազմութիւնն. քանզի վրէժխնդրութիւն Տեառն էր ի վերայ քաղաքին վասն յաճախութեան չարեաց նոցա։

Աստանօր լնու մարգարէութիւնն Ամովսայ որ ասէ « այսպէս ասէ Տէր Տէր ի վերայ երից ամբարշ-տութեանցն Դամասկեայ, եւ ի վերայ չորիցն ոչ դարձայց ի նոցանէն փոխանակզի հերձուին զյղիս Գաղաադացւոցն սղոցօք երկաթեօք։ Եւ առաքեցից հուր ի տունն Ազայելի և կերիցէ զհիմունս որդւոյն Ադերայ։ Եւ խորտակեցից զնիգս Դամասկեայ, եւ սատակեցից զբնակիչս դաշտացն Ովնայ, եւ կոտո-րեցից զազգն ամենայն յարանց Խառանայ. եւ գե-րեսցի ընտիր ժողովուրդն Ասորւոց »· (19)· քանզի ի բնակչաց Խառանու եհաս նմա կործանումն ըստ մարգարէին ձայնի։

Բայց արժան է ի խնդիր լինել եթէ զիարդ մարգա-րէս զբոլորիցն ամբարշտութիւն երիս ի վերայ յայտ-

նելով՝ ի վերայ բերէ զչորրորդն լինել հրաժեշտ բարկութեանն Տեառն ։ Թուի ինձ բազմաբեղուն չարութեամբ լցեալ քաղաք ամբարշտացն. քանզի ախտացեալք մտօք և զգայութեամբ և սրտիւ՝ կատարէին զերկուսս մահու մտացն և զգայութեանց զչարութեանցն առատագոյն ծնունդս զապականութիւնն, զչարութիւն ընչից եւ զհեշտ ցանկութիւնն ։ Եւ չորրորդ՝ զի ոչ միայն ոչ ակն ունէին այցելութեանն Աստուծոյ, այլև պատճառ ևս չարեացն զոր գործէին, համարէին զնա որ ամենայն բարութեանց է աղբիւր ։ Եւ այն էր որ զներողութիւն քաղցրութեանն Աստուծոյ անդառնալի շարժմամբ շարժէր առ ցասումն ամբարշտութեանցն ։

Եւ մինչդեռ ամբոխ աղմկին զօրացեալ յաճախէր ի մէջ որդւոցն Իսմայելի վասն անհատ պատերազմին , յայնժամ զերծեալ որդիքն Սմբատայ ի կալանաւոր պատանդէն · քանզի արձակեցան հրամանաւ Վլթի ի բանտէն ։ Բայց յառաջքան զգալ նոցա յաշխարհէն Ասորւոց սպանաւ Վլիթ, եւ արգելան անդէն յաշխարհին զի ոչ ոք համարձակեաց նոցա ելանել յաշխարհէն ։ Ապա իբրեւ յաճախեաց պատերազմն ի մէջ նոցա, յայնժամ զերծեալ անկան ի Հայս։ Եւ իբրեւ հասին յաշխարհս Հայոց, յետ սակաւ ինչ ժամանակի երթեալք ի կողմանս Վասպուրական աշխարհին՝ խոշտանգանս եւ տագնապս

մեծ յարուցանէին ի վերայ երկրին . եւ հարկապահանջ բռնութեամբ վտանգէին զնոսա մինչեւ հասանէր բողոք աշխարհիս առ հրամանատարն Իսահակ՝ որդի Մսլիմի . եւ արգելոյր զնոսա ի գործելոյ զապիրատութիւնն ։

Ապա իբրեւ գիրս մարտամբոխ ժամանակին տեսին, սկսան վերստին հակառակ լինել իշխանութեանն Աշոտոյ . եւ ամենայն ուրեք ջանային գայթակղութիւն դնել անձին նորա ։ Եւ յարձակեալ ի վերայ նորա գիշերի զի էր ի հանգստեան, և զզօրսն իւր սփռեալ զգաւառաւն, կամէին սպանանել զնա . այլ զգացեալ պահապանքն՝ ազդեցին իշխանին զհէնն որ եհաս ի վերայ. և փախստական եղեալ ապրէր ի ձեռաց նոցա. իսկ նոցա լցեալ բազում աւարաւ ի գանձուց իշխանին Աշոտոյ՝ դարձան ի հետոց նորա ։ Իսկ նորա իմացեալ զդաւաճանութիւն նոցա, զի յաւուրս խռովութեան վրէժխնդրութիւն չարութեան յուզէին առնուլ ի նմանէն, անձնապահ լինէր ի նոցանէն աւուրս ինչ ։ Եւ ժողովէր զաղխս տան իւրոյ յամրոցն Դարունից, եւ զորդիսն եւ զամենայն ընտանիս իւր . եւ թողոյր ի վերայ պահապան զամրոցն պահել ։ Եւ ինքն անցեալ գնայր յաշխարհն Ասորւոց առ իշխանն Իսմայելի Մրվան առ. ի զեկուցանել նմա զիրս ազմկին որ ի մէջ նորա և նախարարաց իւրոյ ։ Եւ իբրեւ եհաս Պատրիկն զօրօք իւրովք ի տեղի մարտին, բա-

զոր յաղթութիւն լինէր զօրացն Մրուանայ եւ խորտակումն հակառակորդաց նորին . քանզի լուան ընդ համբաւ գալստեան նորա , եթէ եհաս պատրիկն Հայոց ի թիկունս օգնականութեան, եւ ունի ընդ իւր ընտիրս հեծելոցհնգետասան հազար արանց վառելոց ։ Եւ զայս լուեալ հակառակորդացն Մրուանայ՝ լքան ի պատերազմէն, և հարուածք մեծամեծք եղեն յաւուր յայնմիկ . եւ պարտեալք ի պատերազմէն՝ առ փոքր մի դադարեցին ։

Եւ զայն ժամանակ յորում էր իշխանն Աշոտ յերկրին Ասորւոց, կացոյց որդին Մսլիմի ի վերայ զօրացն Հայոց իշխան՝ զԳրիգոր ի տանէ Մամիկոնեան փոխանակ Աշոտոյ ։ Իսկ Մրուանն տեղեկացեալ զամբաստանութիւնն զորդւոցն Սմբատայ եւ զոր ինչ արար ընդ նա Դաւիթ՝ եղբայր Գրիգորի, յղէր դեսպան առ որդին Մսլիմի Իսահակ որ էր հրամանատար աշխարհիս Հայոց . եւ հրամայէ ունել զԴաւիթ եւ տալ ի ձեռս Օքբայի ումեմն զի դատապարտեսցէ զնա որպէս եւ հրամայեալ էր վասն նորա ։ Եւ նա թէպէտ ընկալաւ զհրամանն՝ ոչ կարաց յապաղել, այլ նոյնժամայն կոչեաց նենգութեամբ ունել զնա, եւ տայր ի ձեռս անողորմ դահճի, զոր առեալ կապէր դառն կապանօք, եւ դնէր ի կալանս բանտի աւուրս ինչ ։ Եւ գրէ առ Մրուան եթէ զինչ հրամայեսցէ ։ Եւ առեալ հրաման ծայրակոտոր առնել

ոտիւք եւ ձեռօք, եւ փայտիւ դատապարտել իմաց ։ Եւ այսպէս ողորմելի եւ ծանականաց (արժանի) մահու վճարէր ի կենաց. զոր ոչ ասացաւ հաճոյ Աստուծոյ բարք ատելութեանն զոր ունէին առ միմեանս . զի արդա՛րև չար սերմանցն չար արդիւնաւորութիւն ըստ ասողի բանին ։

Եւ իբրև այս չարիք ի գլուխ ելանէին՝ դարձեալ հաստատէ զիշխանութիւնն Աշոտոյ Մրվան, և տաքէ զնա մեծամեծ պատուօք յերկիրս Հայոց ։ Եւ յայնմհետէ ոչ դադարէր Գրիգոր յերկնելոյ զհակառակութիւն վասն քինախնդիր լինելոյ կորստեան եղբօրն, թէպէտև վասն երկիւղի բռնաւորացն առնէր խաղաղութիւն ընդ Աշոտոյ բանիւք միայն . այլ սրտիւ ոչ մօտեցաւ զհետ իշխանութեան նորա . քանզի սպասէր հասանել ժամու, յորում հասանէր կամացն խորհրդի ։ Եւ մինչդեռ տակաւին երկարէր մարտ պատերազմին ի մէջ նոցա՝ յայնժամ խորհեցան ամենայն նախարարք աշխարհիս ընկենուլ զլուծ հնազանդութեանն եւ ապստամբել եւ ի բաց կալ ի հնազանդութենէն Իսմայելի ։ Յոր խորհուրդ յօրդորեաց զնոսա ի Մամիկոնեան տոհմէ ։ Եւ զայս խորամանկութիւն նիւթէր վասն հանելոյ զիշխանութիւնն յԱշոտոյ ։ Եւ եկեալ ամենայն նախարարք Հայոց առ իշխանն Աշոտ՝ հարկեցուցանէին զնա կամակցել եւ միաբանել անօգուտ խորհրդին ։

Եւ տեսեալ իշխանին զմիաբանութիւն նախարարացն և նոցին հեծելոց, զի առ հասարակ յեղեալքէին զհետ անօգուտ խորհրդին, վարանէր յանձն. և կոչեալ զմի մի ի նախարարաց իւրոց՝ բազում բանիւք թախանձէր ոչ մտանել ի գործ ապիրատութեանն զի ասէր « ո՞վ եղբարք՝ ոչ տեսանեմ խոհական մտաց զգործ անզգայութեանդ, այլ անուղղայ խորհուրդ եւ բանս տարապարտս . քանզի ահա նուազունք են զօրքս մեր ի մէջ բռնութեանն Իսմայելի, եւ ոչ կարեմք զդէմ ունիլ զօրաց նոցա , եւ ոչ զերկիր մեր հանել ի բերանոյ վիշապացն ։ Եւ միայն աշխատութիւն և վտանգ հասուցանեմք ի մտածմունս մեր . այլ եթէ կամիցիք ընդունիլ զխրատ իմ, ոչ արասցուք զբանդ զայդ, և հարկեսցո՛ւք նոցա որպէս ցարդ եա, և կալցո՛ւք զստացուածս մեր, զայգիս, զանտառս եւ զանդաստանս մեր » ։ Եւ ոչ կամեցան ընդունիլ զխրատ իմաստութեանն նախարարքն Հայոց. այլ դիմադարձեալ ասեն « եթէ ոչ միաբանեսցիս ի խորհուրդս մեր՝ ո՛չ մնայցէ առ քեզ եւ ոչ մի ոք ի զօրաց քոց. չկարեմք ժուժկալել տագնապիս յորում կայ երկիրս Հայոց » ։ Իսկ ապա հաւանեալ ակամայութեամբ իշխանին Աշոտոյ՝ առնէր միաբանութիւն ընդ Գրիգորի և ընդ այլոց նախարարացն , և դնէին դաշինս ուխտի առ միմեանս միջնորդութեամբ տէրունեան նշանին աննենգ պահել զսէր միաբանութեանն։

Եւ իբրեւ զայս դաշինս հաստատէին, մեկնէին ի հռոմանաստանէն որ ի վերայ աշխարհիս, և երթեալք ապաստանէին յամուրս աշխարհին Տայոց հանդերձ ամենայն ընտանեօք իւրեանց եւ ամենայն աղխիւք. եւ ապաստանեալք առաւել ի զօրս արքային Յունաց որ էին ի կողմանս Պոնտոսի . քանզի էր ի մէջ նոցա ուխտ խաղաղութեան հռոմանաւ կայսերն Կոստանդնի ։ Եւ ամենայն ուղիք յանցանաց երթեալ խառնէին ի գունդ ապստամբութեանն որք ոչ ճանաչէին զերկիւղն Աստուծոյ եւ ոչ զահ իշխանաց, եւ ոչ զպատիւ ծերոց. այլ իբրեւ այլազգի եւ օտարացեալ՝ ապստամբ սփռեալ գերէին զեղբարս և զազգակիցս իւրեանց, և բազում աւարառութիւնս առնէին խուշտանգանաւք եւ զանիւք տանջանս ածեալ ի վերայ եղբարց իւրեանց ։

Յաղագս որոյ սարջացեալ ներողութիւնն Աստուծոյ՝ քակեաց զմիաբանութիւն նոցա. զի և ոչ զամն ողջոյն յաջողեաց նոցա զգործ ապիրատութեանն. այլ անդէն ի մօտոյ մեկնեալ ի նոցանէն իշխանն Աշոտ՝ գայր հասանէր ի գաւառն Բագրեւանդ ի գիւղն Հազր եւ ոմանք ի նախարարացն ընդ նմա . և կամէր միաբանիլ ընդ որդւան Իսմայելի ։ Անդ ուրեմն նենգեալ նախարարքն որ ընդ նմայն էին՝ զեկուցանէին չարացերն Գրիգորի զիւրս խորհրդին ։ Իսկ նորա զվաղնջուց խորհեալ դաւաճանութիւն ի գլուխ կամեցեալ

տանել, վաղվաղակի կազմէր զզօրս իւր, եւ հետամուտ եղեալ զկնի նորա՝ իբրեւ ագռաւ ընդ լերինս ընթացեալ հասանէր ի գիշերի ի վերայ նորա, եւ պաշարէր զկայս հանգստեան նորա՝ գիտացեալ զերկմտութիւն զօրաց նորա զի ոչ եկին ի թիկունս օգնականութեան ։ Եւ ըմբռնեալ զնա՝ տայր ի ձեռս ծառայիցն Դաւթի, եւ հրամայէր բառնալ զլուսաւորութիւն աչաց նորա . եւ ստուերամած խաւարաւ նսեմացուցանէր զբոլոր աշխարհիս պարծանս . եւ ի խոր տխրութեան պարփակէր ոչ միայն զանձն նորա, այլ եւ զամենայն համատոհմ նախարարս ազգին իւրոյ ։ Որոց յետոյ իրազեկ եղեալ՝ ոչ ինչ կարացեալ օգուտ գործել . այլ նստեալ միայն ողբովք եւ աշխարանօք լային զի անկեալ կործանէր պսակն պերճութեան ի գլխոց նոցա . եւ յայնմհետէ բառնայր փառք ազգիս Հայոց ։

Իսկ բարեղլլուժն Գրիգոր որպէս ի մեծ արիութենէ դարձեալ, անկանէր ի քաղաքն Կարնոյ . եւ տայքէր ի կողմանս կողմանս աւետիս զյաղթութեան իւրոյ ։ Եւ ոչ յետ բազում աւուրց հասանէր ի վերայ նորա դատաստանն Աստուծոյ ըստ արժանի գործոց իւրոց . քանզի ուռուցեալ որովայն նորա՝ ուժգին վտանգիւ տագնապէր զանձն նորա, եւ այնպէս սատակէր իկենաց անյիշատակ բարձեալ ի միջոյ ։ Եւ փոխանակ նորա կացուցին իշխան

զերդբայր նորին զՄուշեղ սակաւ ինչ ժամանակս ։

Իսկ Աշոտոյ կալեալ զիշխանութիւն ամս տասնեւ
եօթն փառաւորապէս պատուով քան զառաջինսն,
որ նախ քան զամենայն իշխանսն որ յառաջքան ըզ
նա, հանդիպէր դաւօղ նենգութեանն . եւ կեցեալ
յետ այնորիկ ամս տասներեք՝ վախճանէր բարւոք
ծերութեամբ, եւ եղեալ ի տապանի փառաւորապէս
ի կայս հանգստեան իւրոյ ի գիւղն Դարիւնս ։

Կայ եւ մեզ դառնալ յառաջին շարակարգ պատ-
մութեանս ։ Քանզի մինչդեռ Մրվան ունէր զիշ-
խանութիւնն Իսմայելի, եւ մարտնչէր ընդ իւր ազ-
գին . դարձեալ այլ մոլեկան հուր հրդեհի բորբոքէր ի
կողմանց Արեւելից յերկրէն Խորասան աշխարհին ։
Քանզի իբրեւ տեսին ամենայն նախարարք որդւոյն
Իսմայելի զի զօրացաւ ի վերայ նոցա անհանդուր-
ժելի վտանգ յիւրեանցայոցն՝ Ջանային զապրել ան-
ձանց գտանել . յորոց ոմանք ի նոյն տոհմէ յօբէնըս-
դրին իւրեանց հատուածեալք՝ փախստեայ անկա-
նէին ի Խորասան յաշխարհն, եւ թագստեամբ կէին
անդ ժամանակս ինչ ։ Ապա յետ այնորիկ միաբա-
նեալ զզօրս Խորասան աշխարհին՝ կացուցանէին զօ-
րավարս ի վերայ նոցա զԿահաթբա եւ զԱբու-
Մսլիմ ոմն որ էր խորամանկ յաստեղագիտական
աղանդն ։ Եւ սոքա միաբանեալք սպանին զհրաման-
նատար աշխարհին, եւ զզօրս նորա յինքեանս դար-

ձուլեալ եւ զայլ բազմութիւն խառնիճաղանճից աշխարհին, որք տագնապեալ էին յանհնարին բռնութենէ հարկապահանջից, սկսան տակաւ յարձակիլ ի կողմանս Ասորեստանի . որոց ընդդէմ երթեալ զօրքն Մրվանայ՝ ոչ կարէին դդէմ ունիլ այնմ ամբոխին զի ի Տեառնէ էր խորտակումն իշխանութեան նորա : Եւ զբազումս հարեալ սատակէին եւ զայլսն փախստական առնէին գունդք Աբդլայից որ կոչին որդիք Հեշմայ : Եւ ինքեանք յառաջ մատուցեալ՝ անցանէին ընդ գետն Տիգրիս, և նուաճէին զբազում քաղաքս Հնազանդեալ ընդ նոքօք . եւ զամենայն զօրս զոր միանգամ առաքէր Մրվան ընդդէմ նոցա , խորտակեալ ջախջախէին , եւ զմեծ բանակետղն Տաճկաց (20) Ակողա (21) զամենեսեան Հնազանդէին :

Իսկ բնակչացն Ակողայ եւ Բասրայ տեսեալ ըզբռնութիւն զօրութեան նոցա, ձեռնտու եղեն և յաւելան ի զօրս նոցա : Զոր զգացեալ Մրվան՝ տագնապաւ մեծաւ վարանէր, եւ բաշխեալ զխանութս գանձուցն արքունեաց՝ սփռէր զօրացն : Եւ վառեալ զինքն բազմութեամբ զօրացն՝ ելանէր ընդդէմ նոցա : Եւ իբրեւ հասանէին առ միմեանս եւ յարդարէին ճակատ առ ճակատ եւ խառնէր պատերազմն , բազումք լինէին վիրաւորք ի կողմանցն երկոցուն, եւ անթիւ դիակունք դաշտացն տապաստ անկանէին .

եւ յերկարաձգէր պատերազմն ի մէջ երկոցունց
մինչեւ ի գլուխ ելանել ամին այնմիկ ։ Իսկ ի վերջա֊
նալ ամին վեցերորդի իշխանութեանն Մրվանայ՝
հասանէր ի վերայ նորա վրէժխնդրութիւն յԱստու֊
ծոյ խնդրել ի ձեռանէ նորա զարիւն զոր եհեղ յազ֊
գէն իւրմէ ։

Եւ զօրացեալ զօրք Աբդլլայի՝ յարձակէին ի վերայ
նորա գազանաբար, դիմեալ հասանէին ի բանակն
Մրվանայ, եւ հարեալ սատակէին ի նոցունց հար֊
ուածս սաստիկս յոյժ յոյժ ։ Զի ասեն լինել զթիւ ան֊
կելոցն ի միում նուագի երեք հարիւր հազար արանց
հեծելոց, մինչեւ գնալ յարեննէն վտակք առուաց, և
ի գոլորշիս արեանն լինել մէգ եւ մութ ամպաւ ։ Եւ
զմնացորդս զօրուն առեալ արկին ի մէջ բանակին
Մրվանայ . եւ հասանէին մինչեւ ի դղեկաձեւ կազ֊
մած պարտակին եւ ի վրանն Մրվանայ, եւ զնա
ինքն հարեալ սատակէին ։ Եւ զայս ամենայն չարիս
եւ դղրդմունս պատերազմաց եւ զաւմունս քաղա֊
քաց և հեղմունս արեանց կատարեալ ամս վեց, վախ֊
ճանէր (22) ։

Եւ տիրէ ընդ նորա Աբդլլա (23), եւ առաքէ զեղ֊
բայր իւր զմիւս Աբդլլա շրջիլ ընդ ամենայն աշխարհս
իւրոյ իշխանութեան ։ Որ նախ՝ եկեալ յաշխարհս
Հայոց, բազում վշտօք եւ նեղութեամբք վտանգէր
զամենեսին, և հասուցանէր ի չքաւորութիւն տնան֊

կութեան մինչեւ պահանջել հարկս եւ ի մեռելոցն ։ Զամենայն բազմութիւն որբոց եւ այրեաց չարալլուկ տառապեցուցանէր ․ վտանգէր զքահանայս եւ զպաշտօնեայս աստուածային խորանին խոշտանգանօք եւ քքօք այպանութեան եւ գանիւք ի յայտ ածել զանուանս փախճանելոցն եւ զընտանիս նոցուն ։ Խոշտանգէր եւ զընակիչս աշխարհիս բռնադոյն եւ դառն հարկապահանջութեամբ առնուլ ըստ գլխոյ բազում զուզէս (24) արծաթոյ, եւ դնել կնիք կապարեայ յամենեցուն պարանոցս ․

Իսկ տոհմ նախարարացն որ կամաւ որ յակամայ յաճախէին տալ ընծայս ձիոց եւ ջորւոց եւ հանդերձից պատուականաց և զայլ մթերս ոսկւոյ եւ արծաթոյ որպէսզի կարասցեն լնուլ զբերան վիշապին որ յարձակեալ էր ապականել զերկիրս ։ Եւ նորա լցեալ զանյագութիւն չարընկալ որովայնին՝ անցանէր ընդ կողմն Պարսից և Մարաց մինչեւ յաշխարհն Խորասան, եւ անդուստ յԵգիպտոս և ի Պենտապոսական (25) աշխարհն մինչեւ յԱփրիկայ (26) ։ Եւ ամենայն ուրեք ուր եւ հասանէր՝ զյափշտակօղ բարս ագահութեանն իբրև զվարմ ձգեալ խտամբիծն՝ որսայր զկենաց մարդկան զհետեւանս մինչեւ կոչիլ յիւրական ազգէն անուն զլացութեան նորա հայր դանգի։ զի որպէս բանից կարդ է ասել՝ զդանգ առաւել քան զԱստուած մեծարէր ։ Եւ իբրեւ գնացեալ մեկնե֊

ցաւ յաշխարհէս, Թողոյր հրամանատար դատաւորութեան և հարկապահանջութեան ի վերայ աշխարհիս Հայոց զԵգլոս՝ որդի Ռասգի ·

Եւ Եգլոս կացուցանէր ի վերայ աշխարհիս իշխան ի Նախարարացն Հայոց զԻսահակ՝ որդի Բագարատայ ի նոյն տանէ իշխանին Աշոտոյ, որ էր որդի հօրեղբօր նորա, այր գեղաղէշ երեսօք և երեւելի հասակաւ և ազնուական բնութեամբ եւ ծանօթ երկրին Աստուծոյ ։ Եւ առաջնորդէր զօրաց իւրոց ակամայութեամբ կռուել զաշխատութիւն մարտիցն ուր և առաքէր · զի յայնմհետէ հատաւ սակ արծաթոյն որ գայր ամի ամի յարքունուստ զօրացն Հայոց ։ Եւ զհամար հեծելոցն պահանջէին յիշխանացն · եւ հարկ լինէր ի տանց իւրեանց հանդերձել զգունդս զօրացն և զընթացս զրավաստակ աշխատութեանցն ողջ պահել ·

Եւ Աբդլայն լցեալ զերրորդ ամ իշխանութեանն վախճանէր ։ Եւ առնոյր զիշխանութիւն նորա եղբայր նորին միւս Աբդլա (28) ամս քսան եւ երկու ։ Ի սորա աւուրս շարժեալ Թագաւորն Յունաց ի կայսերական արքունեան մտիցն՝ բազում և ծանր ամբոխիւ գայր, հասանէր յաշխարհն Կարնոյ ի քաղաքն որ կոչի Թէոդուպօլիս ։ Եւ իբրեւ յական թօթափել կործանէր զգլխապարիսպ ամրոցին արքայն Կոստանդին որ էր որդի Լեւոնի (29) ։ Եւ բացեալ ըզ

տուն գանձուցն՝ բառնայր բազում կշիռ ոսկւոյ եւ արծաթոյ ։ Գտանէր ի գանձի անդ զնշան տէրունեան խաչին, զոր առեալ տանէր ընդ ինքեան ։ Նա և զզօրսն քաղաքին և զբնակեալսն ի նմա Սաակինոս բառնայր նոյին ընտանեօք յաշխարհն Յունաց։ Եւ բազումք ի բնակչաց գաւառացն խնդրեալ յարքայէն զի ընկեսցեն զանուր լծոյ ծառայութեանն Իսմայելի յանձանց եւ գնասցեն զկնի նորա ։

Եւ նորա տուեալ հրաման, վաղվաղակի հանդերձեալ զաղխս իւրեանց՝ խաղային յառաջ ապաւինեալք ի զօրութիւն տէրունեան Խաչին եւ ի փառս արքային. Թողին զերկիր ծննդեան իւրեանց, և հատուածեալք անկան ի կողմն արքային բարեպաշտի ։ Իսկ ի գալ միւսոյ ամին կազմեալ Եզիտոն զզօրսն որ ընդ ձեռամբ իւրով, երթայր, հասանէր ի քաղաքն Կարնոյ. եւ արկանէր մարդահարկ ի վերայ աշխարհին. եւ հաւաքեալ զբազմութիւն անթիւ՝ կացուցանէր գործավարս ի վերայ գործոյն, եւ փոյթ յանձին կալեալ շինէր զխրամատեալ պարիսպ քաղաքին ։ Եւ ածեալ արս յորդւոյն Իսմայելի բնակեցոյց ի նմա նոցին ընտանեօք պահել զքաղաքն եւ զգուշանալ ի թշնամեացն ։ Եւ կարգեաց նոցա պատրաստութիւն կերակրոց յաշխարհէս Հայոց (30) ։

Յայնմ ժամանակի ոչ դադարէր ամբոխ աղմկի հե-

ութեան անօրէն ազգին յաշխարհէս ։ Քանզի ամենայն ուրեք զբնական իւրեանց չարաճճարութիւնն ոչ լքին յանձանց որդիքն Բելիարայ ․ այլ խժաբար դիմեալ յանաստուած ոճն որում անունն էր Սուլէյման, եւ ընդ նմա որդիք յանցանաց ի կողմանս Պարսից՝ ապստամբէին ի կողմանս Վասպուրականի գործելով զանարժան բարս սննդակից չար սերմանցն ։ Որոց ի դիմի հարեալ նախարարք տանն Արծրունեաց Սահակ և Համազասպ սակաւ արամբք՝ անկան ի մէջ թշնամեացն ։ Իսկ նոքա իբրեւ տեսին զի նուազունք էին, ի մէջ արարեալք կամէին սպանանել ։ Իբրեւ տեսին Սահակ եւ Համազասպ զհէնն զարթուցեալ ի վերայ ․ եւ զի ոչ ուստեք փախուստ գտանէր, սուր ի գործ արարեալ՝ զբազմութիւն թշնամեացն խողխողէին ․ եւ ինքեանք դիմեալ ընդ տեղի մի ամրոխին զերծանել ջանային ․

Անդ կարեվէր խոցեալ Համազասպ՝ անկանէր յերիվարէն ․ եւ պատեալ զնովաւ թշնամեացն՝ սպանին ։ Եւ Սահակ իբրեւ ետես զսպանումն եղբօրն, յաղագս յաճախ սիրոյն զոր ունէր առ եղբայրն՝ մատնէր զանձն ի մահ ․ եւ ի խոնարհ անկեալ յերիվարէն՝ կարթակոտոր առնէր ․ եւ ինքն զայրագին անձամբ մենամարտէր եւ զբազումս դիաթաւալ կացուցանէր մինչեւ խնդրել զվրէժ արեան եղբօր իւրոյ ։ Եւ նոյն պարտեալ ի մարտին վախճանէր ։ Եւ

այնպէս վճարէին ի կենաց ընտիր նախարարքն որ էին որդիք Վահանայ Արծրունւոյ ։

Եւ ապա յետոյ ազդ եղեւ եղբօրն նորա Գադկայ եւ այլոց նախարարացն որ ընդ նոսա, եղանէին ի տեղի մարտին վայիւք եւ ճչօք . այլ ոչ կարացին հասանել թշնամեացն ։ Դարձան ողբովք եւ աշխարանօք թաղել զմեռեալսն ։ Իսկ թշնամիքն դարձան ընդ նոյն ճանապարհ, որ ապա յետ սակաւ միոյ անկաւ ի ձեռս Գադկայ Արծրունւոյ եւ սպանաւ Սուլէյմանն և բազումք այլ ընդ նմա։ Եւ մինչդեռ ունէր զհրամանատարութիւն իշխանութեանն Եզիտ, յղէր դեսպան առ արքայն Հիւսիսոյ, որում Խաքանն կոչէին, և խնդրէր առնել խնամութիւն ընդ նմա . որպէսզի ի ձեռն այնորիկ արասցէ ուխտ խաղաղութեան ընդ նմա եւ ընդ զօրս Խազրաց ։ Եւ հաւանեալ արքայն Խազրաց՝ տայր զդուստրն իւր նմա կնութեան, որում անունն էր Խաթուն . և առաքէր ընդ նմա նաժիշտս եւ աղախնայս և ծառայս բազումս ։ Եւ կեցեալ Խաթունն սակաւ ինչ ժամանակ՝ վախճանէր ։ Եւ բարձաւ ուխտ խաղաղութեանն որ ի մէջ նոցա . քանզի իբրեւ դաւով նենգութեամբ համարեցան զմահ նորա ։ Եւ գումարեալ զօր բազում տայր ի ձեռս զօրավարի միոջ որ անուանեալ կոչիւր Ռաժթարխան՝ ի զնդէն Խաթիրլիթբերայ (31), եւ առաքէր ի վերայ աշխարհիս որ ընդ ձեռամբ Եզտի ։ Որոց

սփռեալ զասպատակս իւրեանց ըստ հիւսիսոյ գետոյն Հզօրագունի որ կոչի Կուր, առնուին բազում գաւառս զՀէջար, զՔաղա, զՈստան մարզպանեան, զՀարանդ, զԳեղաւու, զՇաքէ, զԲեխ, զԽենի, ըզ Կամբեխճան, զԽողմազ (32) : Այս գաւառք աշխարհին Աղվանից (33) : Աւերին և զցանկալի դաշտն Բաղասական (34), յորում անթիւ բազմութիւն հօտից եւ նախիրք անդէոց բազմաց, զորս առին յաւարի : Աւերին եւ յաշխարհէ իշխանութեան Վրաց գաւառս եօթն զՇուչք, զՔուէշկափոր, զՋելթդ (35), զՄուքէթ, զՎէժիսցիխէ, զԹիանէթ, զԵրկ : Եւ հաւաքեալ զբազմութիւն գերեստանեացն և աւար բազում՝ դարձան ի բնակութիւնս իւրեանց : Եւ ոչ կարաց ընդդատախօս պատագրոսն այն համբառնալ զգլուխն իւր որ ունէր զիշխանութիւն հրամանատարութեան աշխարհիս Հայոց , այլ միայն դօղեալ իբրեւ զանբան կալով՝ ոչ ինչ թուէր նմա կործանումն աշխարհին :

Իսկ ապա յետ սակաւ ինչ ժամանակի հատուածեալ նոյն վիրագն (36) որ էած սատուէր ի վերայ երկրին Աղվանից, գայր միաբանիլ ընդ իշխանին Իսմայելի . եւ յղեալ յաշխարհն Ասորւոց պատանդ զորդի իւր, ինքն վաղվաղակի վախճանէր սրով մերձ ի դրունս Աղվանից :

Ասացից դարձեալ եւ վասն ապստամբին այնմիկ,

զոր նախ՝ առաքէր Արղլա յաշխարհս Հայոց, որում Ծալէհ կոչէին. որ էր այր անօրէն եւ արիւնահեղ, յորմէ բազումք զգուշացեալ անձնապահ լինէին. քանզի ոչ կարէին յայնժամ այնպիսի նեղութեան տանել: Էին ոմանք ի նախարարացն Հայոց որք մերժեալ լքին զժառանգութիւնս իւրեանց, եւ փախստեայ անկան յաշխարհն Յունաց ապաւինեալք առ կայսրն Կոստանդին: Իսկ Գագիկն որ էր տէր Արծրունեաց տան, իբրեւ ոչ գտանէր տեղի փախստեան, անդէն զաղթէր յամրոցն որում Նկանն (37) կոչեն. եւ ժողովեալ առ ինքն զնախարարս աշխարհին նոյին հետեւովք, եւ ելեալ ապստամբ սփռէր զկողմամբք Ատրպատական աշխարհին՝ ի Զարեւանդ գաւառ, ի Բուտակս եւ Զիդոյ, ի Տասուկ, ի Գազնակ, ի Ցորմի, ի Սուրենապատ եւ յայլ եւս մերձակայ գաւառսն, յորում գործէին գործ անհաճոյ Աստուծոյ նմանեալ անօրինաց, որ ոչ վայել էր Քրիստոնէից: Պահանջէր եւ հարկ յաշխարհէն բազում տաղնապաւ խոշտանգեալ, եւ զայր հասանէր ի գաւառն Հեր, յորում վայրի հասանէ Բուհ ոմն զօրավար Իսմայելացւոյն, և ընկենոյր բազում վիրաւոր ի զօրուէն Հայոց եւ զայլսն փախստական ընկենոյր յամուրն Նկան. եւ ինքն շրջէր զգաւառօքն Վասպուրականի զի կարասցէ զնա որսալ յորոգայթ իւր: Այս իբրեւ տեսանէր տէրն Արծրունեաց զխորստա֊

կուռն զօրաց իւրոց, ոչ եւս կարաց եղանել ի գործ անօրէնութեանն. այլ անկեալ յամրոցն՝ դադարէր առ սակաւ մի: Ցետոյ այլ զօր եկեալ ի վերայ նորա, որոյ զօրագլուխ էր Մուսէ, պաշարեալ պահէին զամրոցն ամ մի: Եւ իբրեւ ոչ ինչ կարէր առնանել՝ դաւով նենգեալ կոչէր ի խաղաղութիւն. եւ ըմբռնեալ տայր ի ձեռն իշխանին Իսմայելի: Եւ նորա արկեալ զնա ընդ կապանօք՝ դնէր ի կալանս բանտի յանհանդուրժելի նեղութեան, և պահանջէր ի նմանէ զարծաթն զոր հարկապահանջութեամբ ժողովեալ էր յերկրէն Պարսից:

Իսկ նորա ոչ խնայեալ ի գանձս՝ որչափ գտանէր ի ձեռին նորա, (տայր) զի թերեւս կարասցէ շահել զկեանս իւր, այլ ոչ ինչ օգտեալ՝ անդէն վախճանէր ի տառապանս բանտին իբրեւ զայր մի յանարգաց: Եւ զորդիս նորին զՀամազասպ եւ զՍահակ յղեալ ժամանակս կալեալ ի կապանս. ապա ուրեմն անկուշեալ կամք չարաշուք դահճին՝ հանեալ հաւանութեամբ հաշտէր ընդ նոսա պատուելով, եւ առաքէր յերկիրն Հայոց:

Զայն ժամանակս ի հրամանատարութեան Եզիտի եւ յիշխանութեանն Աբդլլայի միւսոյ յոյժ ծանրացաւ անուր լծոյ հարկապահանջութեան ի վերայ աշխարհիս Հայոց. քանզի դժոխաձեւ ագահութիւն անհամբոյր թշնամւոյն ոչ շատացաւ ուտել զմարմինս

ընտրելոյ Քրիստոսի հօտիս եւ ըմպել զարիւն իբրեւ զջուր զարհամարհանս նոցա . այլ համօրէն զբոլոր երկիրս Հայոց արկանէր ընդ անհանդուրժելի վտանգիւք . զի վախճանեալ գիւտ արծաթոյ ի յերկրէս, եւ ամենայն ոք տալով զպահարանս ընչից իւրոց՝ ոչ գտանէր զգինս փրկանաց անձին իւրոյ. եւ չար կըտտանօք, գելարանօք, եւ կախաղանօք եւ դառն տանջանօք կեղէին զկեանս մարդկան ։ Յորմէ փախստեայ եղեալ բազումք ի յայրս եւ ի փապարս երկրի ղօղեալ թագչէին . եւ ոմանք ձիւնահեղձ եւ գետավէժ լինէին վասն անտանելի աղետիցն . զի ոչ էր գիւտ զոր հայցէինն, գտանել պահանջունն սակի արծաթոյն, այլ ըստ գլուխս արանց . որովք թախուր մնացեալք յամենայն ստացուածոց՝ կապէին կապանօք տնանկութեան երկիրս Հայոց, եւ առհասարակ ճաշակէին ի Փոյցէ աղքատութեան նախարարք եւ մեծամեծք ։ Թէպէտեւ բազում անգամ բողոքէր իշխանն Սահակ եւ Հայրապետն Տէր Տրդատ որ ի տանէ Նախարարացն Վանանդ գաւառի . այլ ոչ լըուաւ զաղաղակ նոցա Եզիտն որ ի վերայ հարկին էր աշխարհիս։ Բարձրացեալ բողոք տրտնջմանն հասանէ առ Արքայն, եւ խորոխտացեալ կոչէ առ ինքն զԵզիտն . եւ փոխանակ նորա առաքէ զԲազար՝ որդի Մսլիմայ ։ Եւ յետ ոչ բազում ժամանակի, զի և ոչ զամ մի ողջոյն տեւեալ Բազարն, կոչէ զնա առ

ինքն առանց իրիք պատճառի, եւ առաքէ զՀասան՝ քանզի մեքենայօղ խորամանկութիւնն յորդորէր խոնարհեցուցանել զերկիրս Հայոց ի տեղիս չարչարանաց, մանաւանդ թէ ոչ նա այլ կամք Ողղէի իշխանացն կատարի, որում ի վերուստ վկայէր բարկութիւն գոլ (38) բազմութիւն մարախոյն եւ կարկուտք եւ երաշտութիւնք անձրեւաց ։ Այսոքիկ ցոյց բարկութեանն ի վերայ մեր ։

Իսկ իբրեւ եկն Հասան՝ որդի Կահաթբայ հրամանատու ի վերայ երկրիս Հայոց, եւ ընդ նմա գունդ բազում ի տոհմէ Խորասան աշխարհին, որք առաւել դառնութեամբ յաճախ գործէին զգազրագործութիւն եւ բազմացուցանէին զաղէտս և զհեծութիւնս աշխարհիս, զի որպէս նախքան զայս պատմեցաւ, ի Տեառնէ կարծրանային սիրտք նոցա առ ի վրէժխնդրութիւն չարեաց մերոց ․ զի արդարեւ սով և սուր եւ սասանութիւն յաճախէր յազգապետութեան նորա ։ Եւ եւս առ այսոքիւք արհամարհութիւնք հայրապետաց, այպանութիւնք եպիսկոպոսաց, գան եւ խոշտանգանք քահանայից, իշխանաց եւ նախարարաց քարշանք եւ քայքայութիւնք, որում ոչ կարացեալ համբերել զօրագլուխք աշխարհիս, հեծէին և հառաչէին յանհանդուրժելի տագնապէն ․ քանզի ըզռամիկ բազմութիւն մարդկան խոշտանգէին ազգի ազգի չարեօք, զոմանս փոկահարութեամբ ըկէին

վասն դառն հարկապահանջութեան, եւ զոմանս գելարանօք եւ կախաղանօք, եւ զոմանս մերկացեալ ի զգեստուցն՝ արկանէին ի մէջ լճից յաւուրս դառնաշունչ ձմերայնոյ, եւ կարգէին ի վերայ պահապանս զի չարչարեսցեն զնոսա, զոր պատմել ոչ կարեմք զաղետալին պատմութիւն ։

Ցայսմ վայրի ճառեսցուք զվայրենամիտ ազգէն Իսմայելի զխստասիրտ դառնութիւնն ի գլուխ ելեալ. քանզի իբրեւ տեսին նախարարք Հայոց զվտանգ տարակուսանացն հասեալ ի վերայ ինքեանց, եդին զագի ի ձեռին իւրեանց եւ ձեռնամուխ եղեն յիրս, զոր ոչ կարէին վճարել. վասնզի նուազունք էին ։ Այլ սակայն լաւ համարեալ զմահ քաջութեամբ քան զկեանս վտանգաւոր՝ ձեռնամուխ եղեն յիրս ապստամբութեան, եւ ի բաց կացին ի հնազանդութենէ Իսմայելի ։ Եւ սկիզբն բանիս այսորիկ լինէր ի ձեռն Արտաւազդայ որ էր ի տանէ Մամիկոնէից. որոյ երթեալ ի մայրաքաղաքն Դուին՝ կազմութիւն մեծ առնէր զօրաց իւրոց. եւ ստանայր անդ զէնս եւ անօթս պատերազմի, եւ վառէր զինքն զրահիւք և սաղավարտիւք եւ ամենայն սպառազինութեամբ, եւ մտերիմ զինքն երեւեցուցանէր զօրացն Իսմայելի իբրու թէ մարտնչել ընդ թշնամիսն նոցա կազմիցի ։ Եւ որոշեալ զինքն ի միաբանութենէ նոցա՝ հասանէր ի գաւառն Շիրակ ի գիւղն Կումայրի, եւ սպա-

նանէր զհրամանատար հարկին ։ Եւ որ ինչ գտանէր ի ձեռին նորա առեալ՝ համբառնայր ամենայն տամբ իւրով, գնայր ի կողմանս Վրաց աշխարհին, եւ ընդ նմա ամենայն նախարարք աշխարհիս ։ Եւ հասեալ համբաւն ի քաղաքն Դուին եթէ այս ոճիրք դառն գործեցան յորդւոցն Հմայեկի. վաղվաղակի առնոյր զօր բազում Մահմետն եւ զԱմրատ՝ որդի Աշոտոյ զսպարապետն Հայոց եւ զայլ նախարարսն. եւ հետամուտ լինէր զկնի նոցա. հասանէր յաշխարհին Վրաց ի գաւառին որ կոչի Սամցխէ. եւ կալեալ ըզ կիրճսն՝ թափէր ապուռ ինչ յաւարէն. և զնոսա վարեալ փախստական առնէր յաշխարհէս Հայոց ։

Իսկ նոքա երթեալ պատսպարէին յաշխարհին Եգերացւոց. և ստանայր անձամբ զիշխանութիւն անձին իւրոյ ի վերայ Եգերացւոց եւ ի վերայ Վէւրոյ որ են Վիրք ։ Եւ ի ձեռն այսր գործոյ առաւել զայրագնեալ հրամանատարն Հասան, և վաղվաղակի առաքէր յամենայն կողմանս իւրոյ իշխանութեանն զբռնութիւն հարկին ժողովել մեծաւ ստիպով. և յոյժ սաստկանայր հեծութիւն աշխարհիս ի պահանջողաց հարկին. քանզի ամենևին նուաղեալ էր զիւտ արծաթոյ յաշխարհէս Հայոց ։ Անդ ուրեմն շարժէր սիրտ նախարարի ուրումն ցասմամբ, որ էր որդի Հրահատայ կոմսի ի տանէ Մամիկոնեան, որոյ անուն էր Մուշեղ ։ Սա միաբանեալ ընդ իւր զոմանս ի նախարարացն

Հայոց, ի բաց եկաց ի Հնազանդութենէ Իսմայելի. և զօրեալ զօրանս յորդւոցն Իսմայելի ի գաւառի իւրում և ի տան իւր, որք եկեալ պահանջէին ի նմանէ զարիւնս ոմանց սպանելոց ի տոհմէ իւրեանց, խաղխաղէր զնոսա ի սուր սուսերի իւրոյ ։ Եւ ինքն գաղթէր յամրոցն Արտագերոյ հանդերձ տամբ իւրով ։

Եւ ելեալ նոյնժամայն ի գաւառն Բագրեւանդ՝ և ընդ նմա արք վաթսուն, և ըմբռնեալ զպահանջողսըն հարկին, որում անունն էր Ապումճուր եւ զորս ընդ նմա՝ հարեալ սատակէր ի սուր սուսերի իւրոյ . եւ լռեցուցանէր զպահանջումն հարկին յերկրէս ։ Եւ իբրեւ այս այսպէս վճարէր, ժողովէին առ նա ամենայն վշտացեալք եւ վտանգեալք հոգւով ։ Եւ յայնմհետէ զարթեան յամենայն կողմանց թշնամիք ի վերայ նորա . եւ նախաքան զայս՝ այլք յորդւոցն Իսմայելի ի քաղաքէն Կարնոյ հասանէին ի վերայ նորա, որք էին իբրեւ արք երկերիւր՝ վառեալք կուռ սպառազինութեամբ, յորոց վերայ հասեալ ի գիշերի ի գիւղն Խարս՝ սակաւ արամբք, զի էին բանակեալ ի մէջ այգեստանեացն . շուրջ կացեալ զնոքօք՝ վըլուզին զղուզնաքեայ պատուար այգեստանեացն զի էր կարկառակոյտ քարանց առանց հողոյ . եւ յանչափ դղրդմանէ քարանցն բախեալ երիվարացն զբազումս առաթուր հարեալ սատակէին . եւ առեալ զզէնս եւ զկապուտ անկելոցն՝ տայր զօրաց իւր և զերիվարս և

զամենայն կազմած զինուց. և ինքն խաղացեալ գնայր ի կողմն ամրոցի իւրոյ ։

Եւ իբրեւ այս լուր աղէտի հասանէր ի քաղաքն Դուին առ զօրավարն Իսմայելի Մահմետ, յամենայն կողմանց տագնապ մեծ յառնէր ի վերայ նորա . եւ գումարեալ զզօրս քաղաքին Դունայ՝ տայր ի ձեռն զօրագլխի միում որում անունն էր Ապունճիպ եղանել ի խնդիր վրիժու արեան սպանելոցն։ Եւ առեալ զօրավարին այնմիկ զընտիրսն հեծելոց իբրեւ արս 4,000 ուղղեալ ընդ պողոտայն արքունի՝ հասանէր ի գաւառն Բագրեւանդ ի գիւղն Բագաւան ։ Անդ ի վերայ հասանէր նոցա Մուշեղ եւ ընդ նմա արք իբրեւ երկու հարիւր . եւ մարտուցեալք ընդ միմեանս, օգնութիւն ի Տեառնէ վաղվաղակի հասանէր ի թիկունս գնդին Մուշեղայ . եւ բազում հարուածս հարեալ սատակէին ի զօրացն Իսմայելի . եւ զմնացորդսն ի փախուստ դարձուցեալ՝ հետամուտ լինէին մինչեւ յաւանն Արուճ, եւ զբազումս ճապաղ առնէին մինչև զնոյն ինքն զզօրագլուխն հարեալ սատակէին ։ Եւ մեծաւ յաղթութեամբ դարձեալ ի հետոց նոցա՝ լնուին բազում աւարաւ յաւարէ թշնամեացն։ Եւ փախստեայքն անկան ի քաղաքն Դուին սակաւք ի բազմաց ։ Ապա ընդ առաջ լինէին նոցա համազգիքն արք եւ կանայք վայիւք եւ ճչօք՝ հող ի գլուխ լինելով, զճակատ հարկանէին եւ զօձիս պատառէին,

եւ ողբումք եւ աշխարանօք լնուին ամենայն փողոցք լայնանիստ քաղաքին ։ Եւ ահ մեծ անկանէր ի վերայ Սատակինասի զնդին. և ոչ լինէր նոցա համարձակ ելանել (արտաքս) քան զքաղաքն . այլ անձնապահ լինէին յամրութեան քաղաքին ։

Ապա իբրեւ զայս յաջողուած գործոյ տեսանէին նախարարք Հայոց, ամենեքեան միամտեալ ընթանային զհետ անմիտ խորհրդին . զի կարծէին լցեալ զժամանակ իշխանութեանն Իսմայելի, եւ մանաւանդ պատրեալք առաւել ի կարծիս առն միոյ մոնազոնի որ մոլորութեան հոգւոյն շարժեալ՝ մարգարէանայր սնոտիս եւ ընդունայն ասելով « ահա մերձեալ է ժամանակ փրկութեան ձերոյ . զի այժմ ընդ հուպ դարձցի զաւազան թագաւորութեանն միւանգամ ի տուն Թորգոմայ. առնուք ձեզ զվրէժ յազգէն Իսմայելի. եւ դուք մի՛ զանգիտէք յերեսաց նոցա թէ նուազունք իցէք» զի մի այր ի ձէնջ հալածեսցէ զհազարսն, եւ երկուքն զբիւրսն զի զպատերազմն ձեր Տէր պատերազմեսցի, զօրացարո՛ւք, մի՛ զանգիտէք » ։ Եւ այսպէս տեսիլ սուտ եւ բաղձալի սրտից օր ըստ օրէ պատմէր նոցա, որում առհասարակ հաւատացեալ՝ տեսանօղ զնա կոչէին ։ Եւ յայսմ բանէ ամենեքեան պատրեալք՝ գրգռեցուցանէին զմեծ սպարապետն Սմբատ՝ որդի Աշոտոյ հաւանել այնմ խորհրդի։ Իսկ նա իբրեւ յակամայ կամաց շարժեալ յիւրմէ

հաստատուն եւ յանխոնարհելի խորհրդոցն՝ չոգաւ զկնի խաբերայ եւ մոլեկան առն այնորիկ (39) ։

Եւ ժողովեալ ամենայն նախարարք Հայոց ի մի վայր՝ առնէին առ միմեանս երդմունս և դաշինս ուխտի, կեալ եւ մեռանել ընդ միմեանս ։ Եւ այսպէս միախուռնժողովեալք առ միմեանս՝ լինէին իբրեւ արք հինգ հազար. զի բազումք ի ռամիկ ժողովոց եկեալ խառնէին ի գունդն նոցա. և համբարձեալ գնային ի կողմանսն յայնոցիկ պաշարել զքաղաքն Թէոդուպօլիս որ է Կարնոյ քաղաք ։ Եւ պաշարէին զնա պատնշօք, և զամենայն ժամանակս ձմերայնոյն մարտ եղեալ կռուէին ընդ նմա կանգնեալ զնովաւ մահարձան, եւ հատանէին վէմս ծակուց արտաքուստ ի քաղաքն . այլ ոչ ինչ կարացին առնանել, բայց որչափ սակաւ ինչ ի պարէ մեքենայիցն, որովք սպառակէին ի քաղաքէն ։

Իսկ Աշոտ ի տանէ Բագրատունեաց՝ որդի իշխանին Սահակայ, զի էր այր խոհական հանճարով, ոչ միաբանեաց ի գործ մնասակար աղէտին . այլ եւ ըզնոսա եւս խրատէր ի բաց թողուլ զմնասակար կարծիսն զոր ունէին ի մնասակար խրատուէ մոլեկան մոնոզոնին, և անձնապահ լինել անձանց եւ ընտանեաց նոցին, զի ասէր « մանկունք էք եւ կրտսերագոյնք հասակաւ . եւ գիտեմ եթէ ոչ կարէք զդէմ ունել զօրութեան բազմագլուխ վիշապին, զի հզօր է

զօրութիւն նորա և անթիւ բազմութիւն ընդ ձեռամբ նորա, եւ անչափ պատրաստութիւն զինուց ի գանձս նորա. եւ ամենայն թագաւորութիւնք որք հակառակ կային իշխանութեան նորա, փշրեցան որպէս զանօթ բրուտի. զի թէ Հռովմայեցւոց թագաւորութիւնն ոչ կարաց համբառնալ զձեռս ի վեր. այլ սարսեալ դողաց յերեսաց նորա, եւ ոչ յանդգնէր ընդդէմ տէրութեան հրամանին. զի եւ դուք չէք անտեղեակ ամենայն զօրութեան արքային Յունաց, քաջութեան անձին նորա, և բազմութեան և պատրաստութեան զօրաց նորա, զի ամենեքին ընդ միտ անգամ ոչ էառ ածել զմտաւ առնուլ զաշխարհս Հայոց ի ձեռաց նորա: Կոստանդին՝ որդի Լեոնի, որ մենամարտեալ ի միում աւուր ընդդէմ ահաւոր գազանացն՝ սպան զառիւծն իբրեւ զուլս այծեաց: Արդ՝ որ զայս ույժ զօրութեան ունէր, այնպէս ընթադրեալէ յահէ չարաթոյն գազանին որ ապականէ զերկիր. իսկ դուք յո՞վ արդեօք ապաւինեալ, եւ կամ որո՞վ զօրութեամբ եւ որո՞վ ուժով կարէք դդէմ ունել անյաղթելի իշխանութեան նոցա: Այլ արդ՝ եթէ հաճոյ թուի անձանց ձերոց՝ ընկալարուք զխրատ իմ, քանզի զօգուտն ձեր եւ զպիտոյսն եւ զանդորրութիւն աշխարհիս տեսանեմ ես. զի այս լինի ելք գործոյդ, կամ դառնալ ձեզ և մտանել ընդ հնազանդութեամբ նոցա, եւ հանդարտել եւ կեալ խաղաղութեամբ յեր-

կրիս ձեր, և կամ մերժիլ փախստեամբ համօրէն ընտանեօք յերկրէս ձերմէ, եւ լքանել թողուլ զժառանգութիւն հարցն ձերոց, զբնակութիւնս ձեր, զանդաստս, եւ զանդաստանս, նաեւ զգերեզմանս հարց ձերոց ։ Եւ երթալ, բնակիլ նժդեհութեամբ ընդ արքային Յունաց ։ Եւ կամ թէ ոչ՝ անկանիցիք ի ձեռս Նեղչաց ձերոց ի միում աւուր, եւ անախորժելի մահուամբ բառնայցեն զձեզ ի կենացս, զի գիտեմ ես զբարս անաստուածութեան իշխանին Իսմայելի, զի ոչ դադարէ մինչեւ կատարէ զկամս անձին իւրոյ »։

Իսկ նոքա ոչ ընկալան զոր լուան՝ զբանս խրատու օգնականութեանն յընչաց քերէին իբրեւ զխրատ նենգութեան . քանզի յոյժ հաւանեալէին ստապատում առն մոլորելոյ, որ օրըստօրէ յորդորէր զնոսա կալ պնդակազմ ի գործն առաջարկեալ եւ մի ինչ երկմտութեամբ ըստգտանել զանձինս . որոյ անսուղզայ կամակորութիւն ջախջախումն խորհրդին անդէն ընդհուպ երեւէր . զի քակեալ ի միմեանց անմիաբանք լինէին ։ Զի նախարարք տանն Արծրունեաց Համազասպ եւ եղբարք իւր եւ զօրք նորին մնացին անդէն ի կողմանս Վասպուրական աշխարհին . եւ Վասակ՝ որդի Աշոտոյ եւ որք ի տոհմէ Ամատունեացն եւ Տրունեաց մնացին անդէն՝ ոմանք յամուրն բերդի ի Դարիւնս գեօղ եւ ի ծագն Մակուայ, եւ ամանք ի ձորն Արտազետ ամրացեալք՝ սփռէին շուրջ

զգաստաօքն ի սլէտս կերակրոց և անդրէն դառնային յամուրս իւրեանց ։

Իսկ զօրքն Տաճկաց որ ի Դուին քաղաքի, ելեալ ասպատակէին ի տեղիս տեղիս գաւառաց որ շուրջ զինքեամբք . եւ առնէին աւարառութիւնս եւ հեղ-մունս արեանց ի գեօղն Պտղունս եւ ի Թալին եւ ի Կոգբ եւ յայլ բազում տեղիս առ ի գործ աւարեալ՝ զբազումս դիաթաւալ կացուցանէին ։

Իսկ ի գալ գարնայնոյն գունդ կազմէր իշխանն Իսմայելի ի վերայ երկրիս Հայոց, և գումարէր զըն-տիրս հեծելոց իբրեւ արս երեսուն հազար ընտիր երի-վարաւ եւ կուռ սպառազինութեամբ ի տոհմէ Խո-րասան գնդին, տայր ի ձեռս զօրավարի միոյ որում անունն էր Ամր, եւ առաքէ զնա յինքենէ ի լայնա-նիստ եւ ի հռչակաւոր անուն քաղաքէն, զոր շինեաց ինքն Աբդլա (41) ապաւէն ամրութեան հզօրագոյն եւ անառիկ պարսպով ամրացեալ, որ անուանեալ կո-չէր Բաղդադ ։

Եւ համբարձեալ զօրավարին ի կողմանցն Ասորւոց՝ գայր հասանէր յաշխարհս Հայոց՝ ի քաղաքն Խլաթ մեծաւ զգուշութեամբ եւ բազում պատրաստու-թեամբ զինուց ։ Իբրեւ մտանէր ի քաղաքն, տեղե-կանայր ի քաղաքացւոցն անտի զօրախուութիւն զօ-րացն Հայոց եթէ քանի՛ք եւ ո՛յք իցեն զօրագլուխս, և եթէ միաբանի՞ք իցեն ի սէր միմեանց եթէ երկբայք,

եթէ քաջայաղթք լիցեն եթէ յամրաձիգք ։ Եթէ ունիցին պատրաստութիւն զինուց եթէ ոչ ։ Զայս ամենայն տեղեկացեալ՝ պատրաստէր ըստ նմին զգօրագլուխս զօրաց իւրոց ։

Իսկ Աշոտ՝ որդի Սահակայ զի էր ի քաղաքին յայնմիկ, զեկուցանէր զգալուստ թշնամեացն նախարարացն Հայոց զի ուր ուրեք եւ իցեն, ի մի վայր գումարեսցին կալ եւ մեռանիլ ի վերայ միմեանց ։ Իսկ նոցա անհաւատալի թուեալ իրք հրովարտակին՝ համարէին (թէ) դաւօղ խորամանկութեամբ կամի փրկել զքաղաքն ի պաշարմանէ անտի՝ իբր մտերիմ զինքն ցուցանել Իսմայելացւոցն. եւ զայս առեալք ի միտ՝ անընկալք եղեն բանից նորա, այլ տակաւին զառաջի արկեալն իւրեանց խոկային կատարել ։ Ապա յետ այսորիկ գումարէին նախարարք ազգին Արծրունեաց զզօրս Վասպուրական աշխարհին Համազասպ եւ եղբարք իւր և որք ի տոհմէ Ամատունեաց եւ զօրքն որ ընդ նոսա ։ Կոչէին ի թիկունս օգնականութեան զՎասակ՝ որդի Աշոտոյ զեղբայր Սմբատայ սպարապետի ի տոհմէն Բագրատունեաց եւ զզօրսն նորին. եւ խաղացեալ յառաջ՝ երթային ի վերայ Արճէշի առանի բրել զնա ի հիմանց եւ զզօրսն որ ի նմա հարկանել սրով ։

Եւ իբրեւ հասանէին ի գաւառն Աղբերանի ի գետղն Բերկրի՝ Յուսային միմեանց գումարութեան ։ Եւ զրա-

զոմն յաշխարհականացն հրաւիրեալ գլխի ինքեանց՝ ի հետիոտս տանէին ի մարտ պատերազմի ։ Եւ մինչ-դեռ զայս խորհուրդ առհասարակ կամէին կատա-րել, փաղփաղակի հասանէր առ նոսա լուր զօրացն Իս-մայելի, քանզի եկեալ ոմն պատմեաց նոցա եթէ զօր բաղում յորդւոյն Իսմայելի հասեալ ի վերայ՝ պա-տէ ձեզ ։ Որում ոչ անսացեալ Համազասպ՝ տէրն Արծրունեաց, հարուածովք տանջէր զնա իբրեւ ըզ հրապուրիչ ստութեան . եւ ինքն խրոխտացեալ գը-նաց ի վերայ Արճէշն աւանի հանդերձ զօրօքն իւրովք։ Եւ իբրեւ մօտ հասանէին ի քաղաքագիւղն՝ բնակիչք քաղաքին յառաջ զգացուցին ի քաղաքն Խլաթ առ Ամր զօրավարն Իսմայելի զգալուստ նախարարացն Հայոց։ Եւ նորա խաղացեալ բաղմութեամբ զօրացն՝ գայր, դարանամուտ լինէր մերձ ի գիւղն Արճէշ ։ Եւ մինչդեռ մարտնչէին գունդն Հայոց ընդ ամրոցին՝ փաղփաղակի յարեան դարանամուտքն ի թագստե-նէն եւ զեղան ի վերայ զօրացն Հայոց, եւ ի փախուստ դարձուցեալ՝ կոտորեցին զմեծ մասն հետեւակ զօրուն որ յաշխարհաբնակ մարդկանէն էին . քանզի էին մերկք եւ առանց զինուց եւ անհմուտք պատերազմի. որք միանգամ հանդիպեալք դաան լուսոյ աւուրն այնորիկ, ի սուր անողորմ մաշեցին զնոսա . և ոմանք առ վտանգի տարակուսանացն գետամէժ եւ ծովա-հեղձ լինէին ։ Իսկ ի տոհմէ նախարարացն փախճա-

նեցան արք չորս որք էին ի նոյանէն երեքն ի տոհմէ Տրունեաց եւ մի ի Ցուրծայ գեղջէ . իսկ որ յաւելիկ ժողովոյն վախճանեցան, էին իբրեւ հազար հինգ հարիւր մարդ ։ Եւ այլք ի փախուստ դարձեալք՝ հազիւ ուրեմն զապրուստ անձանց գտանէին ։ Եւ եղեւ չարըմբեր նեղութիւն վտանգիս այսորիկ յամսեանն հրոտից, որ օր չորրորդ էր ամսոյն յաւուր շաբաթու ։ Եւ Թշնամեացն հետամուտ եղեալ՝ հալածէին զզօրսն Հայոց մինչեւ ի տեղին որ կոչի Տայ գեօղ . և ապա դարձան ի հետոց նոցա, եւ առնէին ուրախութիւն մեծ ի բանակին իւրեանց ։

Ցայնժամ ոչ սակաւ յաճախէր հեծութիւն աշխարհիս Հայոց, եւ ուրացողաց Թշնամեացն ցնծութիւն եւ հրճուանք . քանզի նոյնժամայն չանչ կալեալք դարձեալ յարձակէին՝ ուշ եղեալ եկանել յառաջին պողոտայն արքունի ընդ դաւառն Ապահունիս, հասանէին ի դաւառն Բագրեւանդ ի գիւղն Արծնի ։ Անդ հարկանէին զբանակս իւրեանց առ եզերբ գետոյն որ ընդ նա անցանէ . եւ ընդ նոսա ամենայն արուեստականք յարդարիչք զինուց, որք պատրաստէին զէնս եւ անօթս պատերազմի ։

Իսկ այն զօրք, որք պահէին զքաղաքն Կարնոյ, հաստուցանէին զնա մերձ յապականութիւն . քանզի սաստկացաւ սով ի քաղաքին, եւ կամէին յակամայ տալ զքաղաքն ի ձեռս ։ Եւ իբրեւ եհաս զրոյց պար-

տութեան գնդին ի քաղաքն Կարնոյ՝ յայնժամ լքաւ սիրտ արանց պատերազմողաց զօրացն Հայոց. եւ թոյլ ետուն պաշարման քաղաքին։ Եւ թէպէտ էին կարող մտանել ի կողմն Յունաց եւ ապրեցուցանել զանձինս ի չարաչար աղխատութենէ զրպարտողացն. սակայն լաւ համարեցան ընտրել զմահ անձանց քան տեսանել զկորուստ աշխարհիս եւ զանպատուութիւն եկեղեցեաց Քրիստոսի։ Եւ զայս զմտաւ ածեալ՝ թէպէտեւ նուաղունք էին քան զթիւ թշնամեացն, ինքնակամ յօժարութեամբ դիմեցին ի միջոն. եւ ժողովեալ զգունդս իւրեանց իբրեւ արս հինգ հազար՝ գնացին ի քաղաքէն Կարնոյ, անցանէին ընդ սահմանն Բասենոյ ի գաւառն Բագրեւանդ։ Իսկ եւ իսկ անցեալ ընդ գետն Արածանի՝ յարձակէին արիութեամբ սրտի ի վերայ թշնամեացն. եւ բացագոյն երկու փոսափանօք զատուցանէին զաղխն իւրեանց եւ զերիվարս. եւ ի հետիոտս զայրագնեալ պատրաստէին ի մարտ պատերազմի թշնամեացն։ Ելանէին ապա եւ գունդք թշնամեացն ի վերայ նոցա բազում պատրաստութեամբ։

Եւ ընդ ծագել արեգականն խմբեցաւ պատերազմն. եւ իբրեւ բախեցին ընդ միմեանս, նախ՝ զօրացեալ գունդն Հայոց՝ հարկանէին բազում հարուածս, և ի փախուստ դարձուցեալ զթշնամիսն սատակէին զբազումս։ Եւ դարձեալ զօրացեալ՝ դարձան

ի փախստենէ, եւ զխմադարձեալ զայրագին ցաս-մամբ՝ ընուրին արշաւրօք զբազմութիւն ռամիկ ժողո-վոյն. եւ ի փախուստ դարձուցեալ զամենս ի Նախա-րարացն եւ ի Նոցին հեծելոցն եւ զռամիկսն որ ընդ Նոսա, զի զբազումս ի Նոցանէն հարեալ տապաստ դաշտացն արկանէին ։

Իսկ քաջայաղթ Նահատակքն թէպէտեւ Նուա-զունք էին ի մէջ չարաշուք արտաքացն, սակայն ոչ ինչ զանգիտեցին ի դառնաշունչ օրհասէն. այլ մինչ ի սաստ գումարեալք ոգւով չափ՝ մարգէին զմի-մեանս բանիւք ասելով « քաջութեամբ մեռցուք ի վերայ աշխարհիս մեր եւ ի վերայ ազգիս մեր, եւ մի տեսցեն աչք մեր կորուստ ոտից պղծալից լեալ զսր-բարանս մեր եւ զտեղի փառաւորութեան Աստուծոյ մերոյ. այլ նախ՝ ընդդէմ մեր լիցի սուր թշնամեացն. եւ ապա լիցի զոր կամիցին. փոխանակեսցին ան-ձինք մեր ընդ ճշմարտութեան հաւատոյս եւ մի ընդ երկրաւոր զբաղմանս. զի այս մահ ժամանակեան (է) և կեանքն յաւիտենական »։ Եւ այս քաջալերու-թիւն տուեալ միմեանց՝ ի բարձունսն կարկառեալ զաչսն՝ օգնութիւն ի բարձրեալոյն հայցէին ասելով « Աստուած՝ յօգնութիւն մեզ հայեա՛ց եւ յընկերել մեզ փութա՛ ։ Ամաչեսցե՛ն զամօթ մեծ որք խնդրեն զանձինս մեր, եւ մեք զանուն քո Տէ՛ր՝ կարդասցո՛ւք ի Նեղութեանս մերում եւ զանուն քո Տէ՛ր՝ փառաւո-

ըսեցուցք ի նեղութեանս յոր պաշարեալս եմք. զի ահա՛ չրջապատեալ պահեն զմեզ չարք որոց ո՛չ գոյ թիւ, եւ ժամանեցին մեզ երկուղք մահու »:

Զայս եւ եւս առաւել քան զայն մատուցանէին խնդրուածս աղերսականս եւ մաղթանս փափագելիս: Եւ յետ այսորիկ դարձեալ զօրացեալք յօգնականութենէ վերնոյն՝ ո՛չ ինչ կասեցին յառաջի արկեալ խորհրդէն. քանզի չէին աւելի քան զհազար մի արանց ի մէջ երեսուն հազարացն: Զի որպէս ասաք ի նոյն ինքն ի թշնամեացն, ունէին, առէ, ընդ ինքեանս մարտակիցս զհրեշտակական բազմութիւնս որ մարմնական տեսլեամբ երեւեալ թշնամեացն, զի տեսանէին եռխումբս եւ պապառս (որք) Աւետարանօք եւ մոմեղինօք եւ խնկօք առաջի նոցա երթալով՝ զօրացուցանէին զնոսա: Եւ անխնայ կոտորմամբ խնդրեցին զվրէժ անձանց մինչեւ պարտեցան ձեռքն ի ծանրութենէ զինուցն միանգամայն. զի ոմանք թափուր մնացեալք ՚ի զինուցն՝ անկան ի ձեռս նոցա, եւ խսկոյն առեալք զհրաժեշտ մեղանչական կենցաղոյս՝ փոխեցան ի հանդերձեալ յուսոյն ա՛նկալութիւնն երանելի եւ քաջ նահատակքն որոց անուանքն են այսոքիկ զօրագլխացն: Ի տանէն Բագրատունեաց Սպարապետն Սմբատ և Սահակ՝ բարձակից և նիզակակից նորին, ի տանէն Մամիկոնեանց Մուշեղ զօրավար եւ Սամուէլ՝ տէր Մամիկոնէից, որ էր որդի մա-

տատղ և առոյգ գեղեցկութեամբ՝ աներ ապարապետին մեծի ։ Եւ ի տանէն Գնունեաց Վահանն դաշնակ, և այլք բազումք ի նախարարաց եւ յաւմկաց զորս ոչ բաւեմ մի ըստ միոջէ յանուանէ թուել, որք անկանէին իբրեւ այր երեք հազար, որոց ողորմելի (էր) կատարածն եւ վախճանն անարգապէս ․ զի եւ ո՛չ հող նոցա բաւէր թաղել զդիականունս թշուառացելոցն ի պատերազմէն․ այլ բացընկեցիկ օթագայեալ ի վայրի, յարեւու եւ ի փոշւոջ և յանձրեւի եւ մրրիկս հողմոց։

Եւ յայնժամ սաստկապէս յաճախէին ողբք և աշխարանք աշխարհիս Հայոց ․ վասնզի առաջնորդք մեծք եւ զօրագլուխք պատուականք բարձան ի միջոյ ի միում վայրկենի ժամու ․ եւ երկիրս առհասարակ ի խոր տխրութեան ըմբռնեալ՝ կոծէին կոծ մեծ եւ աւաղէին զվախճան նախամարտկացն հզօրաց եւ քաջաց ․ քանզի Մնացին թափուր յօգնականութենէ նոցա, եւ մատնեցան ի ձեռս գազանաբարոյ եւ անհամբոյր թշնամւոյն ։ Յիշէին ապա եւ ի նեղութեան զպաշտպանութիւն այցելուին Աստուծոյ, զոր ի ս․ գրանցն պահեաց զողորմութիւն առ ազգս մարդկան, եւ մանաւանդ առ փառաբանիչս անուան իւրոյ ․ եւ հայցէին զխնամոց ներողութիւն նորա հասանել յօգնականութիւն տարակուսելոցն եւ յուսակորոյս եղելոցն ի կենաց աշխարհիս ։ Զի յետ կորստեանն որ եղեւ յԱրճէշն աւանի՝ անդէն ընդ հուպ

հասին չարիքս այս ի նոյն ամսեանն ի հրոտից 14 յաւուր երկուշաբաթւոջ : Եւ եւս դժնդակ նեղութիւն էր զի եւ ոչ տեղի անգամ գոյր լալոյ եւ ողբոց համարձակապէս զննջեցեալսն, եւ ոչ հաց ազոյ ընկանել ի տունս իւրեանց, եւ ոչ տալ գերեզմանի զմախճանեալսն :

Իսկ թշնամեացն սփռեալ զասպատակ իւրեանց ի գաւառն Բագրեւանդ եւ ի սահմանակիցս նորա՝ եւ տագնապ մեծ յարուցանէին ի վերայ բնակչաց երկրին, ուս եղեալ ընդ ամենայն քաւարանս աղօթից՝ խոնկային կործանել եւ չփոթել զսրբութիւն եկեղեցեաց Քրիստոսի. խորտակէին և զնմանութիւն պայծառացեալ խաչին Քրիստոսի, զոր ապաւէն եւ հովանի ի յելս եւ ի մուտս կանգնեալ ի պատճառս երկրպագութեան համագոյ Երրորդութեանն. եւ հրկիզութեամբ բառնային ի միջոյ : Վարէին ուժգին հետութեամբ ընդ քահանայս եւ ընդ պաշտօնակիցս նոցին իբրև առաջնորդք գոլ նոցին որք վախճանեցան ի պատերազմին : Յափշտակէին եւ ի տեղիս տեղիս զսպաս եկեղեցւոյ. և զնշխարս սրբոց Աստուծոյ վարեալ տանէին յաւարի : Եւ իբրեւ լցան զօրքն անօրէն յաւարէ աշխարհիս Հայոց՝ դարձեալ եկանէին ի վերայ ամրոցաց եւ նուաճէին զապաստանեալսն յամուրսն կոչեալ ի խաղաղութիւն, և տային զգիր երդման եւ իջուցանէին յամրոցացն :

Եւ ինքն չու արարեալ իբրեւ պանծալի եւ քաջ յաղթութեամբ՝ դէմ եդեալ գնայր յաշխարհէս Հայոց. անցանէր ընդ աշխարհն Պարսից, յանդիման կամէր լինել իշխանին Խամայելի իբրեւ զի զփոխարէն միամտութեան վաստակոցն առցէ ի նմանէ։ Եւ նոյնժամայն հասեալ ի վերայ դատաստան յիրաւադատն Աստուծոյ՝ սատակէր ի կենաց յերկրին Պարսից։ Քանզի չարաչար ցաւօք տանջեալ սատակէր. և ըստ արժանւոյն ընդունէր զհատուցումն վրէժխնդրութեան. զի փոխանակ անպարտ արեանն հեղլոյ ի ձեռն նորա՝ հեղաւ արիւն իրաւացի թէպէտև ոչ սրով մարդկան. այլ աներևոյթ սրով հրամանաւ բարձրելոյն, որ ազդողական զօրութեամբ թափանցական է քան զամենայն սուր երկսայրի յորոշումն ոգւոյ եւ շնչոյ եւ յօդից եւ ուղղոց անցանէ։ Այնու սրով խնդրեաց զվրէժ արեան որդւոց իւրոց, և զհատուցումն առեալ իւրոց հատոյց. եւ զերկիր ժողովրդեան իւրոյ սրբեաց եւ խնայեաց ի ժողովուրդ իւր. զի զգաւազան ժողովրդեանն մերժեաց յերեսաց նոցա։ Միաանգամ ապահով եղեն ի բնակութիւնս իւրեանց։

Յայնմ ժամանակի դարձեալ առաքէ իշխանն Խամայելի ի վերայ աշխարհիս Հայոց հրամանատար փոխանակ Հասանայ զՅեզիտ։ Եւ ինքն Աշոտ լցեալ ամենայն ախորժակօք չարասէր կամաց իւրոց եւ

ճնշեալ զոգի իւր ի բաղձանս արծաթսիրութեան ախտի, եւ ապաւհեալ զապաւհութիւն չար տան իւրոյ՝ ընդունէր զմարգարէին նզովսն. եւ յուսակորոյս սատակէր անդէն ընդ հուպ ի նմին ամի ։ Իսկ զհանդերձեալն զանեղի դատաստանի Նորա յայտնեաց որ զողբերգութիւնն է հատուցանող՝ միում ամենեն յարժանաւորաց իւրոց ծառայից՝ քահանայի միոջ ․ զի տեսանէր ի տեսլեան սակաւ աւուրբք յառաջ քան զվախճանելն եկեալ Նորա՝ անեղի խոշտանգանաց, եւ ի նմա վիհ հրոյ որ ամբառնէր զօրութեամբ, և ի բերան վհին կատուցեալ դուռն մի երկաթի ։ Եւ ածեալ զնա երկուց զինուորաց՝ կացուցանէին առ բերան գբին, և ի բաց առնելով զկափարիչ վհին՝ տեսանէր զի եռանէր բոց վհին ի վեր մինչեւ յերկինս, յոր ասեալ ընկեցին զգործաւնեայն չարին. եւ դարձեալ ի վերայ կափուցեալ զնոյն դուռն՝ ըմբռնէին զնա յանհնարին կապանս ընդունիլ դառնածանր հատուցումն ։ Զայսպիսի յայտնութիւն տեսլեան դուշակեալ վասն Նորա, որ արդարեւ վայել էր ըստ չարութեան գնացից իւրոց զայնպիսին ընդունիլ հատուցումն յարդար դատողէն ։

Եւ յետ այսորիկ յաջորդէ զիշխանութիւն Նորա Մահմետ Մահադի՝ որդի Նորա (42)։ Եւ սա էր ազնուական քան զհայր իւր և լաւագոյն բարուք ։ Եւս զամենայն տունս գանձուց զորս աղխեալ պահէր առն

բարիշան Աբդլլա, եւ բաշխեաց սպարգեւս զօրաց իւրոց։ Համարձակեաց եւ զդրունս մարդկց հանել զվաճառականսն ի վաճառուն իւրեանց և ըստ զպէտս կարօտելոց. եւ եղև առատութիւն երկրի, եւ զխաղ արծաթոյ ընդարձակեցաւ. եւ բնակչաց երկրի անդորրութիւն եղեւ ի հարկապահանջ բռնութենէն. զի թէպէտեւ զանուր ընդ հարկին ծանրացոյց, սակայն վասն զխաղի արծաթոյն հանգեաւ. երկիրս առ փոքր մի ի չար տառապանաց վտանգին. քանզի եւ լերինք արծաթոյ յայտնեցան յաշխարհիս Հայոց հատանել ի նոցունց զխանութս արծաթոյ զառոյ առ ի պէտս մարդկան յաւուրս իշխանութեան նորա։

Եւ ինքն Մահմետ սկսաւ զօրանալ ընդդէմ իշխանութեան Յունաց. եւ գումարեալ զօրս՝ տայր ի ձեռս զօրավարի միոջ իւրոյ եղբօր որում անուն էր Աբաս, և առաքէ զնա յաշխարհն Յունաց. քանզի ի նոյն ամի սատակմամբն Աբդլլայի վախճանեցաւ կայսրն Կոստանդին, եւ Լեւոն՝ որդի նորա փոխանորդեալ զաթոռ հօր իւրոյ (43)։ Եւ մինչդեռ նա զայս ածէր զմտաւ ի վերայ աշխարհին Յունաց՝ տապաստակել զօրօք ի վերայ նորա, առաքէ վաղվաղակի արքայն զօր բազում ի վերայ Բատմանատանի որում Բիշանն (44) կոչի, եւ կարգէ ի վերայ զօրավարս երիս որք էին երկու ի նոցանէն ի նախարարացն Հայոց, անուն միումն Տաճատ ի տանէ Անձեւացեաց, և երկրորդին՝

Արտավազդ ի տանէ Մամիկոնենից, եւ միւսն ի զօ-րացն Յունաց։ Որոց խաղացեալ յառաջ զօրօք բազ-մօք՝ հասանէին ի կողմանս Կիլիկեցւոց և Բիշանու, եւ սփռեալ զաւազակս իւրեանց ի վերայ աշխար-հին՝ առին զբազում քաղաքս եւ զգաւառս եւ ըզ-գիւղս, եւ որք միանգամ եկին ընդդէմ նոցա պա-տերազմել՝ Ջաղխեցին մանր իբրեւ զփոշի. եւ ին-քեանք առեալ զբազմութիւն խառնիճաղանճիցն վարեցին յաւարի, զորոց զթիւ գերելոցն ասեն լինել աւելի քան զտասնեւ հինգ բիւր արանց, զորս առեալ տանէին յաշխարհն Յունաց։ Եւ երթեալ յանդի-ման լինէին կայսերն Յունաց հանդերձ բազում ա-ւարաւ. եւ բազում գովութեամբ ընդունէր կայսրն Լեւոն զզօրսն իւր, եւ մեծամեծ պատիւս ընծայէր զօրագլխաց իւրոց. եւ դադարէին յամին յայնմիկ։

Իսկ ի գալ միւսոյ ամին յղէր դեսպանս իշխանն Իսմայելի իբրեւ խրոխտալով զարհուրեցուցանել կա-մեցեալ՝ մեծամեծս փքայր. տայր տանել օրինակս լուսաք, ընդ պատգամին սերմն մանանխոյ զչափ եր-կուց գրուաց, եւ գրէր առ թագաւորն Յունաց եթէ վաղվաղակի առաքեսցես ի վերայ աշխարհիդ քոյ ըզ-բազմութիւն զօրաց իմոց ըստ թուոյ հատոյ մանան-խոյդ զոր տեսանես, թէ բաւեսցէ հող երկրի քոյ զան-չափութիւն զօրաց իմոց ունել։ Այլ արդ՝ եթէ դու-ցէ զօրութիւն ի ձեռին քոյ՝ պատրաստեա՛ ընդ իս ի

պատերազմ։ Եւ ընթերցեալ կայսերն զգիրն՝ ոչ ինչ ամբոխէր ի խորհուրդս իւր. այլ հաստատուն մտօք յղէր զպատասխանի «ո՛չ է, ասէ, զյաղթութիւն մարդկան սատանայ անձամբ. այլ որոց պարգևէ Աստուած. քանզի կարող է Աստուած տալ զզօրսդ քո կերակուր զօրաց իմոց ըստ առակի մանանխայն զոր յղեցեր։ Այլ դու զոր ինչ խոստացար առնել՝ արասցես, և որ ինչ հաճոյք են կամաց Աստուծոյ՝ կատարեսցին »։

Եւ նոյնժամայն ելանէ հրաման ի կայսերէն գաղթել զբնակիչս աշխարհին ի քաղաքս ամուրս և յամուր աշտարակս։ Եւ գումարեալ իշխանն Իսմայելի զօրս անթիւ՝ կարգէր ի վերայ նոցա զօրավար զնոյն այր զորմէ վերագոյնն ասացաք. և առաքէ զնոսա բազմութեամբ ի վերայ երկրին Յունաց։ Որոց երթեալ հասանէին ի վերայ երկրին Գաղատացւոց, և պաշարէին զքաղաքն լայնանիստ որ անուանեալ կոչի Ամուրիա (45)։ Եւ նստեալ զնովաւ բազմութեամբ զօրացն՝ պաշարեալ պահէին զնա իբրև ամիսս երիս. այլ ոչ կարէին առնանել քանզի պարսպաւոր ամրացեալ (էր), և ոչ ինչ նուազ զգուշութիւն մատուցանէին շուրջքն։ Քանզի շուրջ ըզ քաղաքաւն բղխեն ակունք Սագարիս գետոյ, որով ի ճախճախուտ տղմոյն անկոխելի մնայր հաստայարկ դիրք քաղաքին. և ոչ ինչ կարէին վնասել, այլ նըս-

տեւեալ միայն պահէին ։ Գումարէր զզօրսն իւր ասպար եւ Եզիտ որ էր հրամանատար աշխարհիս Հայոց, հասանել ի Թիկունս օգնականութեան զօրավարին Արաբաց։ Եւ երթեալ ի կողմանս Պասենոյ՝ հասանէր ի Կողոնիա բերդ քաղաքաց (46), եւ ի Գալաթիա եւ ի Կաստիղոն եւ ի գաւառն Մարիթենէս․ ընդ որս մարտ եղեալ կռուէր ։ Այլ ոչ ինչ օգնեալ ի նոցունց՝ դառնայր մեծաւ ամօթով յաշխարհս Հայոց ։ Թողին եւ զօրքն Իսմայելի զքաղաքն Ամուրիա ի պաշարմանէն, եւ գնացին յաշխարհ բնակութեան իւրեանց ։

Կայ եւ մեզ պատմել զառաջի արկեալ խորհուրդաքանցի յեօթներորդ ամի Մահմետի փոխանակեցաւ կայսրն Լեւոն՝ որդի Կոստանդնի․ եւ թագաւորէ Կոստանդին՝ որդի նորա ընդ նորա, մանուկ մատաղ հասակաւ ։ Իբրեւ ետես Մահմետ՝ իշխանն Իսմայելի զփախձան արքային Յունաց՝ գումարէ զօր բազում եւ կարգէ ի վերայ նոցա զօրավար զԱհարոն՝ զորդի իւր, եւ առաքէ ի վերայ աշխարհին Յունաց ։ Եւ իբրեւ հասին զօրքն Իսմայելի յաշխարհն Յունաց, նոյնժամայն ելին զօրքն Յունաց ընդդէմ նոցա․ եւ նստեալ պահէին զմիմեանս խիստ արկեալ ճանապարհաց նոցա ։ Եւ ոչ կարէին ելանել զօրքն Իսմայելի ի խնդիր կերակրոյ․ եւ լինէր սով մեծ ի բանակին Իսմայելի ։

Իսկ Ցամառն՝ որդի Գրիգորի, որ էր ի տանէն Անձեւացի զորմէ յառաջագոյն պատմեցաք, զի երբեմն փախստական եղեալ յիշխանէն Իսմայելի առ կայսրն Կոստանդին յաշխարհն Յունաց. եւ նորա ընկալեալ զնա խնդութեամբ մեծաւ եւ շքեղութեամբ մեծարէր վասն քաջութեան անձին նորա. զի յառաջագոյն ի համբաւոյ ծանուցեալ էր զարիութիւն նորա։ Որոյ անդէն ցուցեալ արքային զարիութիւն ի կողմանս Սարմատացւոց որ անուանեալ կոչին Բուլկարք, և գտանայր մեծաւ յաղթութեամբք։ Եւ տեսեալ կայսերն զքաջութիւն սրտի նորա՝ կարգէր զնա զօրավար ի վերայ վեց բիւր արանց, եւ կայր ի հնազանդութեան արքային Յունաց ամս քսան եւ երկու։

Իսկ յետ վախճանին Կոստանդնի եւ Լեւոնի՝ որդւոյ նորա և յունելն զթագաւորութիւնն Կոստանդնի՝ հեռութեամբ վարէր առ նա Թագուհին որ էր մայր Կոստանդնի կայսեր։ Եւ վասն այնր պատճառի ձեռնամուխ եղեւ առ իշխանն Իսմայելի։ Քանզի իբրեւ եմուտ զօրն Իսմայելի ընդ պաշարմամբ Յունաց, յայնժամ խնդրէր ի նոցանէ գիր երդման դառնալ անդրէն յերկիր իւր. եւ խոստանայր հանել ըղնոսա ի պաշարմանէն իւրեանց եւ տանել յերկիր բնակութեան իւրեանց։ Եւ լուեալ իշխանին Իսմայելի՝ արագապէս կատարէր զխնդիրն. եւ տայր

նմա երդմամբ չափ զբ՞նչ եւ խնդրեսցէ ի նմանէն ։ Եւ վստահ եղեալ յայն գիր երդմանն՝ ելանէր յերկրէն Յունաց ամենայն տամբ իւրով եւ հանէր զզօրսն Իսմայելացւոց ի պաշտպանմանէ անտի ։ Եւ Աշոտն՝ որդի իշխանին Իսմայելի, հայր իւր անուանեաց ըզնա, եւ մեծամեծ պատուօք ընծայէր զնա ։ Եւ իբրեւ յանդիման լինէր իշխանին Իսմայելի Տաճկաց, բազում շնորհակալութիւն առնէր նմա եւ ընոյր զնա բազում ստացուածովք ի գանձուց արքունի ․ եւ տայր նմա պատիւ իշխանութեան ի վերայ երկրիս Հայոց, և առաքէ զնա յաշխարհ իւր մեծաւ շքեղութեամբ ։ Իսկ իբրեւ հասանէր իշխանն Տաճկաց յաշխարհս Հայոց հրամանաւ իշխանին Իսմայելի առ Օթմանն որ էր հրամանատար եւ ազգապետ ի վերայ երկրիս, անընկալ եղեալ եւ ոչ կատարէր զհրաման իշխանին իւրոյ ․ այլ յապաղէր և յղէր զեսպանս առ իշխանն իւրեանց եթէ ո՛չ է կամք միաբանութեան նախարարացն Հայոց եթէ զայր մի ապստամբեալ յիշխանութենէդ քումմէ եւ ձեռն տուեալ առ արքայն Յունաց, կացուցանել իշխան ի վերայ այնոցիկ որ նուաճեալ են ընդ իշխանութեամբ քով ․ զուցէ եւ դառնան զօրաց մերոց լինիցի ։

Եւ թէպէտ բազում անգամ կամեցեալ Տաճկաց զեկուցանել զգեկումն իշխանութեան իւրոյ յականս իշխանին Իսմայելի, այլ ոչ կարաց ․ զի ամենայն ու-

բալկեոն Բագարատ եւ Ներսէհ Կամսարական եւ այլք ի զօրացն ։ Եւ յոյժ ցասուցեալ իշխանն Խամայեկի Մահմեդ ընդ աւաղական մահ իշխանին Տաճատայ (49) եւ նախարարացն որ ընդ նմա, խափանէ զիշխանութիւն նորա. եւ առաքէ փոխանակ նորա զՈւող ոմն իշխան եւ հրամանատար ի վերայ աշխարհիս Հայոց ։

Եւ կալեալ զիշխանութիւնն Մահմեդ ամս ութն, եւ ընդ գալն Ուռհայ սատակեցաւ ։

Ապա յետ նորա Մուսէ փոխանորդէ զիշխանութիւն հօր իւրոյ ամ մի ։ Եւ էր այր ժանտ եւ ապարասան եւ այսահար . որ յանչափ չարժող այսոյն որ ի նմա՝ ի զբօսանել իւրում ի խաղս անարժան բարուցն, զմարդիկ կանգնեցուցանէր փոխանակ նշաւակի նետաձիգս առնել ի նոսա ի վարժութիւն անձին իւրոյ, զոր առժամայն հարեալ սատակէր ի կենաց ։ Եւ իբրեւ հասատեաց զիշխանութիւնն իւր՝ առաքէ ի վերայ երկրիս Հայոց փոխանակ Ուռհայ զՅուսուփ ոմն, որ արդարեւ ըստ անուանն իսկ խաղաղարար եւ դժոխանձեալ ։ Որ իբրեւ եհաս ի քաղաքն Դուին՝ ընդ առաջ եղեն նմա ամենայն նախարարքն Հայոց , ընդ առաջ ելանէին նմա եւ իշխանք տանն Արծրունեաց Համազասպ եւ Սահակ եւ Մեհրուժան ։

Իսկ բարեատեաց թշնամին տեսեալ զդեղայէշ վայելչութիւն փառաց նոցա եւ զբարեզարդութիւն

ապստամբութեամբ զնոյին որ ընդ նոսա, փաղփաղակն ըմբռնեալ զնոսա՝ տայր ի պահեստ բանտի զանձինս զօրավարաց նախամարտկաց եւ քաջաց . եւ պահէր զնոսա ի կապանս կալանաւոր բանտի ժամանակս երից ամաց ։ Եւ առաքէ ամբաստանութիւն զնոցա-նէ առ Մուսէ՝ իշխանն Իսմայելի, եւ առնոյր ի նմա-նէ հրաման բառնալ զնոսա ի կենաց . եւ տայ տանել զհրաման մահուն և զանիրաւ վճիռ ցասման ի բան-տըն յորում պաշարեալ պահէին զերանելի նահա-տակսն (50) ։

Եւ իբրեւ ընթերցաւ վճիռ մահուն ի վերայ նոցա՝ հարցանէին կապեալքն զոմն ի նոցանէն որում ա-նունն էր Քուբեզա որ սիրելագոյն էր առ նոսա եւ բարեկամ, ասեն « պատմեա՛ա եթէ զինչ հնար գոյ մեզ զերծանիլ յանիրաւ մահուանէս յոր ըմբռնեալս եղեալք » ։ Ասէ ցնոսա « ո՛չ իւիք հնար գոյ ձեզ ապ-րել ի ձեռաց նոցա բայց եթէ յանձին կալջիք դառ-նալ ի հաւատս մեր եւ հաւանել ձայնի մարգարէին մերոյ, եւ ապա զերծջիք ի դառն մահուանէն » ։ Եւ զայս հրաման լուեալ Մեհրուժանայ՝ զարհուրե-ցաւ յառօրեայ մահուանէս, մատնէր զանձն ի կո-րուստ յաւիտենական գեհենին, եւ խոստանէր ըզ-քաղցր լուծ հաւատոյն որ ի Քրիստոս, և որոշէր ի հօտէն Տեառն եւ զգենոյր զկերպարան գայլոց, եւ պարտաւոր առնէր զինքն տիեզերական ատենին ։

Այլ քանզի ոչ ի կամաց այլ յերկիւղէ մահուն որ ի վերայ էր հասանելոց, արար զայս՝ Թերեւս զԹասցի Քրիստոս ի զղջումն սրտի նորա ։

Իսկ քաջ նահատակքն զգեցեալ զզրահն հաւատոյ եւ սաղաւարտն փրկութեան ամրացուցեալ զգլուխս իւրեանց՝ ասէին ցնա « քաւ լիցի թէ մոռանակեսցուք զճշմարտութիւնն Աստուծոյ ընդ ստութեան, կամ զկեանսն յաւիտենականս ընդ առօրէիս, կամ զփառսն մշտնջենաւոր ընդ անցաւորիս, կամ զլոյսն բարերեցուն զՔրիստոս ընդ զուգնաքեայ արեւս մեր » ։ Եւ այսպէս զժամանակս արգելանին իւրեանց մարզէին զմիմեանս ասելով « բաւականապէս վայելեցաք ի փառս անցաւորիս ո՞վ եղբարք՝ այլ արդ՝ այսուհետեւ ո՛չ պատրեսցեն զմեզ ո՛չ մեծութիւնք, ո՛չ փառք անցաւորք, ո՛չ ոսկեհուռն պատմուճանք շքեղութեան մերոյ, ո՛չ սէր մերձաւորաց, ո՛չ գութ մանկանց եւ ո՛չ այլ ինչ ի մերձակայ բարեաց, որոց բազում ցանկացեալ՝ զանգիտէաք կորուսանել ժառանգեցին » ։ Եւ այսպէս զմիմեանս քաջալերեալ ի ժամանակս բանտամուտս վշտացն՝ աղօթէք ընդ Աստուծոյ միաւորեալ հայցէին զհանդերձեալ յուսոյն ակնկալութիւն ժառանգել ։

Իսկ իբրեւ եհաս ժամ ապարիցին կատարել զընթացս նահատակութեան յանուրս սուրբ եւ փառաւորեալ յայտնութեանն Քրիստոսի, զոր ուխտօրեայ

թիկունս նորա եւս զառանձնացեալս : Եւ իբրեւ նա եւս արիաբար համբերելով տանջանացն : Յետ այնորիկ տայր հրաման սպանանել զնոսա սրով . և զանձանցն ըն-ւեալ զհրամանադատաւորին՝ վաղվաղակի վերացուցեալ պատուոյն ի վերայ նոցա, բանանային զգլուխս նոցա : Եւ այնուհետեւ աւանդելով զհոգիսն՝ փոխեցան յաշխարհէս : Եւ ի վաղիւ անդր հրաման ետ կախել զմարմինս նո-ցա զփայտէ . եւ կարգեաց ի վերայ զինուորս զի մի ոք ի Քրիստոնէից գողասցի եւ թաղեսցէ զմարմինս նոցա : Եւ զի անձկեալ էր սրտիւ անօրէն դատաւորն, եւ ոչ յետ մահուանն անկուշելով քաղցրանայր դառ-նութիւն սրտին . այլ իջուցեալ ի փայտէն՝ հրով ծախէր զմարմինս եւ զոսկերս երանելեաց զօրականացն : Եւ զփոշին եւս ոչ անխնայեաց առնել զեկեղեցականն այլ ի ջուրս գետոյն մատնէր . զի ի ժամանակին թերեւս նեղութեանցն յաճախութեամբ զմեծութիւն փառացն կործեսցէ ի նոցա ըստ առաքելական բանին, եւ առ ի փոխարէն հատուցմանն հարկաւորս հատուսցէ նոցա պարգեւատուին առատութիւնք ըստ խոստ-մանն Տեառն որ է « ամենայն որ որ եթող զհայր կամ զմայր կամ զկին կամ զորդիս կամ զագա-րակս վասն անուան իմոյ՝ հարիւրապատիկս առցէ յաշխարհիս յայսմիկ, եւ զկեանսն յաւիտենականս ժառանգեսցէ »(51) :

Գործեցաւ այս յիշխանութեան Մաւրիկի, յաղգա-

պետութեանն Խաղմայ՝ յաւուրս սուրբ յայտնու-
թեանն Տեառն, յորում էր թուականս Հայոց 233 ։
Եւ Մուշէի կալեալ զիշխանութիւնն ամ մի՝ վախ-
ճանէր (52) ։ Ի սորա աւուրս աղանդ եւ զիշխանն
Վրաց չարաչար մահուամբ . զի վերամբարձ անեալ
զգահոյն եւ զձեռացն՝ ընդ մէջ կտրէր զմատաղու-
թիւն հասակի նորա ։ Եւ այսպէս իբրեւ զգառն հա-
մարեալ ի սպանդ՝ հրաժարէր ի կենացս այսոցիկ ։
Եւ կատարեալ զայս ամենայն չարիս՝ յետ ամի միոյ
սատակէր ։ Յետ սորա կացեալ Ահարոն՝ (53) որդի
Մահմետի, աղահ եւ արծաթասէր ։ Եւ սա յաւուրս
իշխանութեանն ունէր հակառակորդ զեղբայր իւր
Ովբեդլա . եւ վասն հակառակութեանն որ ընդ մի-
մեանս բաժանէր եւ տայր եղբօր իւրում զԱտրպա-
տական եւ զՀայս հանդերձ Վրօք եւ Աղվանիւք ։
Եւ կարգէր ի վերայ երկրիս ըստ հակամէտ բարուց
իւրոց հրամանատարս ապարասան եւ ժանտաբարոյ
անաստուածութեամբ, որք զերկիւղ Աստուծոյ ան-
գամ և ընդ միտ ոչ ածէին. նախ՝ զՆզիր անուն որդի
Մզզէի, եւ յետ նորա զԱբդալքրիր տակաւ ինչ յա-
ւելեալ, ոչ բարի ինչ գործեաց եւ ոչ չար . այլ ըզ
կարծիս լաւ իմն ցուցանէր։ Եւ յետ նորա Սուլէյման
անուն քան·զամենեսին ժանտ եւ չարագործող ։ Յետ
սորա և ինքն խակ Ովբեդլա եկն ի քաղաքն Պարտաւ,
և հաստատէր զՍուլէյման իշխան աշխարհիս, և տայր

ի ձեռս նորա զժողովուրդ Տեառն իբրեւ զոչխարս ի մէջ ապականիչ գայլոց ։

Իսկ նորա զանբառնալի լծոյ ծանրութիւնն եդեալ ի վերայ մարդկան, զոր ոչ կարէին բառնալ . զի որ ինչ գտանէր ի ձեռին ուրուք հայթայթանք՝ ընդ անձին իւրոյ ոչ լինէր բաւական գնոց։ Այս Սուլէյման յղէր զոմն անօրէն եւ վատթարազգի որդի՝ աղախնոյ միոյ, որ էր Հոռոմ յազգէ՝ փեսայ Սուլէյմանայ, որում անուն էր Իբնդոկէ. որ եկեալ ի քաղաքն Դուին՝ սաստիկ դժնդակութեամբ խաշտանգէր ըզ բնակիչս աշխարհիս հարկապահանջմամբ (54) ։ Այս որ ժողովեալ ամենայն նախարարք եւ ռամիկք հանդերձ եկեղեցականօք և կաթողիկոսիւն որոյ անուն էր Եսայիաս, աղաչէին թեթեւացուցանել զանուր ծանրութեան սակին զոր պահանջէր, եւ ոչ ինչ օգտէին . զի բարկութեան Տեառն էր հրամանն տալ ի ձեռս անողորմ ազգ. Քրիստոնէից ։ Որոյ անդէն յղեալ ընդ կողմանս կողմանս աշխարհիս պահանջողս, եւ տուեալ հրաման՝ կրկին քան զոր ըստ ամին պահանջէին, ի միում վայրկենի հաւաքել . և կատարէր հրամանն ։ Իսկ իբրեւ այն ի գլուխ ելանէր՝ վաղվաղակի այլ վտանգ չարեաց խորամանկէր որդին սատանայի, եւ տայր կնիք կապարեայ դնել յամենեցուն պարանոցսն . եւ առ մի մի կնիք պահանջէր զբազում զուզայս մինչեւ հասանել մարդկան ի յետին

անշէջն ընդ գետն՝ փողփողակի ազդ. եղև. այսպիսին Ցանկաց Կոստանդնի: Եւ կոչեցեալ զնոսա առ ինքն՝ տայր պատիւ նախարարացն եւ նոցին հեծելոց. եւ զնոյն խոստովանողական ընակեցուցանէր ի քաղաքս եւ յարգաւանդ երկրի: Իսկ կէսք ժողովրդեանն որք Միացին, առ սաստիկ կարօտութեանն անձնատուրք եղեն ի ծառայութիւն սորին՝ փախստականորք և Չըր-քերք ըստ նմանութեան Գաբաւոնացւոց. անանք առ վշտաբեկ նեղութեանն:

Դարձեալ միւս եւս խորհուրդ չարութեան խոր-հէր դժոխաձև եւ չարաչուք այրն ամբարիշտ, որ ի ձեռանէ Սուլէյմանայ էր հրամանատար ի Դուին քաղաքի: Զի ի ժամանակին յայնմիկ փախեայ եւ-բանեցին առ Քրիստոս՝ սուրբ եւ ուղիղ հաւատով Կաթողիկոսն Հայոց Եսայիաս. և խորհեցաւ հանել եւ քնին առնել ամենայն ստացուածոց եւ սպասուց եկեղեցւոյն: Եւ կոչէր առ ինքն զամենայն կղերիկոս սպասաւորացն, եւ ուժգին սպառնալեօք զարհուրե-ցուցանէր զնոսա «տեսէ՛ք ասէ, մի՛ ինչ ծածկեցէք յինէն. այլ զամենայնն ի յա՛յտ բերջիք: Ապա թէ ոք թագուսցէ ինչ, և յետոյ ի յայտ գայցէ՝ ինքն անձին իւրում պարտաւո՛ր եղիցի»: Իսկ նոցա երկուցեալ իսպառնալեաց պատուհասին, ետուն ի ձեռս նորա զամենայն ինչ. եւ զամենայն ինչ զոր գտանէին ի գանձս ծածկութիւն ցուցին նմա, եւ ոչ ինչ Մնաց ի

ծանրութեան զոր ոչ եդին առաջի նորա զպարգևս ցանկալիս ոսկւոյ և արծաթոյ եւ որ ի քարանց պատուականաց , եւ պճնեղերձս թագաւորացն զոր ի պատիւ արդոյ եւ փառաւորեալ աստուածընկալ սեղանոյն եւ խորանին Տեառն նուիրեալ էին : Եւ իբրեւ ետես զայն ամենայն՝ խորհեցաւ միանգամայն վարել յաւարի . եւ դարձեալ շրջեալ յայնց մասաց՝ առնոյր որ ինչ ցանկալի թուէր անձին իւրում ի գանձուցն եւ ի հանդերձից պատուականաց և զայլ ինչ իւրատեսցն. եւ որ ինչ միանգամ յաւանդս եկեղեցւոյն տայր ցաւանդապահս նորին մինչեւ յաղօթել յաթոռ հայրապետութեանն զՍտեփաննոս որ բազում կաշառօք յաջորդեալ ի հայրապետութեանն աթոռ՝ փառանեաց զամենայն ինչս եւ զստացուածս մինչեւ եղեւ թողութիւն դիւղից եւ ծառայից եւ պարտուց .

ՎԵՐՋ:

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ։

Կատարեցաւ վարդապետութիւն Ղեւոնդի վասն ժամանակագրաց տանս Թորգոմայ ի հրամանէ Տեառն Շապհոյ Բագրատունւոյ ։ Որ և ցանկացող եղեալ սորին Տէր Համազասպ ի պատուաւոր ազգէն Մամիկոնեանց՝ ի հալալ արդեանց ետ հրաման ծրել փծուն գրչիս Սարգսի ։ Աղաչեմ՝ յիշեցէք յողորմածն Աստուած, եւ նմա փառք յաւիտեանս. Ամէն ։



# ԱՆՈՒԱՆՔ

*Բարերարաց շարի Հայ պատմագրաց :*





]

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։



## Ծանօթութիւնք առաջին գլխոյ ։

1. Բնագիրն չունէր զբաժանումն եւ ոչ մի, զոր մեզէն յաւելաք առ դիւրութիւն ընթերցողաց ։

2. Բնագիրն ունէր Ամիր ըլ Մումնիք որ ոչ էր համաձայն ոչ արաբայի հնչման եւ ոչ ուղղագրութեան ։ Այս բառ թարգմանի ըստ մեզ Առաջնորդ Հաւատացելոց ։ Աբու-Բէքիր՝ անմիջական յաջորդ Մահմետի, կոչեցաւ Խալիֆայ · իսկ Օմար՝ նորին տեղակալ, Էմիր-ալ-Մումէնինէն ։ Հոյակապ արք Արեւելից · Աղեքս · Մաղասայ · Գիրք Ա · եր · 110 և 115 ։

3. Մահմետ կամ Մուհամէդ՝ մարգարէ և օրէնսդիր Միւսիւլմանաց, ծնաւ յամի Տեառն 570 ի ցեղէն Խորէյշի ։ Անուն հօր իւրոյ էր Աբդալլահ, մօրն՝ Էմինաշ ։ Ամաց քառասնից քարոզել սկսաւ զիսլամութիւն այսինքն է ընծայումն Աստուծոյ ։ Դատապարտեալ ի մահ՝ խոյս ետ ի Մէդինէ յամի Տեառն 622 ի 16 յուլիսի ։ Աստի սկսաւ թուականն կամ

Հիջրէթն մահմետական ։ Ցետ բազում յաղթութեանց տիրեաց Մէքքէի յամին 630. եւ մեռաւ զկնի երկուց ամաց ի Մէդին (632) ։

4. Այս բառ խուսափեալ է ի գաղղիական թարգմանութեան մերում ։

5. Զիք ամենեւին տարակոյս թէ՝ սխալի յայսմ Ղեւոնդ վարդապետ ․ իբրզի սուրբ պատերազմն Մահմետականաց սկսաւ յամի 632 . եւ յաղթութիւնք նոցա փոխանակեցին զմիմեանս ։ Բոստրա առաւ ի նմին ամի. Դամասկոս ի 634 . Եմէս ի 635. Երուսաղէմ ի 636. Հալէպ ի 637. Անտիոք ի 638. Մեմփիս և Աղեքսանդրիա ի 639 ։ Այս ամենայն եղեւ առ կենդանութեամբ Հերակլեայ որ մեռաւ ի 641 ։

6. Բնագիր մեր ունէր զոյս ։

7. Զայս բան օրինակէ Ղեւոնդ բառ առ բառ ի պատմութենէ է Սեբէոսի Եպիսկոպոսի · երես 164-165։ Թովմա Արծրունի որ կրսերագոյն է ժամանակաւ քան զերկոսին վերոյիշեալ պատմիչսն, զնոյն երրորդէ զբան . երես 109-112 ։

8. Յօրինակին մերում՝ դոյա ։

9. Թերեւս՝ նորոյ ։

10. Մաղխանացիք որոց երկիր բնակութեան էր առ ափամբ Կարմիր ծովուն՝ ի վաղուց բնաջինջ եղեալ էին ։

11. Յօրինակին մերում՝ ի զօրուէն որ չէ օտար ի հայկաբանութենէ ։

12. Այս հռչակաւոր ճակատ յորում յաղթեցին Արաբացիք, և որ արկ զսուրբ քաղաքն հանդերձ Պաղեստինաւ և Ասորեօք ընդ նոցա իշխանութեամբ, կոչի ի պատմագիրս նախնեաց յանուն Եարմայի ։ Սպարապետ քրիստոնէական զօրուն էր Պատրիկն Մանուէլ (Մահան) . իսկ Մահմետականացն՝ Խալէթ կամ Քաղեդ եւ Օբէյդահ ։ Աբու-Օբէյդահ առ զԵրուսաղէմ յամի 636 ։ Խալէթս այս թուի լինել Քաղիրթ, Քաղիրդ կամ Քաղըրթ Սամուէլի երիցու և այլոց պատմաբանից մերոց որք համարին զնա գլուխ ազգին Իսմայելի ։



Ծանօթութիւնք երկրորդ գլխոյ ։

1. Ի մերում գաղղիական թարգմանութեան զխորագիրն կարգեցաք ըստ բուն իմաստից երկրորդ գլխոյս ։

2. Ցօրինակին մերում՝ որում ։

3. Ցօրինակին մերում՝ ընդդէմ ։

4. Այս հաշիւ յարմարի առաւել Արշակունի հարստութեան քան թէ Սասանեանին . իբր զի առաջինն տեւեաց ամս 482, սկսեալ 256 ամօք նախքան զՔրիստոս եւ դադարեալ 226 ամօք զկնի . իսկ երկրորդն սկսեալ յամի Տեառն 226՝ տեւեաց ցամն 651. յորում աշխարհս այս նուաճեցաւ ընդ իշխանութեամբ Արաբացւոց ։ Թովմա Արծրունի. երես 115

համարի տեւեալ զտէրութիւն Սասանեանց ամս 542 հետեւելով կարծեաց Սեբէոսի. երես 215 : Նորագոյն եւս սխալին :



Ծանօթութիւնք երրորդ գլխոյ :

1. Ի մերում օրինակի՝ Կոստանդնու :

2. Սեբէոս . երես 170 գրէ_ձորոյ, եւ դնէ զայն ի Տարօն :

3. Սաղմ . ՀԸ. 1-3 :

4. Ղեւոնդ քաղէ զանցս պատերազմին Արծափաց ի Սեբէոսէ (զոր տեսցես եր. 183-184). յորմէ թէեւ տարբերի ի կարեւոր հանգամանս ինչ : Սեբէոս զՕթման եւ զՕգման (զոր տպագրիչն գրէ Ոգոման) զօրավարս Իսմայելացւոց դնէ ի Թիւս անկելոցն ի սրոյ Հայոց, զորովք լռութեամբ անցանէ մերս հեղինակ :

5. Աբու-Բեքիր որոյ իսկական անունն էր Աբդալլահ-իբն-Աբու-Քուհաֆֆայ, մեռաւ ի 634 : Օմար զոր Ղեւոնդ կոչէ Ամր ի 643 . և Օթման՝ ի 655 : Ղեւոնդ չառնէ աստանօր յիշատակութիւն ինչ ո՛չ զԱլւոյ եւ ոչ զորդւոյ նորա զՀասանայ, յորոց առաջինն սպանաւ , երկրորդն հրաժարեցաւ յաթոռոյն թողլով զայն Մուաւեայ յամի 661 :



## Ծանօթութիւնք չորրորդ գլխոյ ։

1. Արաբացիք եւ Թիւրքք կոչեն Մուավիէ, Եւրոպացիք՝ Մուավիաս կամ Մոհավիաս ։ Սա համարի նախահայրն ցեղին Պէնի-Իւմմիէ, պետացելոյ ի Դամասկոս։ Եւ յաթոռն յամի 661 և մեռաւ ի 680։

2. Ղեւոնդ կոչէ զՄահմետականս իւրոյ դարուն երբեմն յանուն Տաճկաց թերևս ի սակս Տաճկաստանի որ մի էր ի գաւառաց Արաբիոյ. երբեմն Իսմայելացիս յանուն Իսմայելի՝ որդւոյ Աբրահամու. երբեմն Հագարացիս յանուն Հագարայ աղախնոյն Աբրահամու և մօր Իսմայելի (Ծննդ. Գ. ժզ). երբեմն Սառակինոս ելեալ ի սարիկա արաբացի բառէ որ նշանակէ անապատ, աղքատութիւն. երբեմն Մադիանացիս յանուանէ Մադիամու գաւառի։ Այս ինչ անտարակուսելի է՝ զի անխառն ցեղն էր արաբացի, ընդ որ խառնեալ նաև Ասորւոց, Եգիպտացւոց, Պարսից, Հրէից և Քրիստոնեայ ազգաց դարձելոց ի կրօնս Մահմետի՝ կազմեն յընթացս գրեթէ տասն դարուց զերիր մասն հողագնդի ։

3. Հրատարակիչն Սեբէոսի. երես 151, յայտ է թէ՝ անգիտութեամբ դնէ չամն որ նշանակէ եւ ոչ ինչ ։

4. Ցօրինակին մերում՝ փախստեամբ, որ խորթ թուեցաւ առանց գոլոյ սխալ ։

5. Կամ Աբդ-ալ-Մելէք որ եկաց տասներորդ ի Մահմետէ խալիֆայ, եւ հինգերորդ ի ցեղէն Պէնի

իւմիկէ ։ Նստաւ յաթոռն յամի 684, եւ տիրեաց յամն 705 ։ Թիւրքք արտասանեն Ապտիւլմելէք ։

6. Մէրվան ըստ Թիւրքաց արտասանութեան ։

7. Ցօրինակին մերում՝ պատերազմաւ ։

8. Ցօրինակին մերում՝ ի կատարել ։

9. Սաղմոս ԼԷ. 15 ։

10. Մինչեւ ցայսօր ժամանակի պատմիչք մեր գրեն Աղուանք հանեալ զայն յաղու բառէ. մեք ուղղագոյն եւս վարկաք գրել Աղվանք, զորոյ զպատճառն դիցուք ի յառաջաբանի Մովսէսի Կաղկանտուացւոյ ։



## Ծանօթութիւնք հինգերորդ գլխոյ ։

1. Այն է Յուստինիանոս Բ. զկնի որոյ կալաւ զաթոռն Բիւզանդիոյ Ղեւոնդիոս կամ Լէոնս յամէ 695 ց698. եւ ապա ի ցամն 705 Տիբեր-Ափսիմերոս, զոր վրիպակաւ փոխանակէ հեղինակն մեր եւ ի միոյ անուանէ ձուլէ զերկուս ասելով « զԱփսիմերոս եւ զՏիբեր » ։ Անտեսէ նոյնպէս և յիշելն զթագաւորութիւն Թէոդոսի յայսմ միջոցի որ, որպէս յայտ է, կալաւ զաթոռն կայսերական յետ Անաստասու Բ. յամին 716–717 ։

2. Յովհ. Ը. 44 ։

3. Աստրեստան ո՛չ է Ասորիք, ընդ որում շփոթէ Ղեւոնդ զայս երկիր ։

4. Օրինակն մեր ունէր « իբրեւ զօրան վանակ (թերեւս՝ վականակ) փխրեալ, զոր առ ոտն կոխեալ խոզից » որ աղաւաղ երեւեցաւ մեզ, եւ զոր հարկաւ այլ ընտիր օրինակք պարզեսցեն յապայն :

5. Նախճուան :

6. Օրինակն սուրբ Ղազարուն Վենետկոյ ունի 5,000 :

7. Ասան Այրարատայ զոր ի զուր խնդրէ Հայր Ղուկաս Ինճիճեան այսր անդր : Ստորագ. Հին Հայաստ. եր. 331 : Տե՛ս եւ Սեբէոս . երես 148 :

8. Օրինակն մեր՝ ունէր զուղղութեամբ :

9. Հայր Միքայէլ Չամչեան ի պատմութեան ճակատուն Վարդանակերտի համարի և զՅոյնս մարտակից Հայոց . Այս կարծիք նորա երեւի անտեղի որպէս եւ հանգամանք բանից Ղեւոնդեայ զնոյն յայտ առնեն : Պատմութիւն Հայոց . հատ. Բ. եր. 378 :

10. Զսեռականն Աշոտ անուան գրէ Ղեւոնդ մերթ Աշոտոյ, մերթ Աշոտի. մեք ընտրելի դատեցաք զառաջինն վարել հոլով :

11. Օրինակն մեր ունէր՝ ասկաւ միոյ :

12. Տէրն մեր զընդհակառակն ուսոյց զվարդապետութիւն :

13. Մեր օրինակն ունէր « ի մատենից քոյ » :



Ծանօթութիւնք վեցերորդ գլխոյ :

1. Վէլիտ ըստ արտաբերութեան Թիւրքաց ․

2. Քինին ։

3. Հ. Միքայէլ Չամչեան չառնէ յիշատակութիւն ինչ զայսմ պատերազմէ յիւրում եռահատոր պատմութեանն ։

4. Նոյնն զՄահմետ՝ ոստիկան Հայոց կոչէ Մոհմետ ։

5. Նոյնն համարի (հատոր Բ. եր. 381) զԿաշմ կամ Կասմ ոստիկան Հայոց . իսկ Ղեւոնդ՝ իբրեւ մասնաւոր գաւառապետ Նախիջեւանու ։

6. Ըստ Հայր Մ. Չամչեան (հատ. Բ. եր. 382) ազատեցան երկոքին սոքա ։

7. Ցօրինակին մերում՝ չարեաց ։

8. Հայր Մ. Չամչ. ոչ միայն չյիշէ զԱբդըլ-Ազիզ ընդ ոստիկանս Հայոց ընդ մէջ Կաշմայ եւ Վլիթի. այլեւ չփոթէ (հատ. Բ. եր. 381) զառաջին առումն Դունայ յԱրաբացւոց յամի 640 ընդ երկրորդին եղելոյ յ704 կամ 705 ։ Ցորում ժամանակի յիշեալ Աբդըլ-Ազիզն ո՛չ իբրեւ մանուկ երկոտասանամեայ ըստ Չամչեանի պատճառ առման քաղաքին լինէր, այլ իբրեւ ոստիկան աւերող վերանորոգիչ այնորիկ ։

9. Ի ձայնէ ։

10. Ցօրինակին մերում՝ արի ։

11. Ա՛յլ են իսկական դրոշմք Կասալից հռչակաւոր առ նախնիս, եւ որք անկանին յայժմեան Պարսկաստան ։

12 և 13. Ծորայ և Թարգու կան մնան մինչեւ ցայսօր ժամանակի յորոց առաջին կոչի Տուրայ, երկրորդն Թարխու ։

14. Ցօրինակն մերում վրիպակաւ գրի ի տեղի Մսլիմայ Սուլէյմանի, յորոյ առաջինն էր զօրավար, երկրորդն՝ Ամիրապետ ։

15. Դարձեալ՝ վրիպակաւ գրի փոխանակ Սուլէյ-մանայ Մսլիման ։



Ծանօթութիւնք եօթներորդ գլխոյ ։

1. Իւմէր ըստ առողանութեան Տաճկաց, հօրեղ-բօրորդի Սուլէյման Ամիրապետի ։

2. Լևոնս այս կոչի ի պատմութեան Իսաւրացի, որ և թագաւորեաց յամէն 717 ց741 ։

3. Թարգմանութիւն նամակիս անճոռնի իմն է, կրճատ և աղաւաղ ։ Թերևս անպիտան դատեալ յաւուրս Ղևոնդեայ վարդապետի, մեղ յետնոցս յոյժ պիտանի լինէր յիշեալ թուղթն՝ եթէ հեղինակն մեր անթերի և կոկ լեզուաւ աւանդէր մեզ զնոյն ։ Հեղինակն մեր դնէ ի բերան Օմարայ խօսիլ երբեմն եզակի, երբեմն յոգնակի. զնոյն առնել տայ և Լևոնի, զորօրինակ Օմար ասէ զանձնէ նախ՝ « կամեցայ » ապա « յաւելաք ». սմին նման և Լևոն « խորհիք, ասա՛, ընկալայք, երկուացար, ի կարծիս անկար, համարեցար, հաւատացեր, գիտէք » և այլն ։ Ոչ Ղևոնդեայ վերագրելով յատկապէս զանհարթութիւնս զայսոսիկ, եւ ո՛չ օրինակօղին՝ պատշաճ վարկաք մի-օրինակ ունել ամենուրեք զոճ խոնարհմանցն և թղ-թոյ ։

4. Օրինակն մեր ունէր « մի ինչ հարկի յաջողակս զմեզ ածել յիրս »։

5. Կամ հասեալ։

6. Զոր ինչ տեսաք ի ծանօթութեանն 4 սակս անհարթութեանց նամակին Օմարայ առ Լեւոն, երկբորդեմք զնոյնն և յաղագս զԼեւոնին առ Օմար. և համարիմք կամ զԼեւոնդ թերագէտ գոլ յոյն կամ արաբացի բարբառոյ և թարգմանեալ զայն այսպիսի աղաւաղ ոճով, կամ թերեւս յայլմէ ի փոխ առեալ, զոր հաւաստէ ըստ իմիք նաև տարբերութիւն ոճոյ պատմութեանն և կրկին նամակացն։ Զայս նամակ անյայտ համարեալ ի Պարոն Նոյեմայ՝ յիշատակէ ընդ այլս նաև Թովմա Արծրունի. երես 116. և օրինակէ զրե՛թէ բառ առ բառ զԼեւոնդ յաղագս աղնուական բարուց Օմարայ և դաւանութեան յաջորդի նորա։

7. Իցէ՞ յորմէհետէ կամ որով. անկարացեալ սակս ինչ՝ թողումք ապային պարզել զայն։

8. Զամենէ։

9. Ասէ՝ երկիցս կրկնեալ, ի բաց յապաւեցաք իբրև աւելորդ։

10. Ծննդոց ԻԲ. 18։

11. Ծննդոց ԽԹ. 10։

12. Վկայութեանն։

13. Տեղւոջէ։

14. Երկին։

15. Թորա, Թորայ, Թովրայ է բառ եբրայական

որ նշանակէ օրէնք ։ Եբրայեցիք իմանան այնու՝ զհն-գամատեանն Մովսիսի ։

16. Ասորիք կոչեն զհինգ գիրս Մովսիսի Ուրայ-թօ. Քաղդէացիք՝ Ուրայթայ ։

17. Կոնդեղէթ կամ կօնդէլէթ ըստ Եբրայեցւոց է Բանք կամ Գիրք Ժողովողին ։

18. Շիրաթ-շիրիմ ուղիղ ես Շիր-աշիրիմ նշա-նակէ եբրայեցերէն Երգ երգոց ։

19. Ցոյնք զԱռակս Սաղոմոնի կոչեն Պառայէ-մա ։

20. Ցոյնք զԵրգ երգոցն կոչեն Ասմատան ։

21. Ժողովիւր ։

22. Ձեռագիրն մեր ունէր « զյաւելուած ի բաց բարձումն » ։ Իմաստ հատուածոյս մթին գոլով՝ եդաք զայն աստ ի ծանօթութեան որպէս և էրն ։ Իսկ ի կարգի պատմութեանն առ. իմանալի առնել՝ զբարձումն փոխեցաք ի բառնային զոր ուղղեսցեն յապայն ընտիր օրինակք ։

23. Ղևոնդ ոչ բերէ վկայութիւնս յԱստուածա-շնչէ ըստ մերոյ թարգմանութեան. այլ թարգմա-նէ ինքնին ի նորոյ զյունական ընթերցուածն ։ Ի կարգի պատմութեանն թողեալ ամբողջ զթարգմա-նութիւն նորա որպէս և էրն, կարգեմք ի ծանօթու-թեան աստ և զբուն ընթերցուածն մերոց թարգ-մանչաց ի գիտութիւն բանասիրաց։ «Ի գետս Բաբե-լոնացւոց, անդ նստէաք և լայաք. որպէս յիշեցաք մեք անդ զՍիովն ։ Ի մէջ ուռեաց նորա կախեցաք ըզ-կառակարանս մեր ։ Անդ հարցանէին զերիչք մեր

զբանս օրհնութեան, զերկնաւորս մեր առաքեսցէ զմեզ եւ ասէին։ Օրհնեցէ՛ք մեզ յօրհնութեանցն Սիովնի» ։ Սաղմ. ՃԼԶ ։

24. Մեր Աստուածաշունչն ասէ « Տեսէ՛ք, տեսէ՛ք զի ես եմ. և չի՛ք այլ ոք բաց յինէն։ Ես սպանանեմ և ես կեցուցանեմ, հարկանեմ և բժշկեմ. եւ ո՛չ ոք իցէ որ հանիցէ ի ձեռաց իմոց» Երկր. օրէնք. ԼԲ. 33։

25. Թարգմանութիւն Նախնեաց ասէ « Սրեցից իբրև զփայլակն զսուսեր իմ, և կալցի զդատաստանաց ձեռն իմ, և հատուցից վրէժս թշնամեաց իմոց. և ատելեաց իմոց հատուցից» ։ Երկր. օրէնք. ԼԲ. 41։

26. « Թարգմանութիւն Նախնեաց ասէ » զի հուր վառեալ է ի սրտմտութեան իմում, մինչեւ յաւիտեան բորբոքեսցի » ։ Երեմ. ԺԷ. 4 ։

27. Փուրկան՝ ուղիղ եւս Ֆօրկան կամ ալ Ֆօրկան է մին յայլ և այլ անուանց զոր Մահմետականք տան Ղուրանին։ Ֆօրկան ծագեալ ի Փիւրակս արաբացի բառէ՝ նշանակէ բաժանել, որպէս և Ղուրանն՝ ի կարաարայէ՝ նշանակէ կարդալ ։ Սուրբ Մատեանք Արևելից. երես 485 ։

28. Բուն հեղինակ Ղուրանին է Մահմետ՝ օրէնսդիր և մարգարէ Մահմետականաց ։ Աբու-Բէքիր՝ յաջորդ Մահմետի առաջին եղեւ, որ ետ ժողովել ի մի զցրուեալ հատուածսն այնորիկ դրոշմեալ ի մագաղաթի կամ ի կեղև արմաւենւոյ, և յանձն արար Հափսայի՝ դստեր Օմարայ այրւոյն Մարգարէին ։ Օթման կամ Օսման անուանեալ զմեծամեծ տարբերութիւնս յայլ և այլ օրինակս Ղուրանին, հրաման ետ օրինակել խնամով զբազմութիւն նմանակէնս ի նախատիպէն

Աբու-Բէքրեայ եւ տարածեալ ի ծոցովս Մահմե-տականաց ։ Գլխաւոր խնամակալք այսր գործոյ եղեն Զէյդ՝ իբն-Թաբիտ, Աբդ՝ Ալլահ-իբն-Զոբայիր, Սայիդ-իբն-Ալ-աս եւ Աբդ՝ Աբրահման-իբն-էլ-Հարեթ Մաքզումիթ ։ Սուրբ Մատեանք Արեւելից. եր. 489 ։ զԱբու-Թուրաբ Իսմայելացին եւ զՍաղման պարսիկն յիշէ Թովմա Արծրունի. երես 111-112 իբրեւ ատենադպիրս Մահմետի ։

29. Մահմետ կամ Մուհամմէդ նշանակէ ի լեզու Արաբացւոց գովեալ, շնորհալի ։

30. Մատթէոս. ԺԲ. 34 ։

31. Յովհաննէս. ԺԶ. 26 ։

32. Առժամանակօք Լեոնի Իսաւրացւոյ ոչ միայն Արաբիա այլ նաև Պարսք, Ասորիք, Եգիպտացիք եւ այլ շրջակայ ազգք ընկալեալ էին զկրօն Մահմետի եւ զհետ գնային այնմ. սմին իրի անմարթ է ընդունիլ զպատճառաբանութիւն կայսեր Յունաց իբրեւ զստոյգ ինչ ։

33. Ույե՞ն Խորէժ աղանդաւորք որ հերձեալ զատան ի միաբանութենէ Ալւոյ յ37 ամին Հիջրեթի. որք զչարն եւ զբարին համասարապէս ընծայէին Աստուծոյ, և զանուղղայս խօսէին զՆախասահմանութենէ ։

34. Սարարք՝ ուղիղ են՝ Ջաբրաշեան աղանդաւորք, հետեւողք Աբու-Ալի-Մահմետ-իբն-Աբդ-Ալ-Վահհաբ, վերակոչեալ Ալ-Ջաբբայի, որ ասէր թէ Աստուած զկամ էութեանն իւրով, եւ թէ Իւանն

*Աստուծոյ ստեղծեալ է* in subjecto. *իբրեւ ի տախտակի պահեցելոյ կամ ի յիշողութեան Գաբրիէլ հրեշտակի կամ Մահմետի: Սուրբ գիրք Արեւելից. եր.* 528:

35. *Անուն Թէեւ յոյժ ծանուցեալ առ Մահմետականս. սակայն ո՛չ եղէ ձեռնհաս գտանել զաղանդ ինչ որոյ կրեալ իցէ այսպիսի անուն:*

36. *Կատրի, ուղիղ եւս Կադարեանք իբրզի ուրանային զալ-կադր կամ զբացարձակ վճիռ Աստուծոյ: Այս աղանդ մերժէր զբացարձակ Նախասահմանութիւնն ասելով «ո՛չ է պարտ զանիրաւութիւնն և զչարութիւն վերագրել Աստուծոյ. այլ մարդոյ որ անձնիշխան ստեղծեալն է, եւ պատասխանատու է գործոյ իւրոյ բարեաց կամ չարեաց. որում տուեալ է յԱստուծոյ կարողութիւն գործելոյ կամ ոչ»: Սուրբ գիրք Արեւելից. եր.* 529:

37. *Մուրջի, ուղիղ եւս մորջեան աղանդաւորք ծնեալ, որպէս հաւանական է կարծել, ի Ջաբարեանց: Ուսուցանէին թէ՝ դատաստան իւրաքանչիւր ճշմարիտ հաւատացելոյ անկելոյ ի ծանր յանցանս ինչ, պահի մինչեւ ցօր յարութեան: Յայս սակս ոչ դատին զոք յայամ կենի եւ ոչ իսկ վճիռ հատանեն երբէք դատապարտութեան կամ արձակման ի վերայ ուրուք: Պնդէին եւս թէ անհնազանդութիւնն ոչ է արժանի պատժոյ, եթէ ունիցի ոք հաւատս, սոյնպէս եւ հնազանդութիւն հանդերձ անհաւատութեամբ անպիտան իմն է: Սուրբ գիրք Արեւելից. եր.* 533:

38. *Բաղդեանք կամ հետեւողք Վասել-Բենի-*

Աթ կամ որ նոյն է Վաղել-իբն-Աթա՝ մեծանուն Վարդապետի Իսլամութեան: Սա, ըստ յառաջ բերելոյ Պարոն Սալի, հակառակ յարուցեալ Հանրալայ՝ միւս ոմն հռչակաւոր Վարդապետի, եմոյծ ի հասարակաց դպրոցս առ Մամուն խալիֆայիւ զկարծիս իւր, այսինքն թէ Ղուրանն ձեռագործ է մարդկան, արարած եւ կորստական: Հոյակապ արք Արեւելից . հատ. Ա. եր. 214 : Աշակերտք Վաղել-իբն-Աթայի պնդէին թէ՝ մեծեղեռն յանցաւորք գտանին ի միջին իմն վիճակի, այսինքն թէ ոչ ի հաւատացելոց սակի են և ոչ յանհաւատից : Սոքա կոչին ի կրօնապատում գիրս Մահմետականաց Մօթազալեանք: Սուրբ գիրք Արեւելից . եր. 527 :

39. Աղանդոյն Ջահդի կամ Ջահդեան գլուխ եկաց Ամրու-իբն-Բահր՝ մեծ Վարդապետ Մօթազալեանց, Աբ-Ջահեդ վերաձայնեալ, այր յոյժ պերճախօս : Նա կարծէր թէ՝ դատապարտեալքն ոչ տանջեսցին առ յաւիտեան ի դժոխս . այլ փոխարկեսցին ի հուր, որ իւրովի ձգեսցէ զնոսա յինքն առանց ընթանալոյ ինչ նոցա յայն : Ջահդեանք վարդապետէին եւս թէ՝ ամենայն որ հաւատայ յԱստուած իբրեւ ի Տէր իւր, եւ ի Մահմետ իբրեւ յառաքեալ Աստուծոյ, համարի ընդ հաւատացեալս: Սուրբ գիրք Արեւելից . եր. 528 :

40. Ցայս անուն ոչ գտի կեշտ ինչ յառաջին դարու անդ Իսլամութեան : Ցերկերիւր, եւ ի մի ամին Հիջրեթի երեւեցաւ Բաբեր-ալ-Հորրեմ անուն՝ սուտ մարգարէն որ աղանդեաց զայլանդակ կեշտ իմն : Սա ժողովեալ զհամախոհս իւր մղեաց ամն

իբրեւ քասն զպատերազմ ընդդէմ Ամիրապետաց, խորտակեալ բազում անգամ զզօրս Աւ-Մամունի ։ Նկուն եղեալ ի ճակատու միում՝ փախեաւ յերկիր Յունաց, զոր կալեալ հայկազն Յովհէլ սպային՝ եւ ի ձեռս Աւ-Մօթաղխայ ։ Բայց ի Հորքեմեանց զատանի առ Մահմետականս այլ իմն աղանդ Հաղիլեանց կոչեցեալ, թէեւ զկնի Լեւոնի Իսաւրացւոյ։ Հաղիլեանք հաստատային թէ աստուածային բնութեանն մարթ է միաւորիլ ընդ մարդկայնոյն ի միում և եթ անձնաւորութեան . վասնզի ընդունէին թէ՝ չէ՛ ինչ անմարթ Աստուծոյ երեւիլ ընդ մարդկային կերպարանաւ որպէս եւ երեւեցաւն Գաբրիէլի ։ Եւ ի հաստատութիւն կարծեաց իւրեանց ի վկայութիւն առնուին զբանն Մահմետի որ նոտէս զՏէր իւր ի չքնաղ կերպարանս . եւս ըստ օրինակին Մովսիսի որ խօսէր ընդ Աստուծոյ դէմ յանդիման ։ Տես զիրք Արեւելից . եր. 532 եւ 534։ Էր երբեմն առ Մահմետականս նաեւ կեշանն Դաղարի որ աստուածացուցանէր կակաղէր զԱմիրապետն Հաքեմ ։

41։ Ի մերում օրինակի՝ այնոցիկ ։

42. Ոչ զտի ուրեք զլեզու Բաղաղացւոյ (եթէ չիցէ վրիպակ ինչ գրչի) բայց միայն յարեւելեան ափունս սեաւ ծովու, ուր երեւի զայնու ժամանակաւ գործածական լեալ, թէեւ արդ անհետացեալ ։ Այս բարբառ ըստ Կլապրոթի (ճանապարհորդութիւն . գիրք. Բ. եր. 5) էր ի գերդաստանէ լեզուին Վրաց։ Տե՛ս եւս զժամանակագրութիւն Վրաց. եր. 108-109 ։

43. Ջորորդ լեզուն պակասէր ի մերում օրինակի,

զօր անթերի օրինակք լրացուսցեն յայսպան : Խցէ՞ Քաղղէացւոյն կամ Ղպտեացն անյիշատակ մնա-ցեալ ի ցանկի աստ . եւ որոց թարգմանութիւն Աստուածաշնչին էր ընծագունից սակի :

44. Օրինակն մեր ունէր Աբու-Քուռայ, որ վրիպակ գրչի մեզ թուեցաւ : Թովմա Արծրունի. երես 116 զյապաւումն առասպելագոյն ինչ բանից ի Ղուրանէ Օմարայ Բ. տայ:

45. Ոչ գոյր ստուգել :

46. Եփս. Գ. 14 :

47. Ծննդոց. Ա. 26 :

48. ՅԱստուածաշնչին մերում « եկայք, իջցուք եւ խառնակեսցուք անդ զլեզուս նոցա » : Ծննդոց. ԺԱ. 7 :

49. ՅԱստուածաշնչին մերում « Տէր տեղայց ի Սոդոմ եւ ի Գոմոր ծծումբ եւ հուր ի Տեառնէ երկ-նից » : Ծննդոց . ԺԹ. 24 :

50. Երկր. օրէնք. ԺԸ. 15 և 19 :

51. Սաղմ. ԻԱ. 7-9 :

52. Սաղմ. Բ. 7 :

53. Հաւատոյ :

54. «Խնդրեա՛ յինէն եւ տաց քեզ զհեթանոսս ի ժառանգութիւն եւ յիշխանութիւն քեզ զամենայն ծագս երկրի» . Սաղմ. Բ. 8 :

55. Սաղմ. ԾԹ. 1 եւ 3 :

56. Սաղմոս . ԼԲ. 6 :

57. Թուոց . ԻԳ. 5. 7 եւ 17 :

58. Նովաւ ։

59. Սաղմ. ՀԱ. 1. 5. 8. 11. 15 եւ 17 ։

60. «Ծագեսցէ յաւուրս նորա արդարութիւն, բազում խաղաղութիւն մինչեւ կատարեսցի լուսին» ։ Սաղմ. ՀԱ. 7 ։

61. Միքէ. Ե. 2 ։

62. Երեմ. ԺԷ. 9 եւ 13 ։

63. Իսրայէլ որոյ արմատն է սարա կամ սառա, նշանակէ մարտնչել, ոգորել ։ Յայս անուն կոչեցաւ Յակոբ յետ գօտեմարտելոյն ըստ Աստուածաշնչին ընդ հրեշտակին ։

64. Եսայի. Թ. 6 ։

65. Եսայի. Թ. 7 ։

66. Սաղմ. ՁԸ. 29 ։

67. «Ահա կոյսն յղասցի և ծնցի որդի. և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ» ։ Եսայի. Է. 14 ։

68. Օրինակն մեր ունէր «զնոցին կանխաւ մարգարէիցն գուշակումն» զոր ուղղեսցեն անշուշտ ընտիր օրինակք ։

69. Եսայի. Ծ. 5 եւ 6 ,

70. Զաքարիա. ԺԱ. 12 ։

71. «Որ ուտէր զհաց իմ՝ յաճախեաց առնել ինձ խաբէութիւն» ։ Սաղմ. Խ. 10 ։

72. Եսայի. ԾԲ. 13-15. ԾԳ. 1-9 ։

73. Ստութիւնս ։

74. Ի թարգմանութեան մերում անուշադրութեամբ գրաշարին եղաւ 1370 փոխանակ 1970 ։

75. Տեսանի մթութիւն ի յօդուածիս յայսմիկ :

76. Առեալ :

77. «Հայր՝ եթէ կամիս, անցո՛ զբաժակս զայս յի-նէն»: Ղուկ. ԻԲ. 42 :

78. «Ոչ կարէ Որդի մարդոյ առնել յանձնէ եւ ոչ ինչ»: Յովհ. Ե. 19 : «Այլ Հայրն որ յիս բնակեալ է նա գործէ զգործսն»: Յովհ. ԺԴ. 10 :

79. Ծննդ. Գ. 19 :

80. «Ես դնեմ զանձն իմ... անձամբ իմով. իշխանութիւն ունիմ դնել զնա. եւ իշխանութիւն ունիմ միւսանգամ առնուլ զնա»: Յովհ. Ժ. 17 եւ 18 :

81. Յովհ. ԺԶ. 32 :

82. ԺԶ. 28 :

83. ԺԲ. 44 :

84. «Որ անարգէ զիս, եւ ոչ ընդունի զբանս իմ... Եւ որ տեսանէ զիս. զայն տեսանէ որ առաքեացն զիս»: Յովհ. ԺԲ. 45 եւ 48 :

85. Յովհ. ԺԴ. 28 :

86. Յովհ. Ժ. 29 :

87. «Զի ծանիցեն զքեզ միայն ճշմարիտ Աստուած՝ և զոր առաքեցեր զՅիսուս Քրիստոս»: Յովհ. ԺԷ. 3 :

88. Մատթէոս. Գ. 17 :

89. Յովհ. Գ. 33.

90. Յովհ. Ա. 29 :

91. Յովհ. Ա. 1-2 :

92. «Որ տեսեւ զիս՝ տեսեր զՀայրն»: Յովհ. ԺԴ. 9:

93. «Որպէս գիտէ զիս Հայր, գիտեմ և ես զՀայրն»: Յովհ. Ժ. 15:

94. Յովհ. ԺԶ. 32:

95. Յովհ. Ի. 17:

96. Յովհ. Ա. 12:

97. Յովհ. Ի. 27:

98. Երեմ. ԼԱ. 31:

99. « Օրէն յաւիտենական քեզ եւ որդւոց քոց մինչեւ յյաւիտեան »: Ելից. ԺԲ. 24:

100. Չիք արդ Թլպատութիւն կանանց առ Մահմետականս մերոյ դարու ոչ ի Թուրքաստան, ոչ յԱրաբիա, ոչ ի Պարսկաստան եւ ոչ յայլ աշխարհս բնակեալ յաշակերտաց Մահմետի: Չիք յայսմ մասին եւ պատուէր ինչ տուեալ յօրէնսդրէ նոցա ի Ղուրանի, յորում ամփոփին վարդապետութիւնք եւ ծիսական սահմանադրութիւնք այսր դենի: Յազգային մատենագրաց մերոց Ստեփաննոս Ասողիկ յիւրում պատմութեանն, եւ Սամուէլ Անեցի յիւրում ժամանակագրութեան աւանդեն զայն իբրեւ սովորութիւն. այլ ես համարիմ պտուղ հակառակութեան. կամ Թերեւս ի կիր ածեալ ի մահմետական աղանդաւորաց ոմանց առ Նախնեօք, որպէս եւ առ Քրիստոնեայս իսկ զԹլպատութիւնն արական սեռի տեսանեմք պահեալ մինչեւ ցաւուրս մեր առ Հաբէշս:

101. Եզեկիէլ. ԼԶ. 25:

102. Մատթէոս. ԻԶ. 19:

103. Ծննդոց. Ա. 3:

104. «Նա ասաց եւ եղեւ․ հրամայեաց, եւ հաստատեցան»։ Սաղմ․ ՃԽԸ․ 5։

105. «Ես եւ յո՞ր հանգեայց, եթէ ոչ ի հեզս եւ ի խոնարհս եւ որ դողան ի բանից իմոց»։ Եսայի․ ԿԶ․ 3։

106. Սաղմոս․ ՃԺԶ․ 15։

107. Սաղմոս․ ԼԳ․ 20։

108. «Արդարք յաւիտեան կեցցե՛ն, եւ ի Տեառնէ է վարձք նոցա»։ Իմաստութիւն Սաղոմոնի․ Ե․ 16։ «Թուեցան յաչս անզգամաց թէ մեռան… բայց նոքա են ի խաղաղութեան»։ Անդ․ Գ․ 2-3։

109. Դ․ Թագաւոր․ ԺԳ․ 21։

110. Յովհ․ ԺԶ․ 2․

111. «Սարդին եւ սօսիւ եւ նոճւով եւ մայրիւ առհասարակ փառաւոր առնել զտեղի սրբութեան իմոյ․ եւ զտեղի ոտից իմոց փառաւորեցից»։ Եսայի․ Կ․ 13։

112. Իմաստութիւն Սաղոմ․ ԺԴ․ 7։

113. «Փայտ կենաց է ամենեցուն, որ պատսպարին ի նա․ եւ որ յենուն ի նա իբրեւ ի Տէր հաստատութեամբ»։ Առակք Սաղոմ․ Գ․ 18։

114. Զի՞ք ինչ տարակոյս թէ Քաքար բառիւ իմանալի է Քարա կոչեցեալ հուչակաւոր ուխտատեղին Մահմետականաց յԱրաբիա։

115. Մատթէոս․ ԺԲ․ 43։

116. Ռօքուն կամ ռօք՝ բառ Արաբացոց նշանակէ վէմ կամ քար։ Այս այն հուչակաւոր սեաւ քարն է զոր Արաբացիք կոչեն այժմ հաժրա-էլ-ասուադ ելեալ ի հաժար բառէս որ նշանակէ քար։ Սեաւ

*քարս այս պատեալ արծաթով՝ պահի յարեւելեան հարաւոյ անկեան Քաբայի ։ Մահմետականք ի մեծի պատուի ունին զայն եւ ուխտաւորք մեծաւ ջերմեռանդութեամբ համբուրեն զայն ։ Ըստ աւանդելոյ Իսլամաց յիշեալ քարն Ադամայ հանդերձ անկաւ յերկնից, եւ է մին ի պատուականագոյն քարանց դրախտին, անկորուստ պահեալ ի ժամանակի ջրհեղեղին եւ տուեալ Աբրահամու ի Գաբրիէլ Հրեշտակապետէ յորժամ շինէրն զՔաբա ։ Սուրբ գիրք Արեւելից. երես* 510 ։

117. **Ս***աղմոս.* **ԿԷ.** 2 ։

118. **Ե***սայի .* **Ա.** 3 ։

119. **Ի***ցէ՞ անհաւատութիւն ։*

120. *« Զի ո՛չ է արքայութիւնն Աստուծոյ կերակուր եւ ըմպելի . այլ արդարութիւն եւ խաղաղութիւն » ։ Հռոմ.* **ԺԴ.** 17 .

121. *«Զի ի յարութեանն ոչ կանայս առնեն եւ ոչ արանց լինին . այլ են իբրեւ զհրեշտակս յերկինս » ։* **Մ***ատթէոս.* **ԻԲ.** 30 ։

122. **Ե***սայի .* **ԿԲ.** 2 ։

123. **Յ***ովհ.* **ԺԵ.** 20-21 ։

124. **Յ***ովհ.* **ԺԶ.** 20 ։

125. **Յ***ովհ.* **ԺԵ.** 19 ։

126. *Զայս հատուած օրինակէ բառ առ բառ Թովմա Արծրունի յիւրում պատմութեանն. երես* 118 ։

## Ծանօթութիւնք ութերորդ գլխոյ ։

1. Ի կարգս Խալիֆայից կամ Ամիրապետաց չիք ոք որոյ կոչեցեալ իցէ Յեզկերտ կամ Յազկերտ ։ Որ պետացաւ յետ Օմարայ Եզիտ՝ կոչի անուն իւր, զոր և եդաք ի փակագծի դնելով ի՛կարգին և զՅազկերտ առ ի մնալ հաւատարիմ նաև սխալանաց Ղեւոնդեայ ։

2. Եզիտ թագաւորեաց երկուս եւ եթ ամս եւ ոչ վեց որպէս աւանդէ Ղեւոնդ ։ Զհալածանս Եզիտի օրինակէ բառ առ բառ Թովմա Արծրունի. երես 116։

3. Ըստ արտասանութեան Թիւրքաց Հէշամ։ Հրատարակիչք Թովմայի Արծրունւոյ . երես 117 կոչեն զնա այլանդակօրէն Տոմորեհեշամ ։

4. Երէցն Մարինցի յիւրում « պատմութեանն Արաբացւոց ընդ Խալիֆայիւք » ասէ թագաւորել նմա ամս քսան եւ մի, յամէ 104-ց125 Հիջրեթի ։

5. Խա-քան կոչէր արքայն Ավարաց, Հոնաց եւ Ալանաց ։ Տե՛ս Տեսութիւն երկուց աշխարհաց (Revue des deux Mondes) Ապրիլ 1855 ամի. եր. 218։

6. Իցէ՞ այս անուն մարդոյ կամ տեղւոյ ։ Ի գաղղիական թարգմանութեան մերում եդաք իբրև անուն գաւառի . ի հայերէնն թողաք որպէս էրն ի բնագրին՝ ակնկալեալ ապագային որ լուծցէ զտարակոյս մեր եւ այլոց ։

7. Մթին է բանս ։ Փոքր մի ի վերոյ զզօրավարն կովկասեան ասպատակաւորաց կոչէ Թարմաղ, եւ.

զինամայելին Սեթ-Հարաշ որ յաղթեցաւ յառաջնոյն : Զկնի սակաւու զՍէթ առէ յաղթական եւ թշնամանեալ ի Մսլիմայ սակս պարտութեան :

9. Սաղմոս . ՀԳ. 4-5 :

10. « Ոչ թէ յաղեղն իմ յուսացեալ եմ . եւ ոչ սուր իմ կեցուցանէ զիս... այլ աջ քո եւ բազուկ քո եւ լոյս երեսաց քոց » : Սաղմոս. ԽԳ. 5 եւ 7 :

11. Կատարել :

12. Հ. Մ. Չամչեան յիւրում պատմութեան Հայոց. հատ. Բ. երես 407 . հակառակ Ղեւոնդեայ ժամանակակցից եւ ականատես պատմչի համարի ըզ Մրվան անմիջական յաջորդ Աբդէլ-Ազիզայ :

13. Այս եւ հետեւեալ անցք անյիշատակ մնացեալ են ի պատմութեան Հայոց արարեալ Հ. Մ. Չամչեան :

14. Փոխանակ տասն եւ հինգ ամաց եղեալ է ի մերում գաղղիերէն թարգմանութեան անուշադրութեամբ գրաշարին « յերրորդ ամին » :

15. Թէեւ պահեցաք զոմ բնագրին մերոյ, սակայն այս անուան ձայնի առ Արաբացիս և առ Թիւրքս Վէլիտ, որ եւ էր որդի Եզիդի Բ.

16. Կուռայ, ուղիղ եւս կարան կամ միքրա ուստի եղանէ մօքրիս, է բառ արաբ որ նշանակէ ընթերցող (Ղուրանի) :

17. Ըստ Հ. Մարինյի Եզտի երկրորդի յաջորդեաց Վլիթ Բ. եւ թագաւորեաց ամ մի : Ապա Իբրահիմ [illegible] նոյնպէս թագաւորեալ ամ մի . եւ

հուսկ ուրեմն Մրվան Բ. որ կոչէր զԱմիրապետութիւնն ամս 7-8 :

18. Թերեւս՝ զամենայն ժամանակս :

19. Ամովս. Ա. 3-5 :

20. Տաճիկք էին ի ցեղէ Արաբացւոց եւ առհասարակ վրանաբնակք, զորս մատենագիրք Ասորւոց կոչեն Տեյէ : Տե՛ս ի բառգիրքն Ասորւոց արարեալ Քաստելի և տպագրեալ ի Միքայելիսէ. երես 334 :

21. Ակօղա, Ակողա կամ Ակուլա համարեալ յոմանց քաղաքն Քուֆա մերձ առ Բաղդադ : Աբուլֆեդա ի ժամանակագրութեանն Ասորւոց :

22. Աբդուլլահ կամ Աբդալլահ (Ապտիւլլահ ըստ արտասանութեան Թիւրքաց և Արաբացւոց) առ զէն ի ձեռս առ ի թագաւորեցուցանել զԱբուլ-Աբբաս՝ զթոռն իւր եւ զնախանձորդն Մրվանայ : Աբդուլլահ եհար նախ՝ զՄրվան յամին 750. մերձ առ Մոսուլ : Սալեհ՝ եղբայր իւր հալածական տարաւ զնա մինչեւ յԵգիպտոս. եւ միւսանգամ ի դիմի հարեալ սպան զնա ի պատերազմի յամի Տեառն 752 և ի 132 կամ 134 հիճրէթին : Մահուամբն Մրվանայ սպառեցաւ և հարստութիւնն Օմմեանց կամ Պէնի Իւմմէ յետ թագաւորելոյ ամս իբր 83 եւ ամիսս չորս ի Դամասկոս : Հ. Մարինյի. գիրք Բ. երես 500-506 :

Աստանօր կարգեմք ի տեղեկութիւն բանասիրաց զկարգ յաջորդութեան չորեքտասան խալիֆայից ցեղին Պէնի Իւմմէ կամ Օմմեանց՝ հանեալ ի հարազատ պատմագրաց Արաբացւոց հանդերձ առոգանութեամբ անուանց նոցա ըստ նոցա ։

1. Մուավիէ առաջին ։

2. Եէզիտ՝ որդի Նորա ։

3. Մուավիէ երկրորդ՝ որդի Նորա ։

( Ապտուլլահ՝ որդի Զէպիրի ։ )

4. Մէրվան՝ որդի Հէքէմի ։

5. Ապտիւլ մելէք՝ որդի Նորա ։

6. Վէլիտ՝ որդի Նորա ։

7. Սիւլէյման՝ եղբայր Նորա ։

8. Իւմէր՝ հօրեղբօրորդի Նորա ։

9. Եէզիտ՝ որդի Ապտիւլ մէլիքի ։

10. Հէշամ՝ եղբայր Նորա ։

11. Վէլիտ՝ որդի Եէզիտ երկրորդի ։

12. Եէզիտ՝ որդի Վէլիտի որդւոյ Ապտիւլ մէլիքի։

13. Իպրահիմ՝ որդի Վէլիտի որդւոյ Ապտիւլ մէլիքի ։

14. Մէրվան՝ որդի Մէհէմմէտի սպանաւ ի հիճրէթի 132 կամ 134 ։

23. Մրվան սպանաւ յամի Տեառն 752 . եւ Աբդուլլահ համբարձաւ յաթոռ Ամիրապետութեանն ընդ անուամբ Աբուլ-Աբբաս-Սաֆֆահ. որ եւ եկաց հայր հարստութեանն Աբբասեանց ։ Սա փոխադրեաց զաթոռ պետութեանն Խալիֆայից ի Դամասկոսէ ի Բաղդադ որ եւ Սամարաթ ։

24. Զնշանակութիւն զուգա կոչեցեալ դրամոյն տե՛ս ի բառգիրքն Ասորւոյ Քաստելլի . երես 246 եւ 247 ։

25. Պենտապոլսական որ եւ Պենտապօլ ( հինգ

*քաղաք ) կոչեցեալ նոյնպէս Սիրենայիք ։ Ցայս ա֊նուն կոչին չորեքին քաղաքք փոխարքայութեանն Տրիպօլսոյ ։ Տե՛ս Տեսութիւն երկուց աշխարհաց . գիրք ԺԲ. երես 6 ։*

26. *Տարակուսանօք եդաք սատանօր Ափրիկէ, թէեւ ի գաղղիերէն թարգմանութեան մերում պահեցաք ըստ մերոյ ձեռագրին Ատեք ։ Ցայս ա֊նուն գաւառ ինչ կամ քաղաք ոչ եղեւ մեզ գտանել ի մերձակայս Պենտապօլսոյ որ է այժմեան Թարապ֊լուս . սմին իրի ակնկալութեամբ ընտրելագոյն օրի֊նակի վայելուչ վարկաք փոխանակել Ատեքին զԱփ֊րիկէ յորում է Պենտապոսական աշխարհն ։*

27. *Մասին՝ արաբացի պատմիչ, աւանդէ թէ՝ Ալ-Մանսոր մականուանեցաւ դուանեկ որ թարգ֊մանի հայր դանգի . վասնզի էառ յիւրաքանչիւր գըւ֊խոյ դանգ մի առ ի փորել զխրամն Բաղդադ քա֊ղաքի։ Թովմա Արծրունի. երես 117 կոչէ զնա նոյն֊պէս Աբդլանգէ կամ ուղիղ եւս Աբդլդանգէ այս֊ինքն ծառայ դանգի ։*

28. *Զայս Աբդլա պատմիչք Արաբացւոց, ընդ որս եւ Հ. Մարինյի կոչեն Աբու-Ջաֆֆար-Ալ-Մանսուր ։*

29. *Կոստանդինոս այս կոչի Կոպրոնիմոս, որ թա֊գաւորեաց յամէ Տեառն 741 ց775 ։*

30. *Գայն Կոստանդնի ի Բարձր Հայս, առումն Կարնոյ եւ գաղթ բնակչացն յաշխարհն Յունաց, եւս եւ վերստին նորոգութիւն յիշեալ քաղաքին յՆ֊*

զիտ հրամանատարէ անյիշատակ Միան, ի պատմու-թեանն Հայոց ապարեալ Հ. Մ. Չամչեան :

31. Կամ Խաթիրշիթրերպ :

32. Բազումք յանուանց աստի անցմամբ ժամա-նակի այլայլեալքն բաց ի Քաղայէ որ թուի լինել արդեան Քեղի, ի Հարանդէ որ կոչի առ մեօք Դա-վրան, եւ ի Շաքուոյ որ կոչի արդ եւս նովին ան-ուամբ եւ երբեմն Նուխի : Օրինակն մեր ունէր Ռս-տանի, մարզպանեան :

33. Գիտութեամբ վարեցաք զայս յարմարագրու-թիւն իբրեւ հարազատ ստուգաբանութիւն Albanie բառին, զորոյ զպատճառն բացատրեսցուք ի յառա-ջաբանի պատմութեանն Աղվանից ի Մովսէսէ Կաղկանտուացւոյ :

34. Առ մեօք կոչի դաշտ Մուղանաւ :

35. Կամ Ջելթ :

36. Ցօրինակին մերում՝ վայրագն :

37. Հ. Մ. Չամչեան . Պատմ. Հայոց . հատ. Բ. եր. 409 չփոթէ զՆկանն ընդ Ողկանաց :

38. Գալ :

39. Հ. Մ. Չամչեան չունելով ի ձեռին զՂեւոնդ՝ անյիշատակ թողեալէ յիւրում եռահատոր պատմու-թեան Հայոց զճակատն Բագրեւանդայ, Խարափ եւ Բագաւանի յորս առհասարակ յաղթող հանդիսա-ցան Հայք. ոչ յիշէ նաեւ զպաշարումն Կարնոյ ի Հայոց եւ զապականութիւնն զորս գործեցին ի նմա մեքենայիւք իւրեանց, եւ ոչ եւս զպատերազմն Ար-ճէշի ուր պարտեցան Հայք. այլ պատմէ համառօտիւ

միայն զճակատն Արածանւոյ առանց յիշելոյ զտեղին,
որ է մին ի գլխաւոր Թերութեանց պատմչիս: Դարձեալ
նա ինքն եւ Ղեւոնդ կոչեն զազգային կրօնաւորն
զորոյ անգիտանամք դժբախտաբար զանունն որ
յորդորեաց զՀայս իջէն ի պաշտպանութիւն հաւա-
տոյ, հայրենեաց եւ ազգային իրաւանց՝ անազգի,
մոլորեալ, խաբեբայ, մոլեկան եւ այլն: Եթէ Ղեւոնդ և
եթէ Հ. Մ. Չամչեան գոնէ սակաւուք գիտակ լի-
նէին ազգային իրաւանց ոչ երբէք վատահամբաւել
ունէին զայր ոք վառեալ սիրով ազգային ինքնիշխա-
նութեան. վասնզի որչափ օրինաւոր է կամակար
Հնազանդութիւն օրինաւոր եւ արդարակորով տէ-
րանց, նոյնչափ եւս օրինաւոր է զէն առնուլն ընդ-
դէմ օտար, անօրէն, եւ աշխարհաւեր բռնաւորաց:
Գուշակեաց կրօնաւորն այն զընդհուպ դարձն զա-
ւազանի Թագաւորութեան ի տուն Թորգոմայ. եւ
յետ սակաւուց սկսաւ ի Հայս Բագրատունեացն
հարստութիւն. գուշակեաց նա նոյնպէս զնուազումն
պետութեան Արաբացւոց, որ եւ անսուտ կատարե-
ցաւ: Իցէ՞ օրէն բամբասել զայսպիսի հայրենասէր և
հոգետես ոք:

40. Անդրէն՝ ի ձեռագրի մերում որ Թուեցաւ մեզ
անտեղի:

41. Հիմնադիր եւ շինող Բաղդադու ոչ է Աբ-
դլլայս այս երկրորդ՝ Աբու-Ջաֆֆար-Ալ-Մանսուր
կոչեցեալ ի պատմագրաց Արաբացւոց, այլ Աբդլլայն
առաջին՝ Ապուլլահ Սէֆֆահ կոչեցեալն:

42. Մահմետ-Մահադի Թագաւորեաց ամս տասն,
յամէ Տեառն 775 յամն 785:

43. Լեւոնս այս կոչի ի պատմագրաց Խազիր, որ թագաւորեաց յամէ Տեառն 775 ցամն 780 ։

44. Բասանաստան կամ Բիշան համարիմ լինել զԱսորիս՝ յԱրաբացւոց Բար-էլ-Շամ կոչեցեալ ։

45. Ամուրիում՝ հին քաղաք Գաղատիոյ ։

46. Բերդաքաղա՞ք կամի իմանալ հեղինակն մեր « բերդ քաղաքաց » բառիւ թէ այլ ինչ ։ Եթէ չիցէ այն վրիպակ օրինակողի՝ հի՞մ այսպիսի անճոռնի կազմութիւն ։

47. Կոստանդին եւ յաթոռն հանդերձ Իռենեաւ՝ մարբ իւրով յամի Տեառն 780, և կալաւ զկայսերութիւնն նովաւ հանդերձ ց790. ապա ց797 միայնակ ։

48. Երկու են դրունք Կասպից՝ մին յաշխարհին Մեղացւոց, միւսն յԱղվանս . երկրորդս այս կոչիւր հասարակօրէն պահակ Ճորայ կամ դուռն Հոնաց. իսկ առաջինն միշտ դուռն Կասպից որպէս եւ էր իրօք ։

49. Հ. Մ. Չամչեանն չառնէ յիշատակութիւն ինչ ո՛չ զիշխանութենէ Տաճատայ ի Հայս, ո՛չ զհակառակութենէ Օթմանայ ոստիկանի, ո՛չ զերթալոյն նորա պատերազմաւ յԱղվանս եւ ո՛չ զմահուանէ նորա անդ ։

50. Հ. Մ. Չամչեան ի պատմութեան Հայոց . հատ. Բ. երես 417 ըստ ամենայնի հակառակ Ղեւոնդեայ պատմէ զանցս նախատակութեան Սահակայ եւ Համազասպայ Արծրունեաց ։

51. Ղուկ. ԺԸ. 29 եւ 30 ։

52. Չիք ի դասակարգութեան Ամիրապետաց

Աբբասեան ցեղին Խալիֆայ ոք Մուսէ անուամբ․ ամին իւրի հանդերձ Տէր Մարինյիւ համարիմ զՄադի որ արդա՛րեւ Թագաւորեաց զկնի Մէհտիի կամ Մահադիի եւ նախ քան զՀարուն Մէշիտ՝ եղբայր իւր ։

53. Սա է Հարուն-ալ-Ռաշիտ կամ Ռէշիտ Խալիֆայն, որ ծնաւ ի Ռէյ Մեդիոյ յամի տեառն 765․ եւ մեռաւ յ809 ի Թուր․ հռչակաւոր միանգամայն աշխարհակալութեամբ իւրով եւ դժնեայ բարուքն ։ Կալաւ նա զաթոռ խալիֆայութեան յամի 786 եւ թագաւորեաց ց809․ յորում ամի եւ մեռաւ ։

54. Հարկաւ պահանջմամբ ։

Ի վերջոյ կարգեմք միանգամայն ի տեղեկութիւն բանասիրաց զատոյգ դասակարգութիւն Ամիրապետայն ։

Ապտուլլահ Սէֆֆահ ։
Էպուճաֆէր Մանսուր՝ եղբայր նորա ։
Մէհտի՝ որդի նորա ։
Հատի՝ որդի նորա ։
Հարուն Ռէշիտ՝ եղբայր նորա
Էմին՝ որդի նորա ։
Մէմուն՝ եղբայր նորա ։
Մութասըմ՝ եղբայր նորա ։
Վասիգ՝ եղբայր նորա ։
Մութէվէքքիլ՝ եղբայր նորա ։
Մունթասըր՝ որդի նորա ։
Մուսթային՝ հօրեղբօրորդի նորա ։
Մութէզզ՝ որդի Մութէվէքքիլի ։

Մուհթէտի՝ որդի Վաթիգայ ։
Մութէմիտ՝ որդի Մութէվէքքիլի ։
Մութաղըտ՝ եղբօրորդի նորա ։
Մուքթէֆի՝ որդի նորա ։
Մուքթէտիր՝ որդի նորա ։
Գահիր՝ որդի նորա ։
Ռատի՝ եղբօրորդի նորա ։
Մութթագը՝ եղբայր նորա ։
Մուսթէքֆի՝ որդի Մուքթէֆիի ։
Մուտի՝ որդի Մուգթէտիրայ ։
Դայի՝ որդի նորա ։
Գատըր՝ որդի Իսահակայ՝ որդւոյ Մուգթէտիրայ։
Գայիմ՝ որդի նորա ։
Մուգթէտի՝ թոռն նորա ։
Մուսթազհիր՝ որդի նորա ։
Մուսթէրշիտ՝ որդի նորա ։
Ռաշիտ՝ որդի նորա ։
Մուգթէֆի՝ հօրեղբայր նորա ։
Մուսթէնճիտ՝ որդի նորա ։
Մուսթազի՝ որդի նորա ։
Նասր՝ որդի նորա ։
Զահիր՝ որդի նորա ։
Մուսթանսըր՝ որդի նորա ։
Մուսթասըմ՝ որդի նորա, սպանեալ յամին 656 ։

Ընդ ամէնն անձինք 37 որք վարեցին զիշխանութիւն իւրեանց ի Բաղդադ ամս 524 ։



## ԳԼԽԱԿԱՐԳՈՒԹԻՒՆՔ :